ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԿԳ.

# ՍԻՄԷՈՆ ՊՂՆՁԱՀԱՆԵՑԻ
## ԵՒ ԻՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՎՐԱՅԵՐԷՆԷ

1. ՊՐՈԿՂ ԴԻԱԴՈԽՈՍ / 2. ՅՈՎՀ. ԴԱՄԱՍԿԱՑԻ /
3. ՅՈՎՀ. ԿԼԻՄԱԿՈՍ / (4. ՅՈՎՀ. ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ) /
5. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎՐԱՑ / 6. ՅՈՒՆԱԿԱՆ ՇԱՐԱԿՆՈՑ
(7. ՀԱՅ-ՀՌՈՄ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄՆԱՑՈՐԴՆԵՐ)

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1951

# ՍԻՄԷՕՆ ԳՂՆՁԱՀԱՆԵՑԻ

## ԳՂՆՁԱՀԱՆՔ

Սոմխէթի Լալուար լեռան վրայ, ընդ մէջ Տաշիրքի եւ Ծորոփորի[1], «մօտ ի Լոռէ[2]», հիմնուած է Գղնձահանք վանքը, այսպէս կոչուած հաւանօրէն մերձակայ պղնձահանքի մը պատճառաւ, որ կ'օգտագործուէր: Արդեամբք ալ Լալուար եւ իր շրջակայքը շատ հարուստ են պղնձահանքերով. Նաեւ ներկայիս ուշադրութիւն գրաւած են Ախտայի, Շամլուղի եւ Ալահվերտիի պղնձահանքերը[3]: Այս հռչակաւոր վանքը, այժմ Վրաց «Մարիամ Անայի վանք», «գտնւում է Ախտալա կայարանից հազիւ 1½ վերստ հեռաւորութեան, դէպի արեւմուտք անտառապատ ժայռերով պատած մի թեքակղզիաձեւ բլրակի գոգում», պղնձի եւ այլ

---

1 Հմմտ. Հ. Ղ. Ալիշանի ծանօթութիւնը Վարդան, 148:

2 Սիմէոն կրօնաւոր, Յիշատակարան յամէ 1227. տե՛ս վարը Թ. 2:

3 Ե. Լալայեան, Բորչալուի գաւառ. Ազգագրական Հանդէս, Գիրք Է—Ը (1901), էջ 290—291: Ֆ. Օսվալդ, Երկրախօսութիւն Հայաստանի, թարգմ. Հ. Յ. Տաշեան, Վիեննա 1933, էջ 207:

հանքերով հարուստ Լալուար լեռան լանջքին[4]:

Վանքը նախնաբար հիմնարկուած էր Հայերէն: ԺԳ. դարու սկիզբը Իւանէ աթաբեկ, որ Վրաց թագաւորներու ծառայութեան մէջ էր եւ դաւանութեամբ միաբանած էր Վրաց եկեղեցւոյն, կ՚առնէ այս վանքը Հայերէն եւ վերաշինելով «Վրաց վանս հաստատեաց[5]»· որ եւ այնուհետեւ կոչուեցաւ նախ «Սպլէնձահանի[6] վանք» եւ ապա Ս. Աստուածածնի նուիրուած եկեղեցւոյն անունով «Մարիամ անայի վանք[7]»: Կը պատմէ Ստեփանոս Օրբէլեան[8], թէ Վասակ, Պռօշի

---

4 Լալայեան, անդ, 428:

5 Կիրակոս Գանձակեցի, էջ 116 եւ 126:

6 Վրացերէն სპილენძი (= պղինձ) + հայերէն –ჰან(ք)· հմմտ. Հ. Աճառեան, Արմատական Բառագիրք, պղինձ բառին տակ:

7 Լալայեան, անդ, 428—431: Թագաժառանգ Վախուշտ իր Վրաստանի Տեղագրութեան մէջ (Description géographique de la Géorgie, trad. par M. Brosset, 143) կը գրէ· «Ագարակի Եկեղեցին, որ Գուրգաւլան եպիսկոպոսարան ըրաւ, յետոյ եղաւ Սոմխեթի արքեպիսկոպոսարան, որուն իրաւասութիւնը կը տարածուէր Խունանի, Գարդաբանի եւ Բերդուջի վրայ· անոր կաթուղիկէն շատ ճարտարապետական ձեւով շինուած է եւ այժմ կը կոչուի Ախտալա»: Պղնձահանքի եկեղեցին շինուած է Իւանէի յանձնարարութեամբ, ուստի ոչ կանուխ քան 1200: Լալայեանց այսպէս կու տայ անոր նկարագրութիւնը· «Եկեղեցին շինուած է սրբատաշ քարով: Զորս ամբողջական եւ վեց կիսանկիւների վրայ յենած ռոմանական կամարներն այլ եւս չեն կրում նախկին կաթուղիկէն, որ քանդուել է դարուս սկզբում»:

8 Ստ. Օրբէլեան, գլ. ԿԴ, էջ 258—260· հրատ. Էմինի:

*հայրը, առնելով Սևնեաց Նորավանքի Ս. Խաչը, կը նուիրէ զայն Իւանէ աթաբեկին, իսկ սա կը դնէ զայն «ի պահեստի ի Գղնձահանքն». բայց ապա, 1216ին կը վերադարձնէ զայն Նորավանքի ուխտին: Այս դէպքէն ոչ շատ վերջը Ս. Խաչին ստացիչը կ՚ուզէ ըլլալ Լիպարիտ Օրբելեան. Իւանէ ժողով մը կը գումարէ խնդիրը քննելու համար. այս ժողովին ներկայ էր նաեւ «ծինամծղօրն[9] Գղնձահանիցն», այն է վարիչն կամ առաջնորդն: Ժողովը կը հաստատէ թէ Խաչը կը պատկանի Լիպարիտին: 1229ին կը վախճանի Իւանէ. «եւ թաղեցաւ ի Գղնձահանքն, ի դուռն Եկեղեցւոյն, զոր շինեաց ինքն՝ առեալ ի Հայոց»[10]: 1250ին ալ կը փոխուի յաստեացս իր որդին Աւագ Սարգիս «եւ թաղեցաւ ի Գղնձահանքն ի գերեզմանի հօր իւրոյ Իւանէի[11]»:*

*Պատմագրին վկայութիւնը, թէ Իւանէ*

---

[9] *«Վանքից փոքր ինչ հեռու... սարալանջի վրայ կայ մի... փոքրիկ եկեղեցու աւերակ. եկեղեցու հարաւային դրան առաջ մի հրաշակերտ, ահագին խաչարձանի վրայ կարդացւում է.* «Ի ԹՎԻՍ ՈՂԴ ԿԱՆԳՆԵՑԱՒ ՍՈՒՐԲ ՏԷՐՈՒՆԱԿԱՆՍ. ՑԱՐԵՒՇԱՏՈՒԹԻՒՆ ԱՒԱԳԻՆ. ԵՒ ԾԻՆԱՄԾՂԱՒՐՈՒԹԵԱՆ ՊԵՏՐԷԻ ԵՒ ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՀԱՄԱԶԱՍՊԱ. ԵՍ ՅԱԿՈԲ ԵՐԷՑ ԿԱՆԳՆԵՑԻ ԶԽԱՉՍ Ի ՀԱՆԳՍՏԱՐԱՆԻ ՄԵՐՈՑ. ԶԻՍ ԵՒ ԶԱՄՈՒՍԻՆՍ ԻՄ ՅԱՂԱՒԹՍ ՅԻՇԵՑԷՔ». *Լալայեան, անդ* 431: *Այս տեղ* ծինամծղաւր Պետրէ *Գղնձահանքի առաջնորդն է, իսկ Համազասպ Հաղբատի արքեպիսկոպոսը: Ստ. Օրբելեան բառս «ծինամ–ծղաւր» ունի «ծիրամ–ծղաւր». հմմտ. Աճառեան, Արմատ. Բառագիրք, ը. բ.:*

[10] *Կիր.* 116 *եւ* 126:

[11] *Կիր.* 130 *եւ Վարդան* 148:

1*

*Գղնձահանքն «առեալ ի Հայոց՝ Վրաց վանս հաստատեաց», իմանալու է անշուշտ այն իմաստով, թէ հոն «քաղկեդոնիկ» Հայերու վանք հաստատեց. միաբանները դաւանութեամբ կ՚ենթարկուէին Վրաց եկեղեցւոյն, ծիսակատարութիւնք կը կատարուէին յունական ծէսով եւ հայերէն լեզուով, ճիշդ այնպէս, ինչպէս սովորութիւն էր Հայ-Հոռոմներու քով: Վրաց Եկեղեցւոյն ենթարկուած Հայերը ստացան «Ծաթ» յորջորջումը:*

## ՍԻՄԷՈՆ ԿՐՕՆԱՒՈՐ

1. *Սիմէոն կրօնաւոր, որ Գղնձահանքի վանքին բնակիչներէն էր, առանց տարակուսի Տաշրացի էր, ազգով բնիկ հայ. հայերէնը իր մայրենի լեզուն էր, վրացերէնը ուսած կեանքի ասպարէզի վրայ: Տաշիրք ի վաղուց բնակուած էր հայ եւ վրացի ժողովուրդներէ եւ դարերէ ի վեր մասն նկատուած Վրաստանի: Այն պարագան, որ Սիմէոն լաւ հմուտ է հայերէն եւ վրացերէն գրական լեզուներու, ենթադրել կու տայ, որ նա իր ուսումն առած է շրջանակի մը մէջ, ուր հաւասարապէս կը դասախօսուէր հայերէնն եւ վրացերէնը: Կը համարիմ թէ այդ շրջանակը կը հովանաւորէր Գղնձահանքի հաստատութիւնը: Գրասէր էր Սիմէոն. մասնաւոր թեքում մը կը նկատուի իր մէջ դէպի իմաստասիրութիւն. կ՚օրինակէ*

եւ կը թարգմանէ իմաստասիրական գրքեր: Նա ծանօթ է Հայ գրականութեան գանձարանին. գիտէ թէ ինչ թարգմանուած է փիլիսոփայական եւ հայրաբանական գրականութենէն. պակաս լրացնել կը նկրտի ի-րոփաանն. Պրոկղ Դիադոխոսի մէկ գործը կը թարգմանէ հայերէնի, այն գիտակցութեամբ, թէ «ոչ էր սա թարգմանեալ ի մեր լեզու... եւ ես յայն սակս թարքմանեցի, զի մի պակաս եղիցի սա յազգէս մերմէ»: Այս նախանձախնդրութիւնը պատիւ կը բերէ իր հայրենասիրութեան: Կը տեսնուի ասկէ նաեւ թէ Սիմէոն լաւ ծանօթ էր նաեւ վրական գրականութեան. նա հետամուտ եղած է քրքրել վրական վանքերու գրադարանները, իրեն անծանօթ գործեր փերհանելու, կարդալու եւ ի հարկին նաեւ թարգմանելու նպատակով: Վրաց գրականութիւնը Ժ.—ԺԲ. դարուն հարստացած էր իմաստասիրական եւ հայրաբանական կարեւոր գործերու նոր թարգմանութեամբ: Այս թարգմանութիւններուն մօտէն ծանօթ է Սիմէոն. անոնց թուին մէջ էին Պրոկղ Դիադոխոսի, Յով. Դամասկացւոյ, Յով. Կլիմաքսի, Նեմեսիոսի եւ այլ հեղինակներու գործերը: 1227ին օրինակած է Սիմէոն Գրիգոր Նիւսացւոյ գրուածքներու հայերէն թարգմանութիւնը մէկ հատորի մէջ. ասոնք են. 1. Մեկնութիւն Ժողովողին. 2. Մեկնութիւն Երգոց Երգոյն. 3. Խօսք յինն Երանութիւնսն. 4. Յաղագս Կուսութեան եւ 5. Յա-

դադս ընութեան մարդոյ: Վերջնոյս խորագրին տակ ծանօթագրած է Սիմէոն հետեւեալ գիտողութիւնը. «Նեմէսայի եպիսկոպոսի Եմեսիոյ է գիրքս»: Ուստի նա արդէն 1227ին անդրադարձած էր, թէ «Յաղագս բնութեան մարդոյ» գործը, որ հայերէն թարգմանութեան մէջ ընծայուած է Գրիգոր Նիւսացւոյ, կը պատկանի Եմեսիոյ Նեմեսիոս եպիսկոպոսի[12]: Այս կէտին ուշադիր եղած ըլլալու է նա անշուշտ Յովհաննէս Պետրիձեցւոյ վրացերէն թարգմանութենէն:

Սիմէոն կրօնաւորի կենսագրութենէն մանրամասնութիւններ չեն հաղորդուած մեզի: 1248ին կը յայտնէ ինքը, թէ «յոյժ ծերացեալ էի եւ տկարացեալ յաչաց եւ ի մտաց եւ ի զօրութենէ, զի զվաթսնամենիւք էի»: Այս խոստովանութեան համաձայն նա ծնած է 1188ին: Պղնձահանք կը տեսնենք զինքը 1227ին. հոն է նաեւ 1248ին: Յարաբերութեան մէջ ապրած կ'երեւայ Մինաս սինակեցի հետ, որ Հայ-հոռոմ մըն էր ի Տրապիզոն, զբաղած թարգմանութիւններով: Եթէ Սիմէոն 1284ին «յոյժ ծերացեալ էր եւ տկարացեալ ...ի զօրութենէ», հաւանօրէն նա չհասաւ 70ամեայ հասակին. պէտք է վախճանած ըլլայ իբր 1255ին:

---

[12] Գրուածքիս մասին հմմտ. Հ. Յ. Տաշեան, Մատենագրական մանր Ուսումնասիրութիւնք. Ա. (Վիեննա 1895) էջ 1—22 = Հանդ. Ամս. 1892, էջ 65—71:

Սիմէոն գործեց «Վրաց վանքին» մէջ, եւ իբրեւ «ծաթ» չապրեցաւ հաւանօրէն հայ վարդապետներու հետ սերտ յարաբերութեան մէջ. այս պատճառաւ ալ նոյն դարու հայ պատմագիրները Վարդան եւ Կիրակոս, նաեւ Մխիթար Այրիվանեցի խօսք չեն ըրած իր մասին, թէեւ վերջինս իր «Ճառընտիրի» մէջ տեղ շնորհած է Պրոկղ Դիադոխոսի գործին թարգմանութեան:

ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

2. Սիմէոն կրօնաւոր Պղնձահանքի վանքին մէջ 1227ին օրինակած էր Գրիգոր Նիւսացւոյ գրուածքներու հաւաքածոյքը, ինչպէս յիշեցինք վերը: Այս ձեռագիրը պահուած է Էջմիածնի Մատենադարանին մէջ, որ կը կրէ 1013 (Կար. 1118[13]) թիւը: Ի կատարածին ունի Յիշատակարանս (թղ. 241բ), որ մինչեւ այսօր անծանօթ մնացած է գիտնոց: Կը ներկայացնեմ այս տեղ ամբողջութեամբ:

«Յամին ՑՉԼԵերորդի յաւիտենից թուոյն գրեցաւ եւ աւարտեցաւ գիրքս Գրիգորի Նիւսացւոյ եպիսկոպոսի. յ(ը)նդիր եւ լաւ աւրինակաց հնոց, որ թարգմանչացն գրած էր. ձեռամբ մեղապարտ եւ անարժան կրաւ–

[13] Կարենեանցի Ցուցակին մէջ (Թ. 1118) կը նշանակուի. «Մեկնութիւն Առակացն Սողոմոնի. բոլորգիր. գրեալ ի վանս Ապլինցահան ի Սիմէօն կրօնաւորէ ի թուին Հայոց ՉԼէ» (1288):

*նաւորի, Սիմէոնի. յերկիրս Հայոց մերձ ի Լաւռէ, ի վանքն որ կոչի Սպլէնձահան, ընդ հովանե(ա)ւ սուրբ Աստուածածնին. յիշխանութիւն Իվանէ աթապագին, շինողի վանիցս. զոր յերկար ժամանակ արասցէ Տէր որդովքն իւրովք հանդերձ: Արդ աղաչեմ որք ընթեռնոյք կամ աւրինակէք, յիշման արժանի արարէք: Եւ որք յիշէք, յիշեալ լիցիք ի Տեառնէ»:*

*«Յաւիտենից թիւն» է Բիւզանդական թուականը, որ մինչեւ ցՔրիստոս* 5508 *կը հաշուէ*[14] *եւ տարեմուտն ունի սեպտեմբեր* 1*ին. ուստի* 6735—5508 = 1227: *Իւանէ աթաբէգ վախճանեցաւ* 1229*ին: Այս թուականը կիրարկած է Սիմէոն նաեւ Պրոկղի Շաղկապաց թարգմանութեան մէջ. «Յաւիտենից թուականին* **ՑՁԾԶ**, *այն է* 6756—5508 = 1248: *Այսպէս «ի թուականիս յաւիտենից* **ՑՁԻԲ**», *այն է Քրիստոսի* 1214, *կ'օրինակէ հայ–հոռոմ Սերգիս սարկաւագ «յերկիրս Սադիկ (Ձմչկաձագ) ի գիւղն Նոր, Գայլք վանքին մէջ Բարսղի Հարցողաց գիրքն եւ Հարանց վարքը (Երուսաղէմ, Թ.* 336):

*Սիմէոն Պղնձահանեցի թարգմանած է վրացերէնէ հետեւեալ գրութիւնները.*

Ա. Պրոկղ Դիադոխոսի Շաղկապք աստուածաբանականք:

---

[14] *Հմմտ.* F. K. Ginzel, Handbuch der mathematischen und technischen Chronologie, Bd. 3 (Leipzig 1914), S. 292—294.

Բ. Յովհաննէս Դամասկացւոյ Աղբիւր Գիտութեան:

Գ. Յովհաննէս Սինայեցւոյ Սանդուղք աստուածային ելից.

Դ. Պատմութիւն Վրաց:

Ե. Ժամագիրք Յունաց:

*Նկատի պիտի առնեմ* ա. *Հեղինակները կարճառօտ կենսագրութեամբ.* բ. *վրացերէն թարգմանութիւնը.* գ. *Հայերէն թարգմանութիւնն եւ անոր ազդեցութիւնը հայ գրականութեան վրայ:*

## Ա. ՊՐՈԿՂ ԴԻԱԴՈԽՈՍ

3. Պրոկղի Դիադոխոսի Նոր–պղատոնական Իմաստասիրի Շաղկապք աստուածաբանականք։

*Պրոկղ ծնած է Կ. Պոլիս 410ին, մանկութիւնն եւ պատանեկութիւնը անցուցած է Լիւկիոյ Քսանթոս քաղաքը (անկէ կոչուած Լիւկիացի)։ Ուսման ընթացքը սկսաւ Կ. Պոլիս, շարունակեց Աղեքսանդրիա եւ աւարտեց Աթէնք. հոս իր ուսուցիչներն եղան Պղուտարքոս եւ Սիւրիանոս։ Արդէն համբաւուած փիլիսոփայ էր, երբ Սիւրիանոսի մահէն ետքը ձեռք առաւ Աթէնքի Դպրոցին վարչութիւնը (450), զոր նոր պայծառութեան հասցուց։ Պրոկղ հեթանոսութեան ջերմ ջատագովներէն էր. այս պատճառաւ ստիպուեցաւ տարեւոր ժամանակ մը հեռանալ ամպիոնէն։ Վախճանեցաւ 485ին։ Թէպէտ իր աշակերտները արտակարգ հիացմունքով կը հիւսեն իր դրուատիքը, բայց նա ուրիշ բան չտուաւ, բայց եթէ Սիւրիանոսի քով ուսածները լոկ աւանդեց։ Ունէր տրամաբանական սրամտութիւն, որով յօրինուածութեան ենթարկեց նորպղատոնական վարդապե–*

տուԹիւնը, ճկուն, ճարտար, յստակ եւ դիւրահասկանալի արտայայտուԹեամբ: Այս առաւելուԹիւնը ծածկեց իր տկար կողմերը· որով անվստահ վայելեց մեծ փիլիսոփայի հռչակ, Թէ ժամանակակիցներու եւ Թէ եկող սերունդին քով[15]: Նա նկատուեցաւ ԱԹէնքի ամպիոնին վրայ «յաջորդ» Պղատոնի, եւ կոչուեցաւ դիադոխոս (διάδοχος)[16]:

Պրոկղ Թողուց բազմաԹիւ մեկնողական նկարագրով գրուածքներ: Իր գրական գործունէուԹիւնը սկսաւ 432ին, երբ տուաւ երկու կարեւոր գործեր· στοιχείωσις φυσικὴ (ՆախակրԹուԹիւնք բնականք), որ ամփոփ, բայց չափով մը ինքնակաց մեկնուԹիւն մըն էր Արիստոտելի շարժման վարդապետուԹեան, եւ στοιχείωσις θεολογική (ՆախակրԹուԹիւնք աստուածաբանականք), ուր ըստ ամենայնի Պլոտինի եւ Պորփիւրի հետքերով կ'ընԹանայ[17]: ՅընԹացս Միջին դարու Պրոկղի այս գրուածքը իմաստասիրական ուսմանց համար կարեւոր ձեռնարկ մը համարուեցաւ: Թարգմանուեցաւ արաբերէնի·

---

15 Հմմտ. Wilhelm von Christ, Geschichte der griechischen Literatur· Ե. տպ. München 1913, Հատոր Բ. Մասն Բ. էջ 864—868:

16 «Սակս որոյ Դիադոխոս, որ է փոխանորդ[ուԹիւն] Պղատոնի, անուանեցաւ յորոց զկնի նորա իմաստունքն էին». Սիմէոն կրօնաւորի ԹարգմանուԹիւն Պրոկղի (Ն. Մառ, Յովհ. Պետրիձեցի, էջ 21):

17 Յոյն բնագիրը հրատարակեց F. Creuzer, Initia philosophiae et theologiae ex Platonis fontibus ductae· հատոր Գ. Ֆրանքֆուրտ 1822· նոյնը լոյս տեսած նաեւ Պլոտինի գործերու հրատարակուԹեան ՆերածուԹեան մէջ, Պարիս 1855, էջ ԾԱ—ճժէ:

ասկէ լատիներէնի: ԺԱ. դարուն, երբ Կ. Պոլիս Նոր-պղատոնական փիլիսոփայութեան նոր հետեւողներ երեւցան, ինչպէս Պսելլոս, Յովհ. Իտալոս եւ այլք, Պրոկղի «Աստուածաբանական Նախակրթութիւնք» դարձեալ հրապարակ ելան: Այս դարուն ոչ միայն վրացերէնի թարգմանուեցաւ ան, այլ եւ պարզաբանուեցաւ մեկնութիւններով: ԺԲ. դարուն երկրորդ կէսին կարեւոր տեսաւ Նիկողայոս Մեթոնի եպիսկոպոսը նոյն իսկ Հակաճառութեամբ մը հրապարակ գալ, զգուշացնելու համար նոր իմաստասէրները Պրոկղի նորպղատոնական-հեթանոսական տեսութեանց առջեւ: Եւ սակայն յաջորդ դարուն հայ մը, Սիմէոն կրօնաւոր, կարեւոր կը տեսնէ զայն վրացերէնէ հայերէն թարգմանելու: Եւ ոչ այսչափ միայն: ԺԷ. դարու առաջին կէսին Սիմէոն Ջուղայեցի, Գառնւոյ եպիսկոպոսը, ձեռք կ'առնէ Սիմէոնի թարգմանութիւնը, նոր լուսաբանութիւններով անոր թարմութիւն տալու: Նոյն դարուն երկրորդ կէսին Ստեփանոս Լեհացի նոյն գործին մէկ ամփոփումը՝ Պատճառաց գիրքը կը ձեռնարկէ լատիներէնէ միւսանգամ թարգմանելու. իսկ ԺԸ. դարու սկիզբը Սիմէոն Ջուղայեցւոյ հրատարակութիւնը կ'արժանանայ վերստին վրացերէն թարգմանուելու:

Նկատի առնելով այս կարեւորութիւնը, զոր ստացած է Պրոկղի այս գործը հայ գրականութեան մէջ, պատշաճ կը համա-

ըլիմ այս տեղ ներկայացնել համառօտիւ Պրոկղի տեսութիւնը:

ա. Ըստ Պրոկղի Միակը բացարձակ սկզբնապատճառն է: Անկէ կ'ելուզանի ամենայն. եւ միանգամայն անոր կ'անդրադառնայ ամենայն: Ելուզեալը պատճառին նման եւ աննման է միանգամայն, նմանութեան զօրութեամբ կայ եւ կը մնայ ան պատճառին մէջ. նմանութեամբն պէտք է ան վերադառնայ անոր. եւ այս վերադարձը նոյն աստիճաններն ունի, ինչպէս յառաջագայումը: Միակը միաժամանակ անճառելի է. բայց գերի վերոյ բոլոր հաստատականէ (այո) եւ ժխտականէ (ոչ). նա՛եւ միութիւն գաղափարը չ'արտայայտեր զայն համազօր կերպով, որովհետեւ ան նաեւ այս գաղափարէն վեր է: Բայց ամենայնը, որ այս միակէն յառաջ կու գայ, կ'անդամահատուի եռակի զարգացման օրէնքի համաձայն: Որչափ ստէպ կը կատարուի այս գործողութիւնը, այնչափ բաժանական է եւ անկատար՝ արդիւնքը, այս ինքն իրերն որչափ կը հեռանան նախսկիզբէն, նոյնքան բաղադրական եւ իրենց գործունէութեան մարզին մէջ սահմանափակ կ'ըլլան:

բ. Առաջինը, որ նախամիակէն յառաջ կու գայ, միակներն (Henade) են. մինչ բացարձակ նախէակը աշխարհի հետ առանց յարաբերութեան է. այս միակները, որոնց թիւը Պրոկղ անորոշ կը թողու, կ'ազդեն աշխարհի վրայ, անոնք աստուածներն են

այս բառին բարձրագոյն իմաստով. անոնք են նախախնամութիւնը: Անոնք գերագոյն են քան գոյացութիւնը, կեանքը, միտքն եւ իմանալիութիւնը, բայց սակայն ունին անոնք իրենք իրենց մէջ աստիճանական աղերս, այնու որ ոմանք նախէակին մերձաւոր, եւ ուրիշներ անկէ հեռաւոր են:

գ. Այս միակներուն կը յարի ապա եռեակը (Trias) մտացածին, մտացածին-իմացական եւ իմացական էա'կին το νοητον, το νοητον άμα και νοερον, το νοερον)· νοητονը կ'ենթարկուի գոյակի (οὐσια) գաղափարին, իսկ νοητον άμα και νοερον կեանքի (ζωη) գաղափարին եւ νοερον մտքի (νους) գաղափարին: Այս էութեան կարգերու առաջին եւ երկրորդն ապա նորէն եռապատիկ կ'անդամահատուին. ընդհակառակը երրորդ էութեան կարգին բաժանումը, որ մտքի կը համապատասխանէ, կը կատարուի ըստ եօթնաթուին: Ապա Պրոկղ այս եօթնեակին ամէն մէկ անդամ կը բաժնէ նորէն եօթնաթիւ, որով կը ստանայ եօթը իմացական եօթնեակ, որոնց անդամներուն կը յատկացնէ այլաբանական մեկնութեամբ կարգ մը աստուածութիւններ, զորոնք առեղծած են ժողովրդական հաւատքն եւ պղատոնականք եւ նորպղատոնականք:

դ. Իմացականէն կը յառաջագայի վերջապէս ոգեկանը: Ամէն ոգի համաձայն իր էութեան յաւիտենական է եւ համապատասխան իր գործունէութեան ի ժամանակի:

Տիեզերական ոգին կազմուած է բաժանական եւ անբաժանական գոյացութենէ եւ միջիններէ եւ համաձայն ներդաշնակ յարաբերութեանց: Կան աստուածային, դիւական եւ մարդկային ոգիներ: Ոգին կենալով ընդ մէջ զգայականին եւ աստուածականին՝ կը ստանայ տակաւ առ տակաւ կամաց ազատութիւնը: Իր չարիքին նա ինքն է պատասխանատու: Կարող է նա վերադառնալ աստուածականին: Բայց հայեցուածքը միայն մինչեւ միտք կրնայ հասնիլ: Ամէն մարդ ունի իր դերը. եւ ասով միայն կրնայ ըլլալ աստուածներու հետ կապակցութեան մէջ: Մարդ պէտք է ինքզինքը կոյր հաւատքով նուիրէ դեւին եւ ծառայէ, եթէ կ'ուզէ հասնիլ գերագոյնին:

4. Պրոկղ Դիադոխոսի «Շղակապ աստուածաբանական» վրացերէն: Յովհաննէս Պետրիձեցի (Պետրիձէ, Պետրիձոնեցի)[18] Վրաց գրականութեան մէջ «անյաղթ փիլիսոփայի» անունը կը վայելէ, ինչպէս Հայոց քով Դաւիթ Անյաղթ: Աւելի թարգմանիչ քան հեղինակ հանդիսացած է ան: Պետրիձեցի յորջորջուած է հաւանօրէն, վասն զի գործած է Բուլղարիոյ Պետրիցիոս (այժմ

[18] Н. Марръ, Іоаннъ Петрицскій, грузинскій неоплатоникъ XI—XII вѣка. С. Петербургъ 1909 (Записки Восточ. Отдел. Имп. Русск. Археолог. Общества, XIX, 53—113).

Բոչկովօ) գիւղին մէջ հաստատուած հայ-վրական վանքին մէջ։ Այս Մենաստանը հիմնած է Գրիգոր որդի Բակուրանի, որ ականաւոր դէմք եղած է Բիւզանդական կայսրներու զինուորական ծառայութեան մէջ։ Կը յիշէ զինքը Մատթէոս Ուռհայեցի[19]։ Հայոց ՇԺԳ (1064) թուին Թագաւորն Պարսից Արփասլան (տպ. Ապօլան) որդին Տուղրիլի (1063—1072), կը պաշարէ Անին. «Բազում աւուրս պատերազմեալ ոչ կարացին մտանել ի քաղաքն. յայնժամ թուլացան ի պատերազմէն։ Իսկ անօրէն իշխանքն Հոռոմոց, զորս կացուցեալ էր Թագաւորն պահապան տանն Հայոց, Բագարատ հայրն Սմբատայ եւ Գրիգոր Բակուրանին որդին վրացի ազգաւ, սկսան զորոք (տպ. սոքօք) ամրանալ ի վերին բերդն եւ ի ներքին». ի տես այս ռազմական զօրաշարժին խուճապի կը մատնուի քաղաքը. «բեկան (բնակիչք) եւ այր իւրաքանչիւր ի փախուստ լինէր առանց պատճառի». Թշնամին օգտագործելով քաղաքին այս կացութիւնը՝ կը խուժէ քաղաք եւ կը կոտորէ։ Բայց եւ այնպէս Յունական բանակին զօրավարը Գրիգոր Բակուրանեան, անշուշտ իր զօրքով, ողջանդամ կը պրծի. վասն զի զինքը 1084ին կը գտնենք ի Պետրիցիոս. ուր վանք մը կը հիմնարկէ։

---

19 Մատթէոս Ուռհայեցի, 148 (հրտ. Վաղարշապատ 1898)։

*Վրաց Պատմութեան մէջ կ՚ըսուի ի մասին Գրիգորի·*

*«Յաւուրսն յայնոսիկ՝ մինչեւ էր Գէորգի (թագաւոր Վրաց* 1072—1089) *ի Բանա[կս], եկն առ նա Գրիգոր որդին Բակուրանայ, տէրն Ուխտեաց (Օլթի) եւ Կարուց եւ Կարնու քաղաքի. եւ խնդրեաց (Գորգի) ի նմանէ զԿարս. եւ եթող նմա լինել զիւրն»* (*էջ* 114): *Վրացերէն օրինակն ունի* (Histoire de la Géorgie, p. 346).

*Թագաւորն Գորգի եկն ի Բանա:* Là vint aussi le général (*մր. զօրաւարի*) de l'orient, Grigol, fils de Bacourion, qui commandit à Olthisni, à Carnoukalak et à Cars, et on se livra à la joie et au repos. Ce Grigol ayant donné au roi la forte ville de Cars et les territoires environnants, il prirent congé l'un de lautre.

*Գրիգորի հիմնարկած վանքը իր Եկեղեցիով յանուն Ս. Աստուածածնի, եւ առընթեր· կառուցուած Դամբանարան-մատուռով մնացած է ի Բոչկոմօ, 30 քիլոմետր հեռու Ֆիլիպպէէն, Ռոտոպ լեռներու դիմաց: Մատուռին վրայ կը կարդացուի յունարէն արձանագրութիւնս, զոր յառաջ կը բերեմ հայերէն թարգմանութեամբ:*

ԳՐԻԳՈՐ ՍԵԲԱՍՏՈՍ ԵՒ ԾԱՌԱՅ ՔՐԻՍՏՈՍԻ

ԲԱԿՈՐԵԱՆ ՄԵԾ ԴՈՄԵՍՏԻԿՈՍ ԵՒ ՇԻՆՈՂ:

ԱԲԱՍ ՄԱԳԻՍՏՐՈՍ, ԵՂԲԱՅՐ ԵՒ ՇԻՆՈՂ

Պահուած է նաեւ վանքին Կանոնադրութիւնը գրուած մագաղաթի վրայ եւ ստորագրուած Գրիգոր Բակուրեանէն հայերէն, որ եւ յունարէն լեզուով հաստատած է, թէ ստորագրութիւնը Գրիգորինն է, գրուած հայերէն գրերով[20]:

Մենաստանս ունեցած է իր հովանաւորութեան տակ նաեւ կուսաստան մը, այսպէս կոչուած պետրիցուհիներ (πετριτζιώτιοσα):

Գրիգոր Բակուրեան (Բակուրեանի), ծագումով հայ էր, կրօնով «քաղկեդոնիկ», հայրենօք հաւանօրէն Տաշրացի կամ Գուգարացի: Իր հիմնած Մենաստանը ի Բաչկովօ կ՚ենթարկուէր ըստ ամենայն հաւանականութեան յունական Եկեղեցւոյ իրաւասութեան. իսկ միաբանութիւնը կազմուած էր հայ եւ վրացի միաբաններէ: Կանոնադրութիւնը կը պարտաւորէր, որ միաբանները դաստիարակուին նաեւ գրագիտութեան մէջ, անշուշտ ուսանելով հայերէն, վրացերէն եւ յունարէն: Այնու որ Վրաց իշխանութեան տակ քաղկեդոնիկ Հայերը կ՚ենթարկուէին

---

[20] Louis Petit, *Τυπικὸν* de Gregoire Pacourianos pour le monastère de Pétritzos (Backovo) en Bulgarie. Византiскiй временникъ, XI (1901). Ցուելուած Ա.: Հմմտ. Ներսէս Գասպալեան, Պաչքովյի վանքը. Հայրենի Տարեցոյց. Ա. Փլովտիւ 1938, էջ 53—56:

Վրաց Եկեղեցւոյ իրաւասութեան, կը համարուէին վրացի քրիստոնեայ, ինչպէս յոյակոյս սահմանին, ուղղակի Բիւզանդական Եկեղեցւոյ իրաւասութեան տակ գտնուողները՝ յոյն, գաւառներու մէջ հայ–հոռոմ կը նկատուէին:

Այս Մենաստանի մէջ ուսաւ եւ ծաղկեցաւ Յովհաննէս Պետրիձեցի, որ մականուամբ կը կոչուէր Զիմչիմելի: Իր կեանքէն կենսագրական գծեր ծանօթ չեն. չգիտենք մինչեւ իսկ անոր ապրած ժամանակը, որ հաւանօրէն ԺԱ. դարու վերջին եւ ԺԲ. դարու առաջին կէսին կ'իյնայ: Յովհաննէս քաջ տեղեակ էր յունարէնի. կարդացած է յոյն իմաստասէրներու գործերը: Զբաղած է առաւելապէս թարգմանութեամբ. ծանօթ են իր թարգմանութիւններէն, կատարուած յոյն բնագրէ վրացերէնի, հետեւեալները.

ա. Յովհաննէս Ոսկեբերանի Մեկնութիւն Մարկոսի:

բ. Մեկնութիւն Ղուկասու:

գ. Յովհաննէս Սինայեցւոյ Սանդուխք, մասամբ ոտանաւոր եւ մասամբ արձակ:

դ. Նախերգներ ի պատիւ այն սուրբերու, որոնք կը տօնուին Սեպտեմբեր–Յունուար ամիսներուն. ոտանաւոր:

ե. *Տեղիքներ Յովսեպոս Փղաւիոսէն, որոնք անհամաձայն են Ս. Գրոց:*

զ. *Արիստոտելի վասն Տեղեաց:*

է. *Արիստոտելի Պերի արմենիաս:*

ը. *Նեմեսիոսի յաղագս Բնութեան մարդոյ:*

թ. *Պրոկղի Դիադոխոսի Շղակապք աստուածաբանականք:*

5. Պրոկղի Դիադոխոսի Շղակապք աստուածաբանականք հայերէն թարգմանութեամբ:

*Էջմիածնի Թ. 1500 ձեռագիրը կը ներկայացնէ այս գրուածքը հետեւեալ կարգով.*

ա. Ամելաւխաւսի իմաստասիրի եւ հռետորի Աթենացոյ եպիսկոպոսի Լուծմունք Պրոկղի Դիադոխոսի անուանեցելոյ Աստուածաբանութեանց: *Զամենայն ազգ եւ զեղանակ պարտական եմք ճանաչել, զորս ի մեծ աստուածաբանութեանս տեսութիւնք...:*

բ. *Շաղակապք Պրաւկղէ Դիադաւխոսի պղատոնական իմաստասիրի չարայաւղող կապք աստուածաբանականք: Այս[պէս] Պրոկղէ փոխանորդ աթոռո] աստուածային Պղատոնի. էր սա ազգաւ Լոնացի...:*

գ. Պրոկղէ Դիադոխոսի պղատոնական իմաստասիրի Շ(ա)ղակապք աստուածաբանականք. հատոր ՄԺԱ: Մկ. Շ(ա)ղակապք աստուածաբանութեան յայն սակս կոչէ, վասն զի բոլոր գիրք ամենայն իմաստասիրաց ի չորից նիւթոց սկսեալ...:

դ. (սկիզբն) Ամենայն բազմութիւն յարակցի ուրեմն միոյն. իսկ եթէ ոչ հաղորդակցի եւ ոչ ամենայն մի եղանի...: Հատուածիս վերջը. Ամելախսաւսի լուծմունք: Այլ Իմաստասէրս, եթէ Ամենայն բազմութիւն յարակցի ուրեմն միոյն...:

Վերջին գլուխն է «ՄԺԱ. Ամենայն մասնական անձն ի վայր իջեալ առ եղելութիւն բոլորովիմբ ստորադոյանայ... (վ.) Քանզի բոլորակութիւն անձին անդի յառաջ գայցէ»:

Կը յաջորդէ. «ԼԾ. Ամենայն մասնաւորական անձն իջեալ յ(արարածս) բոլորաբար ի վայր իջանէ [Զայս տայ կարծիս...»] իբր չորս տող չունի վրացերէնը. ապա (Մկ.) «Այսքան զայս ասէ միտք...: (վ.) Որով յայնժամ ասելի է նմա, եթէ Ադա՛մ, ո՛ւր ես. եթէ ուստի՛, ո՛ւր անմահութիւն մոռացոյց զԱստուած եւ զհայր իւր: Օրհնեալ է Աստուած»:

(Յիշատակարան թարգմանչին [21])

*«Թարքմանեցաւ* * *գիրքս որ է Շ(ա)ղակապ եւ գլուխ աստուածաբանութեան Պրոկղէ Դիադոխոսի պղատոնական իմաստասիրի, ձեռամբ Սիմէոնի անպիտան քահանայ կրօնաւորի ի Վրաց լեզուէ ի հայ լեզու. յերկիրս Հայոց, ի վանս Վրաց որ կոչի Պղնձահանք. յաւիտենից թուականին ՑՂԾԶ* (1248): *Աղաչեմ զձեզ, ով եղբարք, զի յոյժ*

* Տարբերութիւնք ընթերցուածոց: A *Մխ. Այրիվանեցի. էջմ.* 1500: P *Պետրոսեան (Վիեննա Թ.* 217. *հրտ. Տաշեան)*: V *Վատիկան.* Z *Զարբանալեան.* S *Սիմէոն Գառնեցի ըստ Վիեննայի Թ.* 649:

1 PSV *Թարգմանեցաւ.* S չունի *որ է շաղկապ — աստուածաբանութեան.* A միշտ, նաեւ հոս *շղակապ.* VZ *շաղկապ*: — 2 AV այլուր եւ հոս *պրոկղէ.* ZS *պրոկղի*: — 3 A *դիադոխոսի* (այլուր *դիադոխոսի*). P *դիադոխօսի.* Z *դիադօխոսի*: — 4 AV *քհ.* PZ *քահանայի.* S *քահանայի եւ կ.*: — 6 կը սպասուէր *Պղնձահան.* PZ *պղնձահանք*: — 7 S *ի յաւիտենից*: — 8 S *արդ աղաչեմ ով Ե. ներել ինձ զի...*:

---

[21] *Այս Յիշատակարանը նախ լոյս տեսաւ Արարատ* 1888, *էջ* 158—159: *Ասպ Զարբհանալեան, Մատենադարան, էջ* 667—668. *Հ. Յ. Տաշեան, Մատենագրական մանր Ուսումնասիրութիւնք. Ա.* 151—152 (*Ս. Պետրոսեանի օրինակութեամբ էջմ.* 1500*էն. համմտ. Վիեննայի Թ.* 217, *Ցուցակ,* 555): E. Tisserant, Codices Armeni Bybliothecae Vaticanae Romae 1927, *էջ* 145: *Սոյն Յիշատակարանս կցած է իր Մեկնութեան Սիմէոն Ջուղայեցի. ասկէ հրատարակած է Տաշեան, անդ, էջ* 29—30:

*աշխատութեամբ թարքմանեցի. Նախ զի ոչ էի արժանի այսպիսի սպասաւորութեան, սակս չաղախեալ գոլ մեղօք. երկրորդ զի յոյժ ծերացեալ էի եւ տկարացեալ յաչաց եւ ի մտաց եւ ի զօրութենէ. զի զԿ. ամենիւք էի: Այլ զի ոչ էր սա թարքմանեալ ի մերս լեզու. եւ սա է մայր աստուածաբանութեան առաջին: Մուսէս զայս ուսեալ զդպրութիւն եւ ի սորա բանիցն կարգեաց զիւրն աստուա-ծաբանութիւն. եւ Դոնեսիոս Արիոպագացին եւ Եռոթէոս զիւրեանց գրեանքն բովանդակ ի սմանէ գրեցին. Նոյնպէս եւ Գրիգոր աս-տուածաբան զիւրն աստուածաբանութիւն ի սմանէ խաւսեալ է. եւ բոլորովիմբ նորքս զամենայն աստուածաբանութիւնս իւրեանց ի սմին ոլորմանց բանիցս բխեցին: Սա է հիմն եւ արմատ եւ մայր ամենայնի: Ի սմանէ առին նոքա բովանդակ: Իսկ այնք փոքր հատորք ելով՝ եւ ես յայն սակս թարք-մանեցի. զի մի պակաս եղիցի սա յազգէս մերմէ: Արդ աղաչեմք որք կարդայք կամ*

9 PV *թարքմանեցի.* S *թարգմանեցի:* — 11 PS *գոլոյ:* — 12 V *Կ–ամեա.* ZPS *զվաթսնամենիւիք:* — 14 S չունի *սա.* S *լեզուս.* VZ *ի մեր.* V *սայ:* — 15 V *մուսէս.* S չունի 15—27 *եւ սա է — յայն սակս:* — 18 PV *դիոնէսիոս.* ZPV *արիսպագացին:* — 21 Z *զիւր:* — 22 P *բոլորովիմբն որք.* V *բոլորովիմք նորքս.* Z *ներքս* (?): — 23 PZ *աստուածաբանու-թիւն.* V *-ութիւնս:* — 24 V *եւ սայ:* — 26 *սոքա. այնք*] կը սպասուէր *սայք*, զոր սովոր է գործածել յաճախ Սիմէոն: — 27 S *այնր սակս թարգմանեցի զի մի պակաս լինիցի:* — 29 S *որք ընթեռնուք կամ օրէ-նակէք, յիշեցէք յաղօթս զիս.* VZ չունին *Արդ — ի սմանէ:*

*օրինակ առնոյք, յիշեսջիք յաղօթս. եւ զիմ փոքր բանս գրեցէք զկնի. եւ մի ինչ թողուցուք ի սմանէ :*

*Զտէր Մխ(իթար) վդ (վարդապետ) յիշեցէք ի Քրիստոս աղ(աչեմ) :*

*Ձեռագիրք*: *Էջմ.* 1500 (*Կար.* 924) 1068*ա*—1121*բ* (1286): 1832 (1658): Vat. Cod. Borg. 77 (1648: Tisserant, Cat. 143—145): *Վենետիկ, Թ.* 1132 (*ԺԸ*): *Երուսաղէմ*, 1899 (1624):

*Էջմիածնի Թ.* 1500 *գրուած է Մխիթար Այրիվանեցւոյ գրչով* 1286*ին*[22] *Այրիվանքի մէջ. ուստի ճշդիւ* 38 *տարի ետքը. եւ կրնանք վստահիլ իր օրինակութեան հաւատարմութեան վրայ: Այս ձեռագրէն քանի մը հատուածներ հաղորդեց հայագէտն Կ. Կոնիբիր Հ. Յ. Տաշեանի, որ հրատարակեց զանոնք Հանդէս Ամսօրեայի մէջ*[23]: *Աւելի ընդարձակ մէջբերումներ կը գտնենք Նիկ. Մառի աշխատութեան մէջ վրացերէն թարգմանութեան դէմ դիմաց*[24]:

31 P *բանքս.* S *զկնի. եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն:*

---

[22] *Հ. Ն. Ակինեան, Մխիթար Այրիվանեցւոյ ձառընտիրի նորագիւտ Յիշատակարանը. Ակօս* (*Բէյրութ*) *ԺԳ* (1946) *էջ* 120—126:

[23] *Հ. Յ. Տաշեան, Պրոկղի հնագոյն Օրինակը. Հանդ. Ամս.* 1893, *էջ* 375—380 (= *Մատ. մանր Ուսումնասիրութիւնք. Ա.* 147—161):

[24] *Ն. Մառ, անդ, էջ* 66—83: *Յամելախօսի*

Սիմէոն կրօնաւոր, ինչպէս ինքնին կը խոստովանի, թարգմանութիւնը կատարած է վրացերէն օրինակի վրայէն: Այդ վրացերէն թարգմանութիւնը հասած է մեզի ԺԲ դարու ձեռագիրներու մէջ: Ն. Մառի համեմատութիւնները վրացերէնի եւ հայերէնի մէջ՝ ցոյց կու տան, թէ հայերէնը կախում ունի վրացերէնէն. բայց կը շեղի անկէ տեղ տեղ. յատկապէս յայնմ, որ հայն Մեկնութիւնքն կամ Լուծմունքն կը վերագրէ «Յամեղաւխաւսի իմաստասէր եւ հռետոր Աթենացւոց եպիսկոպոսի», նաեւ պարզապէս «Ամեղախաւսի Լուծմունք» կ'անուանէ, մինչ վրացերէնին անծանօթ է առ հասարակ մեկնիչիս անունը, որքան ալ անոր լուծմունքն եւ մեկնութիւնները կը գտնուին նաեւ հոն: Վրացին ունի սակայն լուսանցքի վրայ Լուծմանց եւ Մեկնութեանց կից Յ կամ ՅՈ համառօտագրութիւնները, զորոնք Մառ կ'իմանայ Յ(ովհաննէս) եւ ՅՈ(վհաննէս) եւ այս Յովհաննէսը կը նոյնացնէ Յ. Պետրիձեցւոյ հետ: Բայց թէ իրօք Պետրիձեցի՞ն է անոնց հեղինակը կամ թարգմանիչը, չկայ որ եւ է հին գրաւոր վկայութիւն, գոնէ ծանօթ ձեռագիրներու մէջ[25]:

---

Լուծմանց սկիզբը մինչեւ «եւ արդ առեալ զմի մի ի նոյանէ մեկնեսցուք» տուած է նաեւ Հ. Բ. Սարգիսեան, Վենետիկի Մխիթ. Թ. 1132էն, Բազմավէպ 1894 էջ 125—127, եւ ՃԽԳ հատուածը՝ անդ էջ 128—129:

[25] Ն. Մառ, անդ 66—67, կը յիշէ հետեւեալ ձեռագիրները. Ասիական Թանգարան, Georg. 174a

Զենք կրնար հաւատալ թէ Սիմէոն կրօնաւոր «Յովհաննէս Պետրիձեցի» անունը կամովին այլայլած ըլլայ. նա ունէր իր ձեռքին տակ հնագոյն, գոնէ ԺԳ. դարու առաջին կէսին գրուած վրացերէն օրինակ. ուր նա կարդացած եւ բառ այնմ թարգմանած է մեկնիչին անունը «Յամելաւխաւս իմաստասէր»[26] եւ հռետոր, Աթենացւոց եպիսկոպոս, որչափ ալ այժմ մեզի անծանօթ ըլլայ համանուն եպիսկոպոս մը Աթենացւոց[27]:

(ԺԸ դար): Կայսերական ժողով. Մատենադարան. վրացերէն ձեռագիրք. թ. 111 (1751էն): 360: 225 (1754է): 228 (1862է): Իսկ անդ, էջ 95, ծան. 1 կը յիշէ Ասիական Թանգ. Georg. թ. 5 ձեռագրին լուսանցքի վրայ գրուած ռուսերէն տողերս. «Իմաստասէր եւ աստուածաբան Յովհաննէս Պետրիցեցի թարգմանեց Պրոկղի բնագանցութիւնը իր իսկ Յովհ. Պետրիցեցւոյ Մեկնութեամբ հանդերձ»:

[26] Ծանօթ է մեզի Քաղկիսացի Նորպղատոնական Յամբղիքոս (Ἰάμβλιχος) ասորի (իրր 280—304), գործած յԱպամիա: Իր Մեկնութիւնն Ստորոգութեանցն Արիստոտելի հայերէն թարգմանութեան մէջ խորագիր կը կրէ. «Լուծմունք ի Ամէլաւխոյսէ ասացեալ». իսկ Մեկնութիւնն Արիստոտելի Պերի արմենիաս գործին՝ «Մեկնութիւն Ամելախոյսի ասացեալ» (Ձեռագիր Վիեննայի Մխիթ. Մատ. թ. 112, թղ. 3ա եւ 112ա): Յամղիքոս Ասորի անգամ մը յիշուած է Շաղկապաց Լուծմանց մէջ «Եամելիխոս» գրչութեամբ (Բազմավէպ 1894, էջ 323):

[27] Աթէնքի ծանօթ եպիսկոպոսներն են ԺԱ—ԺԲ. դարուն. Թէոդեգիոս († 1007), Միքայէլ Ա. († 1030), Լեւոն Ա. Սինկեղոս (°), Լեւոն Բ. Սինկեղոս († 1069), Յովհաննէս Ե. Բլախերնիտէս († 1086), Նիկետաս Գ. Կուրտէս († 1121), Գէորգ Բ. († 1156), Նիկողայոս Ա. (1166—1175), Միքայէլ Բ. (°), Թէոփիլակտ (°), Գէորգ Գ. Խերոս († 1172), Գէորգ Դ. Բուրցէս († 1180), Յովհաննէս Զ (1180—1182), Միքայէլ Ակոմինատոս (1182—1220): Հմմտ. R. Janin, Athènes: Dictionnaire d'His-

Հայերէն թարգմանութիւնը կը զանազանէ Լուծմունք եւ Մեկնութիւն: Լուսանցքի վրայ սակայն Լծ. եւ Մկ յաճախ կը միանան կամ Լծ. կ՚ըլլայ Մկ. եւ ընդհակառակն: Այս զանազանութիւնը չունի վրացին, որ երկուքն ալ իբր Մեկնութիւն կը նշանակէ: Երկուքն ալ քրիստոնեայ հեղինակ կ՚ենթադրեն: Տարբե՞ր անձնաւորութիւններ են Լուծիչն եւ Մեկնիչը: Ինձ կը թուի, թէ երկուքն ալ մէկ հեղինակ են: Այս հեղինակը կ՚ենթադրէ իր առաջ Պրոկղի յոյն բնագիրն եւ անոր վրացերէն թարգմանութիւնը, ուստի նա յունագէտ եւ վրացագէտ է միաժամանակ, լաւ հմուտ նորպղատոնական փիլիսոփայութեան, բայց նաեւ արիստոտելեան դրութեան: Առանց տարակուսի ԺԱ. դարու հեղինակ է, թերեւս Յովհաննէս Իտալոսի շրջանակէն վրացագէտ, բայց յունախօս վրացի մը: Բայց թէ նա ինչպէս «Յամելախօս Աթենացւոց եպիսկոպոս» եղած է, անմեկնելի կը մնայ: Այս Լուծմունքն եւ Մեկնութիւնքը կցուած են Պրոկղի Շաղկապաց՝ վրացերէն թարգմանութիւնը կատարուելէն ետքը: Հետեւեալ տեղիքը զայս ենթադրել կու տայ. «Դարձեալ գիտելի է եւ սայք. զի այլ է զաւրութիւն եւ ներգործութիւն անձին եւ այլ մտաց. եւ յամենայն հելլենացի խաւսս զիւրն ուրոյն ունի

toire et de Géographie ecclesiastiques, fasc. 25—26 (Paris 1930) p. 41—42.

*զանուն նմանապէս իւրն գոյացութեանն:* Իսկ ի հայս եւ սակս աղքատութեան լեզուի ոչ անուանս ունելով եւ ոչ թարքմանքն գրեցին ուրոյն. այլ միով զամենայն կոչեցին բան. եւ այս յոյժ խափանէ զիս: *Եւ արդ լուր. զի անձին կոչի* դիանիա *(διάνοια). իսկ մտացն՝* նոիմա *(νοημα). իսկ իմացելոյն եւ վերադրելոյն՝* նոիտաւն *(νοητόν): Եւ արդ առեալ զմի մի ի սոցանէ մեկնեսցուք»* (*Մառ*, *էջ* 75—76)*: Ընդգծուած տողերս վրացին ունի. «իսկ առ մեզ ոչ թարգմանիչք* (*«թարգմանթա»*) *եւ ոչ այլ ոք չիմացան զմիտս. եւ այս յոյժ խափանէ* (*խանգարէ*) *զիս ի թարգմանութեանս* (*«թարգմանսաա»*)*. մերքն զամենայն միով կամ համազօր բանիւ կոչեն եւ այսպէս դնեն»: Այս նկատողութիւնը Յամելօխօսի լուծմանց մասին մէջ է: Կրնայ հայիլ թէ թարգմանչին եւ թէ մեկնիչին. այնու որ «թարգման» ունի իր մէջ կրկին իմաստներն ալ: Իսկ Լուծմունքն եւ Մեկնութիւնք կը գտնուին միայն վրացերէն թարգմանութեանս մէջ, գրուած մասնաւորապէս սոյն թարգմանութեանս լուսաբանութեան համար:*

6. *Պրոկղի գործը գրուած յունարէն՝ թարգմանուած է վրացերէնի եւ ասկէ հայերէնի: Հայերէն թարգմանութեան արժէքը գնահատելու ժամանակ հարկ է նկատի առնել իրողութիւնս: Այն բազմաթիւ յոյն բառերը, որոնք կը տեսնուին հայերէնի մէջ, փոխառութիւն են ուղղակի վրացերէն թարգմա-*

նութենէ, տեղ տեղ աղճատուած կերպարանքի մէջ: Նոյնպէս յունաբան բարդութիւններէն շատերը կազմուած են վրացերէն թարգմանութեան մէջ մուտ գտած յունաբան բարդութիւններէն. ինչ ինչ յատուկ են հայուն, որ փոխ առած է զանոնք յունաբան հայերէն գրուածքներէ, արդիւնք յաճախակի ընթերցման նմանօրինակ թարգմանութիւններու: Ըստ այսմ այժմ հայերէնի մէջ նկատուած յունարէն սկզբնագրի սխալ իմացումները կը ծանրանան վրացի թարգմանչին ուսին, որուն յունագիտութիւնը կ'երեւայ թէ յամենայնի անթերի եղած չէ: Հ. Յ. Տաշեան[28], որ Սիմէոն Ջուղայեցւոյ օրինակն աչքի առաջ ունեցած է, մատնանիշ ըրած է արդէն ինչ ինչ աչքառու օրինակներ, որոնցմէ կը յիշեմ միայն. «յորում սիրայի լինիցի ընդ միմեանս ալլիլուքիայ» (ՂԸ). այս ինքն «Ուր կարգ կայ ստոյգ եւ փոփոխ աղերս» (յն. σεῖρα, ἀλληλουχία) «եւ զեմփաս նախատոյին» (ԾՂԴ). յն. ἔμφασις ազդուարանութիւն. «իսկ եթէ ամանակաւ չափի, բնդանի լինի նմա, զի ըստ ամանակին եղանի». յն. προσῆχον «ի դէպ» կարդացուած է πρόσοιχον, «ընտանի, մերձաւոր»: «Իբր զսուր զաւքիա (վր. օքսիա, յն. ὀξεῖα), բութ եւ վառիա (վր. վարիա. յն. βαρεῖα) որ է ծանր, եւ պե՞-

---

[28] Տաշեան, Մատենագր. մանր Ուսում. Ա. 39—44:

րիսպոմեն (վր. պերիսպոմէն, յն. περισπωμένη. Մառ, էջ 75)։

Ուշադրութիւն կը գրաւէ յատկապէս յոյն բնագրին στοιχείωσις θεωλογική, որ գրուածքիս խորագիրն է եւ թարգմանուած է հայերէն «շղակապք աստուածաբանականք» (նաեւ «աստուածաբանութեան»)։ Առաջին բառը վրացին թարգմանած է կաւշիրի, գիրք. զօդում. դաշինք, միութիւն. շաղկապ. (նաեւ քերակ.), փիլիսոփայական առումով նաեւ տարր[29]։ Այս կաւշիրին Սիմէոն կը հայացնէ շղակապ. ա՛յսպէս ըստ Մխիթար Այրիվանեցւոյ ուղղագրութեան, զոր յետինք կարդացած են «շաղկապ». նախնականն էր հաւանօրէն «շաղակապ», կաղմուած յն. σύν-δεσμος ի նմանութեամբ։ Իմաստին բացատրութիւնը կը տրուի Լուծմանց մէջ այսպէս. «Իսկ շ(ա)ղակապք աստուածաբանութեան ասին հատորք (գլուխք) գրոցս, ստիխի (կարդա՛ ըստ վր. ստիխոի, յն. στίχοι) կոչի հելլենացի եւ հայ՝ շ(ա)ղակապ եւ հեբրայեցի լեհէմ. վասն այսր կոչի շաղակապ իբր զպարզ յամենայնի. քանզի եւ որոց առ ուսմունս գայցեն ամենայնի, նախ զպարզսն ուսուցանեն եւ ապա զորս ի նոցանէ բարդեն»։ Այլուր կ՚ըսուի. «Շաղակապք... շարայարող կապք աստուածաբանականք» (էջ 70)։ Յամենայն դէպս στοιχείωσις (տարերք, նախակրթու-

---

29 Մառ, անդ, էջ 57։

*թիւնք) «շաղակապ» թարգմանել կարելի չէր յունագէտի մը. թէ յաջո՞ղ էր թարգմանել զայն «կաւշիրի», ինչպէս վրացի թարգմանը իմացած է, չգիտեմ. Սիմէոն վրացւոյն ազդեցութեան տակ գտնուած է:*

*Աւելորդ կը համարիմ անդրադառնալ այստեղ Հայագէտ Կոնիբէրի յայտնած կարծիքին, որ Շաղկապաց այս թարգմանութիւնը «հին թարգմանչաց գործք» կը համարէր. «Հնագոյն թարգմանութիւնն առաւել հաւատարմութեամբ արարեալ է քան զայլս. առանց երկմտութեան Վրացն թարգմանութիւն ի Հայոց լեզուէ ինքն յարդարեալ է եւ վերստին հայերէն թարգմանեալ»*[30]*: Հայագէտը անուշադիր եղած է թարգմանչին Յիշատակարանին, ուր բացայայտ ըսուած է թէ այդ «Հնագոյնը» թարգմանուած է ուղղակի վրացերէնէ:*

7. Սիմէոն Ջուղայեցի եպիսկոպոս Գառնւոյ եւ իր Մեկնութիւնը Շաղկապաց:

*Սիմէոն ծնած է հին Ջուղայ. 1605ի տեղահանութեան ժամանակ, տակաւին մանկահասակ, տարուած է Նոր Ջուղայ: Պատանի հասակին կ'աշակերտի Խաչատուր Կեսարացւոյ Ամենափրկիչ վանքին մէջ: 1629ին կ'ընկերանայ իր ուսուցչին, որ նուիրակութեամբ կ'ուղեւորէր Խրիմ եւ Լեհաստան: 1630ին Էջմիածին կարճ ժամանակ մը լսեց Մելքիսեդեկ Վժանեցւոյ Իմաստասիրական դասա-*

---

[30] *Զարբհանալեան, Մատենադարան, էջ* 609:

խօսութիւնները։ Ապա վերադարձաւ Նոր-Ջուղայ եւ շարունակեց ուսումները Կեսարացւոյ քով։ Առաւ վարդապետական իշխանութիւնը եւ դասախօսեց ժամանակ մը Ջուղայ։ Փիլիպպոս կաթողիկոսի հրաւէրով փոխադրուեցաւ Էջմիածին, ուսուցչական պաշտօնով։ Ապա կարգուեցաւ (1645°) առաջնորդ Երեւանցւոց. կը մեկնի «ի վանս նոցա, որ է ի գաւառին Գառնւոյ, անուամբ Ամենափրկչին, որ մականուամբ առեն Հաւուց թառ[31]»։ 1656ին «քարոզութեան աղաղաւ

---

31 Հ. Գ. Զարբհանալեան Պրոկղի Ծաղկաքաղ թարգմանիչը՝ Սիմէոն Պղնձահանեցին համարած է «Գառնեցի». կը գրէ Մատենադարան, էջ 667—639. «Հայկական թարգմանութիւնն ըրած է յորս ամենեսին (այսինքն էջմիածնի 22 ձեռագիրներուն մէջ ըստ ցուցակին) թարգմանիչ կը կոչուի Սիմէոն Գառնեցի, եւ միւս այլ համանուն Երեւանցի վարդապետ մը՝ որ թարգմանչէն շատ ետքը յօրիներ է զլուծմունս գրոցն Պրոկղի... զի Գառնեցին Սիմէոն՝ իր թարգմանութեան բուն պատճառը՝ յայլոց ինչուան իր առեն ի հայ լեզու փոխուած չըլլալը կը դնէ... Սիմէոն ումն կրօնաւոր Գառնեցի»։ Հ. Յ. Տաշեան, Մատենադր. մանր Ուսումնասիրութիւնք, Ա., 28, ուշադիր ըրած էր, որ «բոլորովին ուրիշ անձ է Սիմէոն կրօնաւոր, որ յամի 1248 թարգմանած է գիրքն, եւ ուրիշ է դարձեալ Սիմէոն Գառնեցի եպիսկոպոս, որ յետոյ միայն «Լուծմունք» յօրինած է, եւ այն 1651ին»։ Ես պիտի աւելցնեմ, թէ ուրիշ է նոյնպէս Սիմէոն Երեւանցին, որ իր նախորդին Լուծմանց վրայ նոր Լուծմունք աւելցուցած է դար մը յետոյ։ Հ. Տաշեան, որ զիտցած է ճշդիւ զանազանել Սիմէոն կրօնաւորն եւ Սիմէոն եպիսկոպոսը, չէ անդրադարձած թէ Գառնւոյ այս Սիմէոն եպիսկոպոսը նոյն է համանուն Ջուղայեցւոյ հետ (տե՛ս Ցուցակ, էջ 1150ա եւ բ)։ Սիմէոն Ջուղայեցի, որ եղաւ Գառնւոյ եպիսկոպոս, ինքզինքը, որքան ինձ ծանօթ է, երբեք Գառնեցի չէ կոչած, այսպէս նաեւ իր ժամանակակիցները։ Որպէս զի այսուհետեւ այս երեք Սիմէոններու

*ելեալ գնաց յաշխարհն Յունաց»: Հասնելով Եւդոկիա, կը հիւանդանայ եւ կը վախճանի* 1657, *Փետրուար* 27*ին*[32]:

*Սիմէոն իմաստասէրի համբաւ փայլեց իր դարուն: Հեղինակեց* 1. *Քերականութիւն* (1637). 2. *Համաքումն Տրամաբանութեան* (1649). *Մեկնութիւն Շաղկապացն Պրոկղի* (1651) *եւ Լուծմունք Հոգեաց գրոց* (*որ թերի մնաց հեղինակին մահուամբ*):

*Զմեզ կը հետաքրքրէ հոս Պրոկղի Շաղկապաց Մեկնութիւնը: Այս աշխատասիրութեան մասին ինքնին հեղինակը կը հաղորդէ մեզի կարեւոր տեղեկութիւններս:*

*«Սիմէոնի Գառնեցւոյ եպիսկոպոսի արարեալ Մեկնութիւն գրոցն Պրոկղի:*

## Յառաջաբանութիւն:

*«Ի թարգմանչացն մերոց, Մովսիսի ասեմ եւ Դաւթի եւ ընկերաց նոցին, որք ատենական ուսմամբ էին կրթեալք, ոչ ունիմք զՊրոկղս թարգմանեալ կամ մեկնեալ. գուցէ թէ թարգմանեալ իցեն, այլ յանհոգութենէ ազգիս եւ յանուսումնութենէ՝ սպառեալ է յազգէս մերմէ. կամ գուցէ թէ թարգմանիչքն տեսանելով, զի ի Պորփիւրէ եւ ի*

---

*անձնաւորութիւնները ճշդիւ զանազանուին, կ՚առաջարկեմ առաջինն կոչել Սիմէոն Պղնձահանեցի, երկրորդը՝ Ջուղայեցի եւ երրորդը՝ Երեւանցի, որ եւ յետոյ նաեւ կաթողիկոսացաւ: Ոմանք «Գառնեցւոյ» համարեցան կարդալ «Կարնոյ»: Այս մասին յետոյ:*

[32] *Առաքել Դաւրիժեցի, էջ* 405—407:

Ստորագրութեանցն նաեւ ի յանձին գրոցն Արիստոտելի կարելի է ուսանել որ ինչ ի գիրս յայսմիկ գոյ, ոչ թարգմանեցին զայս. զի զնոյն բան կրկնէ եւ երեքկնէ եւ չորեքկնէ եւ եւս բազմակնէ, որ յաճախութիւն իմն երեւի: Բայց օգտութիւն բազում ունի յաւելեալ ի Պորփիւր եւ յայլս, զորս ոչ գտանեմք ի նոսա: Որոյ (յ)օգտութիւն հայեցեալ հարկեցայ առնել տեսողաց տեսանել զտեսութիւն սորա, օգնականութեամբ Հոգւոյն Աստուծոյ եւ օժանդակութեամբ աղօթից ձերոց:

Բայց յառաջագոյն ունի բնաբանն ընդ իւր Լուծմունս ի Յամելախօսէ յումեմնէ եպիսկոպոսէ եւ յայլմէ թարգմանեալ ընդ բնաբանին. այլ դժուարաւ մուծանէ զմեզ ի բնաբան անդր: Նաեւ ի թարգմանութենէն ունի խանգարումն իմացուածոց. զի ի Վրրաց լեզուէ է թարգմանեալ ի Հայ բարբառ ի Սիմոնէ քահանայէ յաշխատասիրէ յումեմնէ: Եւ ասացելոցս վկայ ունիմ զգիրս զայս. զոր ոչ է անհնար գտանել ձեզ հանդերձ հին Մեկնութեամբն. զի ի յետին ժամանակս է թարգմանութիւն սորա. եւ ըստ նիւթականին չինուածոյ՝ նոր: Նաեւ յոլովք բազմացուցին օրինակելով վասն անծանօթ անուանն: Յորոց ստիպեալ ձեռնամուխ եղէ ի սա ըստ կարի մերում, բացայայտել խնդրողացն զզօրութիւն սորա. որոյ մակագրութիւնն է այս. Պրոկղի Դիադոխոսի պղատոնական Իմաստասիրի չաղկապք աստուածաբանականք. հատորք ՄԺԱ»:

*Մեկնութեանս վերջը զետեղած է Յիշատակարանս·*

*«Եղեւ Լուծմունքս բանիցն Պրոկղի պղատոնական իմաստասիրի ի հազարերորդի եւ ի հարիւրորդի Թուականութեանս Հայոց* (1651), *ի Նուաստ Սիմէոնէ Գառնեւոյ եպիսկոպոսէ· որ աղաչեմ զհանդիպողսդ ներել ինձ ի ձեռնամխութիւն բանիցս այսցիկ, զի գուցէ ոք հանդիպող, որում Աստուած եւս պարզագոյն տեսութիւն շնորհիցէ· բայց առ այն շնորհ ունիցի շնորհաց պարգեւողին Աստուծոյ· որում անբաւ փառք ընդ անբաւութեան իւրում· ամէն»:*

*Առաքել Դաւրիժեցի (էջ* 406) *այսպէս կը գնահատէ Սիմէոն Ջուղայեցւոյ այս աշխատանքը· «Այլ եւ զԳիրքն Պրոկղի Իմաստասիրի, զոր ի Վրաց լեզուէն թարգմանեալ էր ի մեր լեզուս այլ ոմն նախագոյն եղեալ Սիմէոն անուամբ քահանայ, եւ այս Սիմէոն վարդապետս զնոյն գիրքն եւս ուղղեաց: Վասն զի առաջին թարգմանութիւնն աշխատութիւնս բազումս տայր կարդացողին, զի հոլովք անուանցն եւ խոնարհմունք բայիցն եւ շարադրութիւնք բանիցն ոչ էր ըստ պատշաճին եւ ըստ քերական արհեստին· յաղագս որոյ եւ միտք բանին ընդ նմին այլայլիր· այլ եւ յոլով տեղիս կրկնաբանութիւնք կային միոյ բանի եւ ընթերցողն բազում աշխատութիւնս կրէր եւ օգուտ սակաւ գտանէր: Իսկ սա ըստ քերական արհեստին զամենայն ուղղեալ յարդարեաց, որ դիւրաւ իմանի*

կարդացողին եւ բազում օգտութիւն շնորհէ մտաց մարդոյ»:

Սիմէոն իր առաջադիր օրինակը, թէ Բնագիրն եւ թէ Մեկնութիւնը, բառ խմաստին ուղղած է, ոչ միայն քերականօրէն, տեղ տեղ ընդլայնելով, տեղ տեղ համառօտելով: Սկզբնագրէն այս խառնուրդները կատարուած են միմիայն բովանդակութիւնը հայ ընթերցողներուն մերձենալի ընելու համար, առանց պատասխանատու դնելու ինքզինքը հանդէպ Բնագրին հաւատարմութեան: Բարեբախտաբար ունինք բնագիրը, թէպէտ ինքն իր մէջ շատ տեղ անհասկնալի. բայց միշտ հաւատարիմ՝ միջնորդութեամբ վրացերէնին՝ յոյն բնագրին: Սիմէոն Ջուղայեցւոյ այս գործը նկատելու է յարատութիւն մը Պրոկղի գործին եւ անոր Մեկնութեան: Երկու հատուած համեմատութեան դրած է Կոնիբիր, զոր հրատարակած է Հ. Յ. Տաշեան[33]:

Այն ստոյգ է, որ Սիմէոնի այս աշխատութիւնը խանդավառութեամբ ողջունուած է ժամանակակիցներէն: Բազմացուած է ան բազմաթիւ օրինակներով. ինչ որ ապացոյց է, թէ գործածուած է այն իբրեւ դասագիրք, դեռ ԺԷ. դարու ընթացքին իսկ:

Կը յիշեմ այս տեղ ինձ ծանօթ ձեռագիրները, որոնք պիտի հաստատեն վերյիշեալ տողերս:

---

33 Մատենագր. մանր Ուս., Ա., էջ 156—161:

էջմիածին, Թ. 96, 174ա (պակասաւոր)։ 874 (1764է)։ 932 (1732է)։ 1157, 84ա (1709է)։ 1702։ 1704։ 1705։ 1706։ 1707։ 1709 (1751)։ 1710 (1741)։ 1822 (1768)։ 1823 (1731)։ 1827 (1772)։ 1828։ 1829։ 1830 (1720)։ 1833 (1763)։ 2550, 251ա (1746)։ Էջմ. Գէորգ. ցուց. 68։ 69։ 738 (1668)։ 741 (1657)։ Երեւան, Պետ. Թանգ. 838 (1750)։ Լազարեան ճեմ. 151։ Երուսաղէմ Թ. 407 (1735)։ 549։ 618։ 769 (1768)։ 927։ 1169։ 1334 (1749)։ 1383։ Վիեննա, 372 (1748)։ 649։ 655։ Սեբաստիա, Ս. Նշան, 123։ 165։ 167։ Զմմառ, 273։ Անտ. 117։

Սիմէոն Զուղայեցւոյ այս Մեկնութիւնը նոր Լուծմունքներով ճոխացուց 1750ին Սիմէոն Երեւանցի, յետոյ Կաթողիկոս (1763—1780). ինչպէս իր կենսագիրը՝ Եփրեմ վարդապետ (յետոյ Կաթողիկոս) կը գրէ. «յաւել եւ Լուծմունս ի գիրս Պրոկղի իմաստնոյն՝ ի վերայ Լուծմանն Սիմէոնի վարդապետին Զուղայեցւոյ, յատկացուցեալ խաչաձեւ նշանիւք գիրն[34]»։

Իսկ ինքն Սիմէոն Երեւանցի ինքնագիր աւելի մանրամասնօրէն կը պատմէ աշխատասիրութեան հանգամանքը (Թուղթ Թ. 58, էջ 285—287) «Բան առ ընթերցողդ» վերջաբանին մէջ այսպէս.

«Գիտասջիք եւ զայս վերջապէս, սիրելիքդ իմ ուսումնասէր եղբարք, զի այս գրոցս

[34] Արարատ, 1875, էջ 335։

*Պրոկղի՝ յետ ժամանակաց՝ Յամելախոս կոչեցեալ եպիսկոպոս ոմն՝ արարեալ էր զԼուծմունս նախապէս: Եւ յետոյ ի Թուականութեանս Հայոց հազարերորդի՝ ուսումնասէր քահանայ ոմն Սիմէոն անուն թարգմանեալ է զսա հանդերձ Լուծմամբն Յամելախոսին ի Վրաց լեզուէ ի հայ լեզու: Իսկ ի ՌՃերորդ Թուոջն մերում Ջուղայեցի Սիմէոն գերիմաստ վարդապետն՝ որ էր եպիսկոպոս Գառնւոյ՝ վերստին արար սմա զՆոր Լուծմունս պարզ ոճով. որք ի նաւարտս իւրաքանչիւրոց Պրակաց բնաբանիցն եդեալք կան: Նաեւ սոյնոյ վարդապետիս է արարեալ զՔերականութիւն եւ զՏրամաբանութիւն ըստ լեզուիս Հայոց. նաեւ զայն որոյ յըսկզբանն ասէ. «Եւ բառքն ասելիք՝ են այսոքիկ». Թերեւս եւ զայլս բանս: Բայց այս Վարդապետս ըստ շնորհաբուղխ մտաց իւրոց՝ ի մեկնելն զգիրս զայս, յուրեք յուրեք ոչ է այնքան հոգ տարեալ զբառից եւ զբանից ըստ շարադրութեանն. զորս իբր զխուրխմաց զոլ վարկելով՝ զանց էր արարեալ: Այլ եւ ի յոլով տեղիս բազում սխալմունք եւ աղճատմունք եւս էին ներմուծեալք ի գիրս յայս ի յանհմուտ գրչաց եւ յօրինակաց՝ վասն խրթնամիտ շարադրութեանն. յորոյ պատճառէ՝ որքան առ յայս գիրս, յառաջանային անտեղեկութիւնք եւ կորուստ մտաց բանիցն: Վասն որոյ ես յետինս ի բանասիրաց՝ Սիմէոն վարդապետս, յերկրէն Այրարատու, ի քաղաքէն Երեւանու եւ միաբան սրբոյն*

էջմիածնի ընդհանրականի Աթոռոյն, գոլով իբր սիրահարեցեալ ի գրոյս յայսմանէ, ի թուականութեանս մերում ՌՃՂԹ. ժողովեցի առ իս զբազում օրինակս գրեցեալս ի հնոց. եւ գրեցի զայս գիրքս իմով ձեռնագրով. որ թէպէտ անսխալ միայն Աստուած է, նաեւ գիրս իմ յոյժ տգեղատես, սակայն յամենայնի ջանի, կարի ուշադրութեամբ եւ մտաւորութեամբ գրեցի: Նաեւ զամանս բանս զանց եղեալսն ի Սիմէօն վարդապետէն՝ լուծեցի բառ կարեաց իմոց եւ եդի յաւարտան Սիմէօն վարդապետի Լուծմանցն նիւրաքանչիւր պրակին. եւ ի լուսանցսն հանդէպ իմոց բանից սկզբանց՝ գծագրեցի զխաչանշան գիծս, որովք որոշեսցին բանք՝ իմ եւ Սիմէօն վարդապետին: Ուրեմն ի դնիլն թուոց հանդէպ բնաբանիցն, եւ ԼՈՒԾ՝ հանդէպ Լուծմանց Սիմէօն հեղինակին իմոյ, դնի եւ խաչ հանդէպ իմոց բանից: Վասն որոյ՝ աղաչեմ զձեզ՝ որք հանդիպեալք այսմ՝ հաւանիցիք, եւ օրինակել կամիցիք, գրեցէք եւ զիմ բանս նիւրաքանչիւրն տեղւոջ, եւ նոյնով խաչանիշ գծիւն որոշեցէք, որովք յատկացին իւրաքանչիւրքն. եւ զիս հանդերձ իմայնօքն յիշեսջիք ի յաղօթս ձեր տալով զփառս տեառն ամենայն շնորհաց: Իսկ եթէ ոչ հաւանիցիք իմոցն բանից, մի՛ գրիցէք. սակայն մի՛ մեղադրեցէք զմեզ իբր դատաւոր լինելով ի վերայ այլոց. զի մի է տէր եւ դատաւոր ամենայնի. որում փառք յաւիտեանս. ամէն: Վերջ»: (Հ. Աճառեան,

Ցուցակ հայ. ձեռագրաց Թաւրիզի, Մաս Զ. Մասնաւորաց, Թ. 58, էջ 124—125)։ Աճառեան ձեռագիրս Սիմէոն Երեւանցւոյ ինքնագիրը կը համարի։

Այս խումբէն են էջմ. Թ. 1703։ 1708 (1771)։ 1824 (1769)։ 1826 եւ Երուսաղէմի Թ. 1226։

## ՊՐՈԿՂԻ ՇԱՂԿԱՊՔԸ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԵԱՆ ԱՌՋԵՒ

Պրոկղի այս գործի վրայ առաջին անգամ խօսած է Quadro delle opere di vari autori anticamente tradotti in armeno գրուածքին հեղինակը[35] հետեւեալ տողերով. «Գիրք Պրոկղի Դիադոխոսի...։ Հայերէն թարգմանութիւնը կատարուած է Սիմէոն հայ վարդապետէ մը վրացերէն թարգմանութեան վրայէն։ Այս, ԺԷ. դարու սկիզբը ճոխացուած է ան այլ եւ այլ մեկնութիւններով Գանձեցի կոչուած միւս Սիմէոնէ»։

Աւելի բացայայտ արտայայտուած են Նոր Հայկազնեան Բառագիրքի հեղինակները[36]. «Շաղկապք աստուածաբանականք՝ պիտակ կոչմամբ անուանեալ՝ գործ Պրոկղի իմաստասիրի Դիադոխոսի, թարգմանեալ ի ձեռն Սիմէոնի քահանայի վրացւոյ, եւ մեկնեալ յաւելուածով իւիք ի Սիմէոնէ եպիս-

---

[35] Վենետիկ 1825, էջ 38։

[36] Վենետիկ 1836, հատոր Ա, Նախադուռն, էջ 18բ։

կոչուած Գառնոյ կամ Կարնոյ[37], անպէտ ոճով եւ չափազանց բանիւք. յորմէ երկու կամ երեք բառս եւեթ պէտք եղեն քաղել»: Ճշդագոյնս գրած է J. G. Wenrich[38]: In linguam Armenicam *Procli institutio theologica* a Simeone, seculi decimi tertii scriptore, translata fuit; que tamen translatio non ex archetypo Graeco, verum ex interpretatione Georgiana profluxisse traditur. Աւելի ընդարձակ խօսեցաւ Հ. Գ. Զարբհանալեան[39]. իսկ առանձին քննութեան նիւթ ըրաւ զայն Հ. Յ. Տաշեան[40]: Ուրիշ քննութիւններ յիշուեցան, վերագոյն[41]:

8. Սիմէոն Ջուղայեցւոյ խմբագրած Պրոկղի Տաղկապք վրացերէնի թարգմանուած: Թէ ի՛նչ պարագաներու մէջ թարգմանուած է վերստին վրացերէնի՝ վրացերէնէ թարգմանուած Պրոկղի Տաղկապքը, գեղեցիկ բացատրած է Յովհաննէս Օրբէլի,

---

37 «Գառնոյ կամ Կարնոյ» արտայայտութիւնը ցոյց կու տայ, թէ ճշդիւ չեն կրցած ստուգել Սիմէոն եպիսկոպոսի անձնաւորութիւնը: Անճիշդ է նաեւ Սիմէոն քահանայն «վրացի» նկատել, որովհետեւ վրացերէն գիտցած է:

38 De auctorum graecorum versionibus et commentariis syriacis, arabicis, armeniacis, persicisque commentatio. Lipsiae 1842, էջ 289:

39 Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց: Վենետիկ 1889, էջ 666—669:

40 Պրոկղի Դիադոխոսի Տաղկապք աստուածաբանականք, Հանդէս Ամսօրեայ, 1892, էջ 97—101, 129—133 = Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք, Ա., Վիեննա 1895, էջ 23—48:

41 Հմմտ. ծան. 18 (Ն. Մառի), 23 (Հ. Տաշեանի), տես նաեւ ծան. 43 (Հ. Բ. Սարգիսեանի):

Վախտանգ թագաւորի թոռնորդին, այն յիշատակարանի մէջ, որ կցած է թարգմանութեանս: Յիշատակարանս հրատարակած է Թ. Ժորդանիա[42]: Ասկէ հայերէն թարգմանութիւն մ'ուղարկուած է Տփղիսէն Հ. Բ. Սարգիսեանի, որ զետեղած է զայն իր Պրոկղի նուիրած ուսումնասիրութեան մէջ[43]: Յառաջ կը բերեմ յիշատակարանս քաղուածաբար, օգտուելով հայերէն թարգմանութենէն: «Աստղաբաշխութիւնը ուսած էի, կը գրէ Յ. Օրբելի, առ ոտս Վախտանգ թագաւորի. ուզեցի հմտանալ նաեւ Պրոկղի աստուածաբանական Շաղկապաց. բայց առ այս հարկաւոր էր ունենալ իմաստասիրութեան քաջավարժ ուսուցիչ մը. թէպէտ ունէի այդ գիրքը Յովհաննէս Պետրիծէի վրացերէն թարգմանութեամբ, բայց անոր խրթնութիւնը կարծես սեւաթոյր վարագոյրով կը ծածկէր Իմաստասէրին իմաստից ճառագայթները: Այս ժամանակ մայրաքաղաքս ժամանեց Աւետիք եպիսկոպոսը, ծագումով Նախիջեւանի Ջահուկ գիւղաքաղաքէն, կարգուած Հայոց Կաթողիկոսէն Տփղիսի եւ Վրաստանի առաջնորդ: Ան վարժ էր

---

42 Նկարագրութիւն Վրաստանի հոգեւոր Վարչութեան Եկեղեցական Թանգարանի ձեռագիրներու եւ հին տպագիր գրքերու, Ա., էջ 253—256: Հմմտ. Մառ, անդ, էջ 62:

43 Հ. Բ. Սարգիսեան, Պրոկղ իմաստասիրի Աստուածաբանական Շաղկապաց հայկական թարգմանութեան խնդիրն եւ Մատենադարանիս Թ. 1123 գրչագրի գաղտնիքը: Բազմավէպ, 1894, էջ 122—130, 310—328: Յիշատակարանս, էջ 315—316:

պղատոնական ուսմանց․ եւ անուանի էր իր իմաստասիրական եւ աստուածաբանական հմտութեամբ իմաստասէրներու կաճառին մէջ: Անոր նման գիտուն տեսնուած չէր ոչ Վրացիներու եւ ոչ ուրիշ ազգերու մէջ: Ուրախութեամբ դիմեցի անոր եւ խնդրեցի աշակերտիլ իրեն: Ինձի ընկերացան նաեւ Փիլիպպոս Ազնաւուրեան եւ Կախեթի դրան երէցն Նիկողոս, որ մանկութենէ աշակերտած էր Գէորգ Նաթլիսձէի եւ հմուտ էր հայերէն լեզուի եւ գրութեան: Հազիւ սկսած էինք աշխատանքի, երբ անդրադարձանք, որ հայերէն Ծաղկապքը նոյն չէ մեր ձեռքը եղած վրացերէնին հետ: Եւ երբ գլուխ առ գլուխ, բան առ բան բաղդատեցինք հայերէնը վրացերէնին հետ, տեսանք որ երկու թարգմանութիւնները տեղ տեղ աննման են իրարու եւ տեղ տեղ նման․ շատ տեղ ամբողջ գլուխներ իսկ կը պակսին: Այս խռովութեան առջեւ անկարելի էր այլ եւս վրացերէնի վրայ յեցած հետեւիլ մեր առաջնորդին, որ անտեղեակ էր վրացերէնի: Հարկ էր վրացերէնը միանգամ հայերէնի թարգմանել: Բայց մենք անկարող էինք այս ձեռնարկութեան: Սկսանք տարուբերիլ վարանքի մէջ եւ հարցնել իրարու, թէ ի՞նչ է այս անհամաձայնութիւններու պատճառը․ վասն զի հայերէնին մէջ գրուած է, թէ վրացերէն լեզուէ թարգմանեցի հայերէնի, որովհետեւ Պրոկղի այս գիրքը հայերէն թարգմանուած չէր: Ի վերջոյ առաջնորդու-

թեամբ Փիլիպպոս քահանայի, որ վրացերէն լեզուին քաջ տեղեակ էր եւ ուրիշ գրքեր ալ թարգմանած էր մեր լեզուին, սկսանք վերստին թարգմանել հայերէնը վրացերէնի. շատ անգամ ես իմ ձեռքովս կը գրէի եւ երբեմն ալ Նիկողայոս քահանան, մինչեւ որ աւարտելով պայն իմ ազգատոհմիս, որ Սպանթ կը կոչուի, յիշատակ թողուցի»: Թարգմանութիւնը կատարուած է 11 յունուար 1757: Նոյն տարին, մարտ 9ին Տփղիսի Ս. Սիոն եկեղեցւոյ քահանան Իսահակ Կանդելեւեթիս–ձէ նոր օրինակ մը կը հանէ այս թարգմանութենէն Յովհ. Օրբելիանիի խնդրանքով: Ձեռագիրներ ծանօթ են. Տփղիսի Վրաց մէջ գրագիտութիւն տարածելու Ընկերութեան Մատենադարանի Թ. 192 եւ 1592. Վրաց Եկեղեցական Թանգարանի Թ. 184 եւ 237. Ասիական Թանգարանի Թ. 174ա: Օրինակ մ՚ալ ունեցած է Ն. Մառ (էջ 61—62):

Հայ գրականութեան անծանօթ է Աւետիք եպիսկոպոս իբրեւ իմաստասէր: Նոյնպէս չի յիշուիր Փիլիպպոս քահանայ Այնաւուրեան, որ թարգմանութիւններ կատարած է, կ՚ըսուի, հայերէնէ վրացերէն:

Զարմանալի է, որ Յ. Օրբելեանի, որ աչքի առաջ ունեցած է Սիմէոն Ջուղայեցւոյ Յառաջաբանն եւ վերջաբանը, չէ անդրադարձած, թէ տարբեր անձ է թարգմանիչն Սիմէոն կրօնաւոր Պղնձահանեցի եւ տար–

*թեր մեկնող–խմբագրողն Սիմէոն, Գառնույ եպիսկոպոսը։*

9. Ի Գրոց Պատճառաց Արիստոտէլի *կամ ոմանց Թուփ Պրոկղի։ Սուտ–արիստոտելեան գրուածք մը, որ Միջին–դարու փիլիսոփայութեան պատմութեան մէջ ոչ աննշանակ դեր կատարած է։ Լատիներէն այն բնագիրը, զոր կը կիրարկէին Սքոլաստիկները, արաբերէնէ թարգմանութիւն մըն էր, կատարուած* 1167—1187 *տարիներուն ի Տոլեդոյ, ի ձեռն Գերհարդ Կրեմոնացի քահանային։ Գրուածքս թարգմանուած է նաեւ եբրայեցերէնի, եւ այն չորս անգամ, մասամբ արաբ բնագրէ եւ մասամբ լատին թարգմանութենէ։ Արաբերէնը ասորի կամ յոյն բնագրէ թարգմանութիւն չէ հաւանօրէն, այլ ինքնագիր· խմբագրուած կ'երեւայ Թ. դարուն։ Բովանդակութեամբ քաղուածք մըն է ան Պրոկղի կամ անոր մէկ աշակերտի «Նախակրթութիւնք աստուածաբանականք» գրութենէն։ Բաժնուած է* 31 *հատուածներու, որոնցմէ իւրաքանչիւրը կազմուած է Առարկութենէ մը եւ Մեկնութենէ։ Արաբ բնագիրը խորագիր կրած է «Գիրք վիճմանց Արիստոտէլի ի վերայ զուտ բարւոյ* Kitāb Hair al-mahḍ [44])*. լատին թարգմանութեան վերտառութիւնը*

---

[44] *Հմմտ.* C. Brockelmann, Geschichte der arabischen Literatur. I. Supplementband, Leiden 1937, *էջ* 373։

Liber de causis ուշ ժամանակէ է[45], առնուած բովանդակութենէն եւ առաջին անգամ յիշուած Աղեքսանդր Հալէսի († 1245) քով: Թէպէտ արաբական գրականութեան հազիւ թէ ծանօթ, բայց Միջին-դարու քրիստոնէական փիլիսոփայութեան եւ աստուածաբանութեան մէջ հեղինակութիւն վայելած է: Յաճախակի յեղյեղուած է մանաւորապէս Սքոլաստիկի ծաղկման շրջանին եւ արժանացած քանիցս լայնօրէն եւ մանրաքնին մեկնաբանութեան: Բայց եւ այնպէս այս գնահատանքը յորդորած է աւելի գրուածքիս խորիմաստ արտացոլող առածները իբրեւ լոկ զարդարանք կիրարկելու, քան թէ բովանդակապէս Սքոլաստիկի վրայ ազդեցութիւն գործելու: Այս գրուածքը, որ ընդունելութեան արժանացած էր Արեւմուտք, Ստեփանոս Լեհացի կարեւոր տեսած է թարգմանելու հայերէնի: Հաւանօրէն առ այս դրդապատճառ եղած է Սիմէոն Ջուղայեցւոյ «Մեկնութիւնք», որ իբրեւ դասագիրք սկսած էր գործածուիլ հայ դպրոցներու մէջ: Անոր ինչ ինչ մթառութիւնք լուսաբանելու համար ձեռնարկած ըլլալու է Ստեփանոս այս գոր-

---

[45] Հմմտ. D. B. Haneberg, Über die neuplatonische Schrift von den Ursachen, München, Akad. Sitzungsberichte, 1868, I, S. 361. Նոր հրատարակութիւն մը հոգաց, հանդերձ քննութեամբ O. Bardenhewer, Die pseudo-aristotelische Schrift „Über das reine Gute“, bekannt unter dem Namen Liber de Causis, Freiburg 1882. Հմմտ. նաեւ նոյն՝ Wetzer und Welte's Kirchenlexikon, Bd. II$^{2}$ (Freiburg 1888) Sp. 2077.

ծին, թէեւ այս մասին որ եւ է ակնարկութիւն չէ բրած իր Թարգմանութեան Յիշատակարանին մէջ:

Ստեփանոս իր թարգմանութեան մէջ այս Պատճառաց գրքի Ա—ԼԲ «Առարկութիւններու» քով մատնանիշ բրած է նաեւ անոնց համապատասխան տեղիքները Պրոկղի Շաղկապաց մէջ, ի դիւրութիւն անոնց որոնք կ'ուսումնասիրեն այդ Շաղկապքը[46]: Թարգմանութեանս խորագիրն, սկզբնաւորութիւնն եւ վերջաւորութիւնն է.

«Ի Գրոց Պատճառաց Արիստոտէլի կամ ամանց Թուլի Պրոկղի: — Ամենայն պատճառ է նախկին յաւէտահեղ յիւր պատճառելին...»: Վ. «Սակայն միոն նախկին ճշմարիտ է անեղծօղ միութեանց, առնող առանալոյ դոչ առացեալն որպէս ցուցաք: — Դուղնաքեայ բանս թարքմանեցաւ ի Լատինացւոց բարբառոյ ի Հայոց լեզու եւ ի բարբառ, ի ձեռն ուրումն Լեհացի Ստեփաննոս կրօնաւորի, որ զԴիոնէսիոսն եւս կրկին

46 Պատճառաց Գրոց եւ Շաղկապաց համաձայնութիւնք·

Ա. 71
Բ. 88
Գ. 131. 201
Դ. 87 98 99
Ե. 27 112 130
Զ. 9 123
Է 86
Ը 176
Թ. 8
Ժ 56
ԺԱ. 196
ԺԲ. 197
ԺԳ. 168. 30
ԺԴ. 195
ԺԵ. 168. 34 83
ԺԶ. 82
ԺԷ. 94
ԺԸ 123
ԺԹ 130
Ի 8
ԻԱ 13
ԻԲ 14
ԻԳ. 137
ԻԴ 64
ԻԵ. 29
ԻԶ. 44
ԻԷ. 46
ԻԸ. 65
ԻԹ 65
Լ. 54 55
ԼԱ 106 55
ԼԲ. 145—166

թարգմանեաց. ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ. ամէն: Առարկութիւնքս Պրոկղի եւ Պիհրոնի նոտրեցաւ մատամբ Ստեփաննոսի Լեհացւոյ: Վերջ»:

Այսպէս Վիեննայի Մխիթ. Մատենադարանի Թ. 649, որ կը բովանդակէ, նոյն գրչէն. 1. Թղ. 5ա—162բ. Սիմէօնի Գառնւոյ եպիսկոպոսի արարեալ Մեկնութիւն Գրոցն Պրոկղի: 2. Թղ. 163ա—187բ. Ի Գրոց Պատճառաց: 3. Թղ. 188ա—190. Աստուածաբանութիւն Իմաստասիրաց: 4. Թղ. 197ա—222բ. Թուղթք երանելւոյ Իգնատիոսի եպիսկոպոսին Անտիոքայ:

Ձեռագիրք. Վիեննա, Թ. 64), 163ա—186բ (ինքնագիր): Էջմիածին. Թ. 110, 348ա (1661): 119, 65ա (1744): 126, 136ա: 873, 224ա (1792): 932, 51ա (1732): 1012, 260ա (1715): 1687, 246ա: 1765, 126ա (1738): 1831, 213ա (1720): 2050, 242ա: 2051, 38ա: Երուսաղէմ, Թ. 679: 713 (1735): 1540:

Հրատարակութիւն. «Գրգուկ որ կոչի Պատճառաց, որ մասն ինչ ի Գրոց պատճառացն Արիստոտէլի. կամ որպէս ոմանք կարծեն Պրոկղի իմաստասիրի: Կ. Պոլիս 1750, էջք 78:

Ստեփաննոս Լեհացի իր թարգմանութեան Յիշատակարանին մէջ չէ նշանակած թարգմանութեան տարին: Գ. Տէր-Մկրտչեան համարած է թարգմանուած 1660—

1662 տարիներու մէջ[46]: Ստոյգն է 1660, ինչպէս կը տեղեկանանք Էջմ. Թ. 110 ձեռագրին Յիշատակարանէն: Ձեռագիրս կը պարունակէ 1. Դիոնեսիոս Արիսպագացւոյ գրութիւնք. 2. «Ի գրոց պատճառաց». 3. Բանք Իմաստասիրականք. Երեքն ալ Ստ. Լեհացւոյ թարգմանութեամբ: Այս Յիշատակարանը, որ քաղուածաբար արտագրած էի 1925ին, կարեւոր կը համարիմ ներկայացնել այս տեղ իր պատմական բովանդակութեան համար:

Փառք...: Արդ ես նուաստ եւ չնչին հեքս... ի մահ ընկլուղեցաւ անձն իմ ի յառաւել փափագմանէ առ ի ստանալ զսա յիշատակ ինձ, զի չէր հնար զանձին ումեք վաճառել, վասն զի նորաթարգման էր եւ անգաղափար բաց ի մուսաւարտայէն. եւ բնաւ թէ ծեթիկ եւ խծծարոյժ այլայլական տառիւք գծեալ, վասն այսր պատճառի եւ իսկ թէ քաջ քարտուղարքն ոչ զօրէին մինչ միոյ տառի յարտահանութեան: Ապա եւ զկնի ես ամենամեղ չ″ր Ներսէս ծառայ ձեր եւ աշակերտ սրբոյ թարգմանչի, քաջ հեռետորի եւ անյաղթ փիլիսոփայի եւ թելագրողի հրահանգիս Ստեփաննոսի Իլովացւոյ եւ բանիբուն վարդապետի, մատեայ առ Տէր իմ Յիսուս Քրիստոս ...ոչ անտես արար զհայցուածս իմ, այլ զի ըստ իւրով անճառ իմաստութեամբն շնորհեաց ինձ կար մինչեւ

46 Հմմտ. Հ. Ն. Ակինեան, Ստեփաննոս Վ. Լեհացի, Հանդ. Ամս., 1912, էջ 150:

յեղր ժամանեցուցանել· բայց թէ սուրբ ար-
դեօք տաժանմամբն եւ դուն գործ(ել)ով
եւեթ վերծանանելի է գլուութիւնն քան թէ մի-
պասանելի· վասն զի անչափ է եւ անկշռելի·
այլ թէ տալի է փառատրութիւն... տուչին
այժմ շնորհի, զոր սատարութեամբ նմին
յաւարտ ածի այս ճաճանչանաւուխ եւ հրա-
շացուցիչ մատեանս: Ի թուահաշուութեան
արամեան սեռի Ոձերորդի եւ ԺԱերորդի·
ի հայրապետութեան երից երանելոյ տեառն
Յակոբայ ամենայն Հայոց կաթողիկոսի եւ ի
յաջորդութեան տեառն Միքայէլի աստուա-
ծարան եւ տիեզերահռչակ քաջ վարդա-
պետի. եւ ի թագաւորութեան Պարսից Շա-
հարաս երկրորդի. եւ ի յոտն Մասեայ Վա-
ղարշապատու քաղաքի ի յԱրարատ գաւառի,
ընդ հովանեաւ սրբոյ մեծի Աթոռոյս էջ-
միածնի, առ ի վայելս մանկանց Սիոնի
եւ տինա թէ զկնի հետեւելոց իմոց, զոր հոր-
դահոսան քրտամբք ծրեցի ի փառս Քրիս-
տոսի: Արդ... ես... Ներսէս... սարկա-
ւագ... (աղաչեմ զի) յիշեսջիք... յաղօթս
ձեր նախկին, միահաղոյն գումարեալ զեղ-
բարս ի խորանս այս Միածնի էջման տեղիս,
մինչ զի քանակով երկերիւր եւ այլ յա-
ւէժս. առ ի հրահանդութիւն եւ ի մաքրու-
թիւն անձանց. զոր Տէր Աստուած հաստա-
տուն եւ անշարժ պահեսցէ յար...: Եւ եր-
կրորդ զուսուցիչն իմ եւ զվարժիչն զՍտե-
փաննոս Իլովացի քաջ հեռետորն եւ թարգ-

4*

մանիչ բարունին, որ էր այր լի շնորհօք եւ հանճարով եւ սրբեալ Հոգւով սրբով. զի հանապազ ըստ աստուածատուր պարգեւօքն զամենայն եղբարս կատարելագործէր փիլիսոփայական կրթութեամբ. եւ թէպէտ հուսկ յետին զիս: Վասն որոյ հայցեմք ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ մերմէ, զի յորժամ նստցի յաթոռ փառաց, հատուցէ զվարձս սորին միոյն հազարապատիկ եւ բիւր եւս բիւրապատիկ: Եւ զյիշատակ իւր անխրամատելի պահեսցէ յաւիտեանս. ամէն:

Եւ երրորդ զորբանեալ քահանայապետն իմ զտէր Միքայէլ վարդապետն, ...(որ) արժանի արար զիս բաշխելոյ մարմնոյ եւ արեան Փրկչին...: Այլ եւ զուսուցանող զրոյս զԴաւիթ վարդապետն վարձատրեսցէ...: Այլ եւ տարորոշեալս ի սոցունց զգրքապան եւ զծրօղ մատենիս զներսէս յիշել մաղթեմ ընդ սոցին: Այլ եւ զհոգեւոր հայրն իմ զխօճայ Պուտաղն եւ զորդիս իւր զպարոն Սաֆրաղն եւ զՅոհանն եւ զՄիրզաղուլին...:

Եւ եւս դարձեալ աղաչեմ զձեզ... զի զոր ինչ գրեալ կայ ի սմին, ի սրբոյն Թարգմանէ է գրեալ. եւ զոր ինչ եղծեալ, նոյն գունակ. վասն զի ի նախակերտ գաղափարէն գծեցաւ եւ տպեցաւ. եւ տինա թէ ձեռամբ նորին սրբագրեցաւ. եւ եւս թէ սո-

*վիմք իսկ ընթեռացոյց զիս ի յուսմանս այս...»* (*Էջմ.* 110, *թղ.* 469*ա*—473*բ*):

10. Մեսրոպ Գանձակեցւոյ Համառօտ Մեկնութիւն Գրոցն որ կոչի Պատճառաց: *Պատճառաց գիրքը տպագրութեամբ լոյս տեսաւ* 1750*ին: Աստ ընթերցումը դիւրահաս ընելու համար յօրինեց Մ. Գանձակեցի այս Լուծմունքը, որ կը սկսի Յառաջաբանովս.*

Առ բարեմիտ ընթերցողդ: — *Յայտ լիցի ուսումնասիրացդ, զի ասէ մեծն Դաւիթ անյաղթ փիլիսոփայն ի Մեկնութեանն Պորփիւրի. Զ. գլ., թէ Պղատոնական տեսութիւնք դժուարք և խորինք. և յամենայն կարծիս հուպ անկեալք. և զի այսպէս գոյ, յայտ է զի ամենայն մեկնօղ ըստ իւրում կարծեաց ձևացուցանէ: Նոյնպէս և մեք ըստ կարողութեան մերոյ այսպէս ձևացուցաք զմեկնութիւն սորա առաջնորդութեամբ սուրբ և ուղղափառ վարդապետացն Հայոց: Վասն զի ի թուին Հայոց ՌՄ և երկուցն* (1753), *եւ տառապեալ Մեսրոպ անարժան քահանայս եւ կրօնաւոր եկի ի մեծ քաղաքն Կոստանդնուպօլիս. և տեսի գիրքս տպեալ. բայց յաղագս նրբութեան սորա և դժուարիմաց գոլոյն՝ սակաւ թէ ոք ստանայր զսա: Վասն որոյ ստիպեալ եղէ յեղբարց ոմանց ուսումնասիրաց դիւրացուցանել զտեսութիւն սորա ընթերցողաց: Սակս*

*որոյ երես անկեալ աղաչեմ զմաքրափայլ անձինդ, որք ընթերցմամբ ամէն պատահիք, ներել իմում անարժանութեան: ...*

Համառօտ Մեկնութիւն Գրոցն որ կոչի Պատճառաց. արարեալ ի տառապեալ Մեսրոպայ Գանձակեցւոյ Աղուանից:

*(Բն.) Ի գրոց Պատճառաց Արիստոտէլի կամ որպէս ոմանց Թուի Պրոկղի:*

*(Լծ.) Զգիրքս զայս Թարգմանեաց մեզ Իլովացի Ստեփաննոս վարդապետն ի դաշն սուրբ էջմիածին. ըստ ամին եւ զայլս, որ է Դիոնէսիոսն, Հոգեացն, Հայելի վարուցն են: Իսկ մահագիրն որ ասէ. «Ի գրոց պատճառացն», յայտ է թէ սա մասն է Պատճառաց գրոցն եւ ոչ բոլորն. զոր չէ Թարգմանեալ ի լեզուս մեր: Զի որ ասէ. «Արիստոտելի եւ կամ որպէս ոմանց Թուի՝ Պրոկղի». բայց շարադրութիւն սորա յայտնէ Պրոկղի յարմար երեւի, քան Թէ Արիստոտելի: Եւ զի որպէս յայտ է ի շարադրութեանցն Արիստոտելի, որ այժմ առ մեզ գտանի. քանզի Արիստոտէլ զանհատսն կոչէ նախկին գոյացութիւն. եւ գովաբանէ զնոսա իսկագոյն եւ տիրագոյն գոյացութիւն ասելովն: Այլ զի սա ըստ Պղատոնականացն զընդհանուրսն նախադասէ մասնաւորաց եւ պատճառս անուանէ. իսկ զանհատսն փոփոխական կոչէ անկեալ ընդ ժամանակաւ լինելութեամբ եւ ապականութեամբ... եւ յէակէն սկսեալ մինչեւ յանհատսն կատարէ զբանս վարդապետութեան իւրոյ:*

*Առարկութիւն Ա. «Ամենայն պատճառ նախկին է յաւետահեղ...»: Արդ յորժամ պատճառ երկրորդ ընդհանուր ի բաց բառնայ զիւրն զօրութիւն յիւրէ իմեքէ...: (Վ.) այլ է բնութեամբ նմա, որպէս ցուցաք փոքր ի շատէ»:*

*Ձեռագիրք. Վիեննա, Մխիթ. Թ.* 483, 227*բ*—264*բ* (*Ցուց., էջ* 958): *Էջմ. Թ.* 1933, 9*ա*—59*ա*: 2521:

ՅԱՒԵԼՈՒԱԾ

*Պրոկղի Շաղկապաց հայերէն թարգմանութեան մասին նոր ուսումնասիրութիւն մը՝ ակաւ հայերէնագէտ* Almo Zanolli, Sugli Elementi teologici di Proclo Diadoco nelle versioni e nei commentari di Simeone ieromonaco e di Simeone vescovo di Garni. *Բազմավէպ* (1947), 158—168: *Շարունակութիւնը չերեւցաւ, գոնէ մինչեւ* 1 *ապրիլ* 1949:

## Բ. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԴԱՄԱՍԿԱՑԻ ԵՒ ԻՐ ԳՐՈՒԱԾՔՆԵՐՈՒ ՀԱՅԵՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆԸ

1. Յովհ. Դամասկացւոյ կենսագրութեան համար *շատ աղքատ են մեր տեղեկութիւնները ժամանակակից աղբիւրներէ: Այն Վարքը, զոր հիւսած է Միքայէլ կրօնաւոր 1085ին արաբերէն լեզուով*[1], *աւելի հոգեշահ գրուածք մըն է, քան պատմական յիշատակարան: Յովհաննէս ծնած է հաւանօրէն Դամասկոս, Է. դարու վերջերը, Մանսուր յորջորջուած քրիստոնեայ ընտանիքէ: Հայրը պետական ծառայութեան մէջ եղած է իբրեւ հարկահաւաք Ասորիքի: Այս պաշտօնը կը փոխանցուէր որդւոց յորդի: Յովհաննէս ունէր ընտանեկան յարկին տակ*

---

[1] *Արաբերէն բնագիրը հրատարակեց* C. Bacha Biographie de St. Jean Damascène, Harisa Liban 1912. *Անոր գերմաներէն թարգմանութիւնը տուաւ* G. Graf, Das arabische Original der Vita des hl. Johannes von Damaskus: Der Katholik 1913, 2, *էջ* 164—190, 320—331. *Վրացերէն թարգմանութիւնը, զոր կատարած է արաբերէնէ Եփրեմ Կրսեր* 1110*ին հրատարակեց* M. C. Kekelitze, Грузинская версія арабскаго Житія св. Јоанна Дамаскина: Христіанскій Востокъ 3 (1914) 119—174. *Յունարէն թարգմանութիւնն՝* Migne, Patrologia Graeca, 94, *էջ* 429—490. *Հմմտ* M. Jugie, La Vie de Saint Jean Damascène: Echos d'Orient, 1924, *էջ* 137—161 *եւ* 1929, *էջ* 35—41.

որդեգրեալ եղբայր մը Կոզմաս անուն։ Իրենց դաստիարակ կարգուեցաւ Կալաբրիացի Կոզմաս կրօնաւորը, որ գերի ինկած ըլլալով Արաբացւոց ձեռքը, փրկանաւորուած էր Յովհաննէսի հօր կողմէ։ Յովհաննէս ձեռք բերաւ իմաստասիրական եւ աստուածաբանական գիտութիւններու մէջ խոր հմտութիւն։ Թէ ե՞րբ ժառանգեց նա իր հօրը վարած պաշտօնը եւ ո՞րքան ժամանակ պաշտօնավարեց, չգիտենք. գիտենք միայն, որ նա իբր 726ին, երբ առաջին անգամ հրապարակ ելաւ Պատկերամարտներու դէմ, Դամասկոս կը գտնուէր։ 732ին իր Կոզմաս եղբօր հետ Երուսաղէմ գնաց եւ մտաւ Ս. Սաբայի վանքը. ուր Յովհաննէս Ե. Երուսաղէմացի († 735) քահանայ ձեռնադրեց զինքը։ Մինչ Կոզմաս 1743ին Մայումայի եպիսկոպոս կարգուեցաւ, Յովհաննէս մնաց իր քահանայական աստիճանին մէջ եւ չհեռացաւ երբեք իր Մենաստանէն, անձնատուր միշտ գրական պարապմունքներու։ Իր կենսագրին այն վկայութիւնը, թէ Յովհաննէս հոս իր գրուածքները նոր խմբագրութեան ենթարկեց, կը հաստատուի անով, որ գրութիւններէն ոմանք ինչ ինչ ձեռագիրներու մէջ կրկին խմբագրութեամբ երեւան կուգան։ S. Vailhé Յովհաննու մահը կը նշանակէ 749 դեկտ. 4ին[2]. ուրիշներ կը համարին տեղի ունեցած 754էն ոչ շատ յառաջ։

---

[2] Echos d'Orient, 1906, էջ 28—30։

Յանձին Յովհաննէս Դամասկացւոյ հանդէս կու գայ հին Եկեղեցւոյ հզօր ճարտարախօս եւ բանիբուն Վարդապետ մը, որ ժամանակի բազմադիմի հարցերն իր ատեանին առջեւ հանած եւ թիկունքը աւանդութեան յեց՝ իր պատասխանը կու տայ: Պատկերամարտութեան շրջանին արդէն իր ձայնին ակնդէտ էր բովանդակ յունական եկեղեցին: Ապրելով Դամասկոս, ամիրապետներու պաշտպանութեան տակ, կրցաւ նա համարձակ յայտարարել Իսաւրացի Լեւոն կայսեր, թէ «Կայսեր գործը չէ Եկեղեցւոյ օրէնքներ թելադրել»: Ան հրաշունչ ջատագովականներով պաշտպանեց պատկերայարգութիւնն ընդդէմ կայսերական հրամանագիրներու:

Իբրեւ եկեղեցական բանաստեղծ անմահ համբաւ վայելեց Յովհաննէս յունածէս Եկեղեցւոյ մէջ: Գերակշիռ եղաւ Յունական Եկեղեցւոյ համար մանաւանդ իր Հրամանակարգ Աստուածաբանութիւնը: Իր գրուածքներու մէջ Յովհաննէս աւելի ճարտար հաւաքող է քան ծննդական միտք. նա ջանացած է մթերել անցելոյն ժառանգութիւնը, ըլլան անոնք հրամանակարգ կամ բարոյական, մեկնողական կամ պատմական մարզին հայող: Այն թէ աստուածաբանական ուսմանց բարդաւաճման շրջանը վերջ գտած է, կ՚երեւայ թէ բովանդակ Արեւելքի համոզումն էր այն դարուն: Այսպէս կը խորհէր նաեւ Յովհաննէս, որ փորձեց այն ինչ

որ Տիեզերական Ժողովներն սահմանած էին եւ սուրբ Հայրերը վկայած, իբրեւ Յունական Եկեղեցւոյ հաւատոյ աւանդութիւնը ամփոփ պատկերի մէջ վերընծայել: Արեւելքի մէջ չերեւցաւ իրմէ առաջ երկրորդ մը, որ ստուեր բերէր իր գործին վրայ: Յովհաննէս Դամասկացւոյ «Աղբիւրն գիտութեան» նկատուած է մինչեւ այսօր Արեւելեան Եկեղեցւոյ հրամանակարգ վարդապետութեան դասական գիրքը: Լեւոն ԺԳ. Քահանայապետը 19 Աւգոստոս 1890 հրատարակեց զինքը Վարդապետ Եկեղեցւոյ:

2. Յովհաննէս Դամասկացւոյ գրական մնացորդները հարուստ են ըստ քանակին. կան անոնց մէջ սակայն անհարազատներ ալ, մասամբ տպագիր, մասամբ ձեռագիր:

ա. Իր գլխաւոր գործն է «Աղբիւր գիտութեան». որ կը բաժնուի երեք մասի. Ա. Ներածութիւն փիլիսոփայութեան, ընդարձակ եւ համառօտ խմբագրութեամբ: Ներածութիւն մըն է այս, ուր կը բացատրուին Գոյակ, Էակ, Պատահարք, Անձնաւորութիւն եւն գաղափարները, հետեւողութեամբ Արիստոտէլի, Պորփիւրի եւ Ամմոնիոսի: Բ. Ընդդէմ Հերձուածոց. 103 հերձուածներու անուններ, քաղուածաբար հանուած Եպիփանի, Թէոդորետի, Տիմոթէոս Կոստանդնուպոլսեցւոյ, Ղեւոնդ Բիւզանդացւոյ եւ Սոփրոնիոս Երուսաղեմացւոյ գրութիւններէն. իր գրչէն են միայն վերջին երեքը՝ Իսլամ, Պատկերամարտք եւ Պաւղի-

*կեանք: Գ. Մասն է՝* Բացատրութիւն ճըշմարտութեան ուղղափառ հաւատոյ: *Փորձ մըն է այս լիակատար հրամանակարգ աստուածաբանութեան մը, որ կը սկսի Աստուածութեան վարդապետութենէն եւ կ'աւարտի Նեռի եւ Յարութեան վարդապետութեամբ: Նիւթերու մշակումը կատարուած է շատ անհաւասար չափերով. գրեթէ կէսը կը գրաւէ քրիստոսաբանութիւնը (գլ. ԽԵ—ՁԱ): Մ. Հայրերու վարդապետութեան ամփոփումն է: Բովանդակութիւնը կ'ընծայէ գրեթէ կատարեալ տեսութիւն մ'այն ամէն աստուածաբանական հարցերու շուրջը, որոնք իրմէ յառաջ ծեծուած էին մասնական գրուածքներու մէջ: Շատ աղբիւրներ, որոնցմէ օգտուած է հեղինակը, կորսուած են այսօր:*

բ. Պատկերամարտներու դէմ *գրած է* երեք ջատագովականներ, *որոնք կ'երեւցնեն թարմութիւն եւ հեղինակին մէջ արդար դայրոյթ: Կան իր անուամբ համանիւթ ուրիշ երեք ճառեր ալ, որոնք սակայն անհարազատ նկատուած են:*

գ. Գիրք վասն ուղիղ իմացուածոց, *զոր գրած է Եղիա եպիսկոպոսի խնդրանքով եւ է ընդարձակ հաւատոյ դաւանութիւն մը:*

դ. Համառօտ Ներածութիւն հրամանակարգ աստուածաբանութեան, *որ նախապատրաստական աշխատութիւն մըն է «Աղբիւր գիտութեան» գրուածքին Ա. Մասին համար* (MG 95, 9—18):

ե· Ի Ս· Երրորդութիւն, *հարցմամբ եւ պատասխանով*:

զ· Յերգն երիցս սրբասացութեան (MG 95, 21—62):

է· Վասն որոց ի հաւատս ննջեցին (MG 95, 247—278):

ը· Սուրբ զուգակշիռք (Sacra Parallela). *այսպէս կ'անուանուի գործք մը, որ իր խորքին մէջ ձեռնարկ մըն է Բարոյագիտութեան կամ Հոգեշահ մատեան մը, ծաւալուն տարածութեամբ· այս տեղ Յովհաննէս Ս· Գրքէն եւ Ս· Հայրերու, նաեւ Փիլոնի եւ Յովսեպոսի, գրուածքներէն ծայրաքաղ հաւաքած է հազարաւոր տեղիքներ, որոնց մէջ նաեւ քարոզներ Բարսեղէն եւ Ոսկեբերանէն: Այս նախնաբար շատ ընդարձակ գործէն այժմ հատակոտորներ միայն մնացած են: Բաժնուած էր երեք գրքի* (MG 95, 1039—1588· 96, 9—544):

թ· *Ճառեր*՝ վասն պահոց սրբոց· վասն եւթն չար ոգւոց· վասն առաքինութեանց եւ ախտից (MG 95, 63—98):

ժ· Ի Ննջումն Ս· Աստուածածնի, *երեք ճառ* (MG 96, 699—762):

ժա· Մեկնութիւն Թղթոցն Պաւղոսի (MG 95, 441—1034)· *ծայրաքաղ հանուած Յովհ· Ոսկեբերանի, Թէոդորետոս Կիւրացւոյ եւ Կիւրեղ Աղեքսանդրացւոյ գրուածքներէն*:

ժբ· *Ունի մասնական գրուածքներ ալ* Յակոբիկներու, Նեստորականներու, Միաբ-

նեաններու, Միակամեայց, Մահմեդականներու եւ Մանիքեցւոց (*Պաւղիկեանց*) *դէմ*:

ժգ. *Երգեր եւ շարականներ, որոնք պահուած են Յունաց Եկեղեցւոյ Եկեղեցական Երգարաններու մէջ: Նորագոյն քննութիւնները ցոյց տուին թէ Յովհ. Դամասկացւոյ անուամբ հասած այս Երգերու մեծ մասը անհարազատ են:*

ժդ. *Ոմանք իրեն վերագրեցին Բարղամի եւ Յովասափի պատմութիւնը: Այս մասին պիտի խօսինք յետոյ:*

ժե. *Յովհաննու անհարազատ գրուածներէն ինչ ինչ առիթ պիտի ունենանք տեսնելու ստորեւ*[3]:

3. *Յովհաննէս Դամասկացւոյ այս հարուստ գրականութիւնը ոչ միայն յունական աշխարհին մէջ իր ճանապարհը գտաւ, այլ եւ թարգմանուեցաւ արաբերէնի, ասորերէնի, եթովպացերէնի, վրացերէնի, հայերէնի, սլաւերէնի եւ լատիներէնի: Հարազատ գրուածներուն նաեւ անհարազատներ ընկերացան:*

*Ես այս տեղ նկատի պիտի չառնեմ այս թարգմանութիւնները. բայց պիտի պահանջէ*

---

[3] *Յովհ. Դամասկացւոյ գրուածքներու եւ անոնց տպագրութեանց մասին հմմտ.* K. Krumbacher-A. Ehrhardt, Geschichte der byzantinischen Literatur, 2. Aufl. München 1897, *էջ* 68–71, 674—670, *եւ* O. Bardenhewer, Geschichte der altchristlichen Literatur. V (Freiburg 1932), 51—65:

նիւթը խօսելու վրացերէն թարգմանութեան մասին, որովհետեւ հայերէն թարգմանութիւնք ըստ մեծի մասին վրացերէն օրինակէն կատարուած են:

Յիշեցինք վերագոյն, թէ Յովհ. Դամասկացւոյ գրուածքները առաւելապէս յունածէս Եկեղեցիներու մէջ յարգանք վայելեցին: Այս Եկեղեցիներու թուին մէջ էին նաեւ Հայ-հոռոմք եւ Ծաթերը, այս ինքն հոռոմահայ եւ վրահայ յունածէսները: Կ'արժէ առանձին ուսումնասիրութիւն մը նուիրել այն գրականութեան, զոր տուին, մեծաւ մասամբ թարգմանօրէն, Հայ-հոռոմք եւ Ծաթերը: Այս տեղ սակայն պիտի բաւականանամ այդ ուսումնասիրութեան մէկ գլուխը միայն նկատի առնել, այսինքն այն միայն, ինչ որ տուած է Սիմէոն Պղնձահանեցի կրօնաւորը, որ թարգմանիչն է Յովհ. Դամասկացւոյ գրուածքներու վրացերէնէ հայերէնի[4]:

Իսկ Դամասկացւոյ գրութիւնները վրացերէնի թարգմանած են ա. Եփրեմ կրսեր. եւ բ. Արսէն Իքալթոէլի. գ. Ս. Եւթիմէ, որոնք ծաղկած են Ժ.—ԺԲ. դարուն: Ասոնց թարգմանութիւններու մեծ մասը կը գտնուի տակաւին ձեռագիրներու մէջ: Ինձ ծանօթ

[4] Վրացերէնէ հայերէն թարգմանութեանց մասին հմմտ. P. Peeters, Traductions et traducteurs dans l'hagiographie orientale à l'époque byzantine. Analecta Bollandiana 40 (1922), 241—298, յատկապէս էջ 276—293:

*են այս թարգմանութիւնները Ի. Ջաւախովի եւ Գէորգ Պերաձէի ցուցակներէն*[5]:

*Յովհաննէս Դամասկացւոյ գրութիւններուն Սիմէոնէ յառաջ, դեռ Ժ. դարուն, ուշադրութիւն դարձուցած էր Բագարատ Մամիկոնեան, որ ձեռնարկած է թարգմանել Դամասկացւոյ «Ներածութիւն փիլիսոփայութեան» գործը: Այս թարգմանութիւնը անծանօթ մնացած է Սիմէոնի, որ զայն միւսանգամ թարգմանած է վրացերէնէ:*

4. *Առաջին անգամ իր անունին կը պատահինք Սմբատ Սպարապետի Յիշատակարանին եւ* 1305*ին Գրիգոր Անաւարզեցի կաթողիկոսին առ Հեթում գրած թղթին մէջ:*

1825*ին ի Վենետիկ լոյս տեսաւ* Quadro delle opere di vari autori anticamente tradotte in Armeno. *Հոս կ'ըսուի* (*էջ* 37). Libro di S. Giovanni Damasceno, che contiene diverse omelie filosofiche, e teologiche, con un' aggiunta di due omelie contro i Giudei e Nestore. Ne abbiamo due diverse traduzioni senza conoscerne però gli originali. Il Traduttore si suppone essere stato certo Bagarato.

*Նոր Հայկազնեան Բառգիրքի հեղինակները նուիրած են իրենց Նախադրունի մէջ*

---

[5] И. Джаваховъ, Матеріали для історія грузинской патристической литературы: Христіанскій Востокъ I (1912) 6—29, *յատկապէս էջ* 12—14: Dr. G. Peradze, Die alt-christliche Literatur in der georgischen Überlieferung. Oriens Christianus, 3: Serie, 6 (1931), 240—242 (Johannes von Damaskus).

(էջ 11) Յովհ. Դամասկացւոյ հետեւեալ տողերը. «Սրբոյն Յովհաննու Դամասկացւոյ հզօր վարդապետի Յունաց ի Ը. դարու, դկնի Հարց առաջնոց, գործ իմաստասիրական եւ աստուածաբանական, թարգմանեալ մասամբ ի ձեռն Սիմէոնի ուրումն քահանայի ի Վրաց լեզուէ ի հայ բարբառ, անհարթ ոճով. օրինակն իսկ մեր գրեալ ի թուին Հայոց ՌՃԾԵ (1706), չարժէ ինչ, բայց ասի գաղափարեալ ի հին օրինակէ գրելոյ ի թուին ՉՁԸ (1339): Կայ եւ լոկ իմաստասիրական մասն գործոց Դամասկացւոյ՝ լաւ եւս թարգմանեալ ի յունէ ի հայ ի ձեռն Բագարատոյ Մամիկոնեան. այլ քաղուածով համառօտեալ: Յերկոցունց օրինակաց իսկ սակաւ բանք եղեն մեզ պիտոյ»:

1889ին լոյս տեսաւ Հ. Գ. Զարբանալեանի «Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց», ուր հեղինակը նկատի առած է նաեւ Յովհ. Դամասկացւոյ թարգմանութիւնները, էջ 575—580:

Յովհ. Դամասկացւոյ Ձեռագիրներէն, որոնք կը գտնուին Էջմիածին, յիշուած է հինգը «Մայր ցուցակ ձեռագիր մատենից Գրադարանի սրբոյ Աթոռոյն Էջմիածնի». հրատարակուած ծախիւք Յակոբ Կարենեանցի, Թիֆլիս 1863, էջ 6—7: Այդ տեղ յիշուած ձեռագիրներն են Թ. 99—103, որոնց բովանդակութիւնը շատ հակիրճ յառաջ բերուած է: Այս ձեռագիրները առիթ ունեցած եմ 1925ին տեսնելու եւ ցուցակագրելու: Այս

պատճառաւ աւելորդ կը համարիմ մի առ մի յառաջ բերել ցուցակին տողերը: Նոր թուերն են՝ Թ. 65, 101, 102, 103, 116:

Չեմ ուզեր յիշել այս տեղ մի առ մի այն ամէն ձեռագիրները, որոնց մէջ կը գտնուին Դամասկացւոյ գրութիւնք, վասն զի վարը, իւրաքանչիւր գրուածքի տակ պիտի մատնանշեմ զանոնք, ուր կը գտնուին:

Կը տեսնուի ասկէ, թէ Յովհաննէս Դամասկացւոյ գրուածքները, զորոնք Սիմէոն Պղնձահանեցի թարգմանած էր իբր 1240ին, դար մը եւ աւելի մնացած են անտեսուած: Մխիթար Այրիվանեցի, որ 1286ին Սիմէոնի թարգմանած Պրոկղի Աստուածաբանական Շաղկապքը առած էր իր Ճառընտիրին մէջ, կարեւոր չէր համարած հիւրընկալել հոն Դամասկացւոյ փիլիսոփայական-աստուածաբանական երկմասնեայ գրուածքն ալ, անշուշտ ոչ թէ իրեն անծանօթ մնացած ըլլալուն համար: Առաջին անգամ[6] կը հետաքրքրուի անով Յովհաննէս Վ. Որոտնեցի 1363ին, որ կը յանձնարարէ օրինակ մը հանել անկէ. այս օրինակութիւնը կը կատարուի Տփղիս անծանօթ գրչէ մը: Գաղափար-օրինակը հաւանօրէն բերուած էր հոն Պղնձա-

[6] Վենետիկի Մխիթարեանց օրինակը յամէ ՌՃԾԵ (1706), ինչպէս ՆՀԲ. կ'ակնարկէր, օրինակուած է ՉՁԸ (1339) Թուականի գաղափար-օրինակէ. Յիշատակարանն է. «Փառք... աւարտեցաւ ի Թուականութեան հայկազան տումարի ՉՁԸերորդի եւ (՞) հին օրինակն. իսկ սա նորս՝ ՌՃԾԵ ամին...»: Չէ աւանդուած թէ ո՞վ է գրիչն եւ ո՞ւր օրինակուած:

հանքի վանքէն: Ձեռագիրս, որ պահուած է Երուսաղէմի Ս. Յակոբեանց Մատենադարանի Թ. 1297ի մէջ, ունի հետեւեալ Յիշատակարանը, զոր օրինակած եմ Տ. Սուքիասեանի կազմած ցուցակէն. «Փառք...: Արդ գրեցաւ սա ի Թուականութեանս Հայոց Գ եւ ԺԲ (1363), ի մայրաքաղաքս Տփխիս, ընդ հովանեաւ սուրբ Ամենափրկչիս, ի խնդրոյ աբեղեբայրս վարդապետին Յովանիսի, որոյ գաւառն եւ հայրենիքն Որոտն է. զոր Տէր Աստուած վայելել տացէ. զմեղաւոր գրիչ(ս) ... յիշեցէք ի Քրիստոս եւ Աստուած զձեզ յիշէ»:

Թուականով յայտնի միւս բոլոր օրինակները ԺԷ.—ԺԹ. դարէ են:

Աւելի ընդունելութիւն գտած է Յովհ. Դամասկացւոյ «Ներածութիւնը» Բագարատ Մաթիկոնեանի թարգմանութեամբ, բայց առանց հեղինակի անուան. այս կը տեսնուի Սմբատ Գունդստաբլի յիշատակագրութենէն:

Հայոց Յայսմաւուրքը իր այլեւայլ խմբագրութեանց մէջ չէ արձանագրած Յովհաննէս Դամասկացւոյ յիշատակը, թէեւ կը տեսնուի այն յոյն Բասիլեան Յայսմաւուրքի մէջ (4 Դեկտեմբեր): Սուրբին վարքը համառօտիւ տուաւ Հ. Մ. Աւգերեան իր «Մնացորդք վարուց սրբոց արտաքոյ Տօնացուցին մերոյ, յիշատակելոց ի Յայսմաւուրս կամ ի Ճառընտիրս Հայոց որպէս եւ Յունաց եւ Լատինացւոց, զոյգ ընդ ցուցակի տօնելի սրբոց» հատորին մէջ

(ԺԲ. Հատոր Լիակատար վարուց սրբոց. Վենետիկ 1815, էջ 286—287) :

Յովհ. Դամասկացւոյ գրութիւնները ըստ մեծի մասին թարգմանուած են վրացերէնէ. փոքր մասի մը միայն թարգմանութիւնը կատարուած է յունարէնէ: Մեր քննութեան մէջ առաջին տեղը պիտի տանք գրուածքի մը, որ թէ յունարէնէ եւ թէ վրացերէնէ թարգմանուած է: Այդ գրուածքն է «Ներածութիւնն փիլիսոփայութեան», որ ինչպէս կ'երեւայ հեղինակէն կրկին խմբագրութեամբ լոյս ընծայուած է. համառօտ եւ ընդարձակ: Վերագոյն յիշեցինք, թէ Դամասկացին, ինչպէս իր Վարուց մէջ կը յիշատակուի, ինչ ինչ գրուածքներ նոր խմբագրութեան ենթարկեց, երբ Սարայի վանքը քաշուած պարապած էր գրականութեամբ: Անոնցմէ մին է Ներածութիւնը, որ ապա Աղբիւր Գիտութեան գործին Ա. մասը կազմած է: Գրուածքիս առաջին թարգմանիչը եղած է Բագարատ Մամիկոնեան, ինչպէս խորագրին մէջ կը կարդանք, թարգմանած յոյն բնագրէ:

## ԲԱԳԱՐԱՏ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ԵՒ ԻՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՆ ՆԵՐԱԾՈՒԹԵԱՆ

5. Բագարատ անունը յատուկ էր Բագրատունի տան: Այս պատճառաւ ալ աչքի կը զարնէ, երբ այս անունին կից կը տեսնենք Մամիկոնեան տոհմանունը: Դժբախտաբար իր թարգմանութիւնը չի կրեր որ եւ է թուա-

կան, որով կարող էինք սուղել իշխանիս ժամանակն եւ անձնաւորութիւնը: Բագարատի մը մասին, որ կարող էր Մամիկոնեան եղած ըլլալ, ունինք պատմութենէ հետեւեալ տեղեկութիւնները:

Թ. դարու վերջերը Տարօնի իշխանն էր Գրիգորիկ, որ Մամիկոնեան էր: Սա ունէր երկու որդի, Աշոտ եւ Բագարատ: Աշոտ կը տարուի Կ. Պոլիս, ուր կը պատուի Լեւոն Զ. Իմաստասէր կայսեր (886—912) կողմէ Պրոտոսպաթար տիտղոսով: Ապա Ռոմանոս Ա. կայսր (919—944) կ'անուանէ զինքը նաեւ Պատրիկ: Երբ կը վախճանի Գրիգորիկ, իր Բագարատ որդին ալ կը մեկնի Կ. Պոլիս, որ կ'արժանանայ նոյնպէս Պատրիկ տիտղոսի, կը կարգուի սպարապետ Տարօնի եւ կին կ'առնէ Թէոփիլակտոս Մագիստրոսի դուստրը: Այսպէս ըստ Կոստանդին Ծիրանածինի [7]:

Այս միջոցին Տարօն բաժնուած էր երկու իշխանութիւններու. մէկ մասին տէրն էր Գրիգորիկ եւ միւս մասին՝ Ապուղամր: Վերջինոյս բաժինը ժառանգեց Թոռնիկ պատրիկ. բայց սա նեղուելով Գրիգորիկի որդիներէն՝ առիպուեցաւ թողուլ իր բաժինը կայսեր. մտադիր էր ինքն ալ Կ. Պոլիս երթալ, բայց վախճանեցաւ: Այժմ Բագարատ եւ Աշոտ համաձայնութիւն կնքեցին կայսեր հետ, որ Թոռնիկի բաժինը իրենք առնեն եւ

---

[7] De administr. imp. գլ. խԳ. էջ 184 188—189:

*փոխարէն կայսեր անցնի Եղնուտը: Այս կը պատահի իբր 920ին*[8]:

*Բագարատ, որ Կայսեր հետ կը բանակցի եւ Թէոփիլակտոս Մագիստրոսի դուստրը կին կ'առնէ, հմուտ էր հաւանօրէն յոյն լեզուին, եւ իբրեւ Տարօնցի, գիտէր հայերէնն ինչպէս մայրենի լեզու եւ իր դաստիարակութիւնն առած էր նոյն լեզուով հայերէն գրքերու վրայէն: Թէ որքան ժամանակ ապրեցաւ նա Կ. Պոլիս, չգիտենք: Բայց ունեցած ըլլալու է առիթ ծանօթանալու Յովհ. Դամասկացւոյ գրուածներուն, որոնք այնքան յարգանք կը վայելէին նոյն դարուն Բիւզանդական աշխարհին մէջ:*

Ա. Ներածութիւն Իմաստասիրութեան, թարգմանեալ ի հայ լեզու ի յունարէն գրոյ Բագարատայ Մամիկոնենի: *Գրուածքս ձեռագիրներու մէջ պէս պէս խորագրուած է: Տիւբինգենի Թ. 74 խորագիր կը կրէ. «Յաղագս Գոյի, Էութեան. Բագրատ Մամիկոնէնին. Ներածութիւն Իմաստասիրութեան, որ է Իսագոժիկի. զկնի այսր եւ զամենայն Իմաստասիրութեան գործարան, որ է որգանոն ըստ Հելլենացւոց բարբառի»: Երուսաղէմի Թ. 898 խորագրուած է. «Յաղագս Գոյի, Էութեան եւ Պատահման. Թարգմանեալ ի հայ լեզու ի յունարէն գրոյ Բագարատ Մամիկոնեան. Ներածութիւն Իմաս–*

[8] *Անդ.* էջ 190—191: *Հմմտ.* Jos. Markwart, Südarmenien und die Tigrisquellen. Wien 1930, էջ 460—462: *Հ. Ն. Ակինեան, Մատենագրական Հետազօտութիւններ.* Դ. էջ 77:

*տասիրութեան, որ է Իսագոժիկի· զկնի այսր եւ ամենայն Իմաստասիրութեան գործարան որ է Ղանոնն ըստ Հելլենացւոց բարբառի: Բաժանեալ է ի գիրս քառասուն եւ հինգ մասունս»: Խաչիկ Վ. Դադեանի օրինակն ունի. «Յաղագս Էութեան եւ Պատահման. Թարգմանեալ Բաղարատ Մամիկոնեան յունարէն գրոց»: Յայտնապէս կը տեսնուի թէ սկըզբնագիրը կրած է կամայական փոփոխութիւններ: Այս տուեալներու վրայ յեցած կարելի է սակայն փորձել վերականգնել սկզբնագիրը.* Ներածութիւն Իմաստասիրութեան, որ է իսագոժիկի[9] (εἰσαγωγική). զկնի այսր եւ ամենայն Իմաստասիրութեան գործարան, որ է որղանոն (ὄργανον) ըստ Հելլենացւոց բարբառի: [Բաժանեալ <է> գիրս ի ԽԵ մասունս:] — Ա. Յաղագս Գոյի, Էութեան եւ Պատահման:

*Յովհ. Դամասկացի, որ գրուածքս «Աղբիւր Գիտութեան» գործին Ա. մասն ներկայացուցած է, վերնագրած է* κεφάλαια φιλοσοφικά· *թէ ի՛նչ խորագիր կը կրէր առաջին խմբագրութիւնը, ինձ ծանօթ չէ. հայն կ'ենթադրէ* εἰσαγωγική τῆς φιλοσοφίας.

*Երուսաղէմի Թ. 898 կը յայտնէր, թէ «Բաժանեալ է գիրս ի ԽԵ մասունս»*[9*]: *Տի–*

---

[9] *Միջնադարեան յոյն արտասանութեամբ. Համմտ. նաեւ մաժիստրոս. Ստ. Ասողիկ,* 182, 279. *Ար. Լաստիվերտացի,* 260 *եւն:*

[9*] *Ինձ կը թուի, թէ օրինակողի մը յաւելուածն ըլլայ տողս, որովհետեւ միւս ծանօթ օրինակներու մէջ կը պակսի:*

*բնդէնի ձեռագիրը ունի միայն 39 գլուխ. իսկ Սիմէոն Պղնձահանեցւոյ թարգմանութիւնը* 49 *գլուխ։ Զունիմ ձեռքի տակ ոչ Երուսաղէմեան եւ ոչ ալ Դաղեան ձեռագիրները, ճշդելու համար գլուխներու թիւը։ Առ այս չեն կրնար ձեռնտու ըլլալ նաեւ յոյն տպագիր օրինակները, այնու որ անոնք ճըշդիւ չեն ներկայացուցած յունական իրարմէ խտորող ձեռագիրներու ընթերցուածները։ Արդէն* R. Ceillier[10] *ուշադիր եղած էր, թէ հին եւ նոր տպագրութիւններն ինչպէս եւ Պարիսի Ազգային Մատենադարանի* 5 *ձեռագիրներն այս մասն ունին* 65 *գլխով, մինչդեռ ուրիշ ձեռագիրներ կը բովանդակեն միայն* 50 *գլուխ։ Ասկէ կը հետեւցնէ Սէյիէ, թէ կամ Յովհ. Դամասկացի երկու հրատարակութիւն տուած է՝ ընդարձակ եւ համառօտ եւ կամ իր մահէն ետքը ուրիշներ ընդարձակած կամ համառօտած են զայն։ Նաեւ ընդարձակները միապէս չեն ընծայեր բնագիրը։* Lequien, *որ Դամասկացւոյ գործերու ամբողջական հրատարակութիւն մը հոգաց* 1712*ին ի Պարիս, գրուածքիս ստորեւ կը ծանօթագրէր, թէ Բաղէլի* 1535*ի հրատարակութիւնը առաջին* 15 *գլուխները բոլորովին այլազգ ունի սովորական օրինակներէն։ Եւ սակայն այս* 15 *գլուխներէն առաջին* 10 *ճըշդիւ կը համապատասխանեն Բաղարատեան օրինակին։*

---

[10] Histoire génerale des auteurs sacrés et ecclésiastiques. Paris, 1752, t. XVIII, p. 114.

*Բիւզանդագէտներուն թողլով այս կէտին ուսումնասիրութիւնը, ես կարեւոր կը համարիմ այս տեղ ներկայացնել Տիւբինգենեան ձեռագրին գլխակարգութիւնն եւ Ա. եւ Բ գլուխները (վերջինս կիսով), ճաշակ մը տալու համար ընթերցողներուս Բագարատ Մամիկոնեանի թարգմանութենէն: Գլխակարգութեան առընթեր կը դնեմ յոյն բնագրի համապատասխան տեղիքները:*

## ՑԱՆԿ ՄԱԿԱԳՐՈՒԹԵԱՆՍ

*Ա. Յաղագս գոյի, < էութեան եւ պատահման >:*
1. *Περὶ τοῦ ὄντος, οὐσίας τε καὶ συμβεβηκότος*

*Բ. Յաղագս սեռից սեռականի եւ տեսակի տեսա-*
2 *Περὶ γένους τοῦ γενικωτάτου καὶ τοῦ ἐιδικωτάτου*
*կանի եւ միմեանց:*
*καὶ τῶν ὑπαλλήλων.*

*Գ. Յաղագս (ան)հատի:*
3. *Περὶ ἀτόμου.*

*Դ. Յաղագս տարբերութեան:*
4. *Περὶ διαφορᾶς.*

*Ե. Յաղագս պատահման:*
5. *Περὶ συμβεβηκότος.*

*Զ. Յաղագս յատկի:*
6. *Περὶ ἰδίου.*

*Է. Յաղագս ստորոգութեան:*
7. *Περὶ κατηγορουμένων.*

*Ը. Յաղագս հոմանուան եւ փաղանուան ստորոգութեան:*
8. *Περὶ συνωνύμου καὶ ὁμωνύμου κατηγιορίας.*

*Թ. Յաղագս որակութեան:*
. *Περὶ τῆς ἐν τῷ τὶ ἐστι, καὶ ἐν τῷ ὁποῖον τί ἐστι κατηγορίας.*

*Ժ. Յաղագս անձնաւորութեան:*
10. *Περὶ ὑποστάσεως . . .*

ԺԱ. Յաղագս էութեան եւ բնութեան։
11 Περὶ οὐσίας, καὶ φύσεως . . .
ԺԲ. Յաղագս բաժանման։
12. Περὶ διαρέσεως.
ԺԳ. Յաղագս սահմանի։
13. Περὶ ὁρισμοῦ
ԺԴ. Յաղագս համանուան [եւ]
15 Περὶ ὁμωνύμων.
ԺԵ. Յաղագս փաղանուանց։
32. Περὶ συνωνύμων.
ԺԶ. Յաղագս բազմանուանց։
33. Περὶ πολυωνύμων.
ԺԷ. Յաղագս այլ եւ այլ անուանց։
34. Περὶ ἑτέρων, καὶ ἑτερωνύμων.
ԺԸ. Յաղագս գերադրականաց։
35. Περὶ παρωνύμων.
ԺԹ. Յաղագս տասն սեռիցն։
36. Περὶ τῶν δέκα γενικωτάτων γενῶν.
Ի. Յաղագս համասեռիցն։
37. Περὶ ὁμογενῶν . .
ԻԱ. Յաղագս անձնաւորութեան։
42. Περὶ ὑποστάσεως.
ԻԲ. Յաղագս գոյացութեան [եւ]
46. Περὶ διαίρεσις τοῦ ὄντος.
ԻԳ. Յաղագս էութեան։
47. Περὶ διαίρεσις τῆς οὐσίας.
ԻԴ. Յաղագս քանակի։
49. Περὶ ποσοῦ καὶ ποσότητος.
ԻԵ. Յաղագս որ առընչի։
50. Περὶ τῶν πρὸς τι.
ԻԶ. Յաղագս էութեան։
39 Περὶ οὐσίας.
ԻԷ. Յաղագս բնութեան։
40. Περὶ φύσεως.
ԻԸ. Յաղագս կերպի։
41. Περὶ μορφῆς.

ԻԹ. Յաղագս անձնաւորութեան:
42 Περὶ ὑποστάσεως.
Լ. Յաղագս դիմի:
43. Περὶ προσώπου
ԼԱ. Յաղագս որ յանձնաւորութիւն:
44 Περὶ ἐνυποστάτου
ԼԲ. Յաղագս որակ եւ որակութիւն:
51. Περὶ ποιοῦ καὶ ποιότητος
ԼԳ. Յաղագս առնելոյ եւ կրելոյ:
52 Περὶ τοῦ ποιεῖν καὶ πάσχειν
ԼԴ. Յաղագս կալոյ:
53. Περὶ τοῦ κεῖσθαι.
ԼԵ. Յաղագս որ առ ուր:
54. Περὶ τοῦ ποῦ
ԼԶ. Յաղագս որ առ երբ:
55 Περὶ τοῦ πότε
ԼԷ. Յաղագս ունելոյ:
56. Περὶ τοῦ ἔχειν.
ԼԸ. Յաղագս ներհակի:
57. Περὶ τῶν ἀντικειμένων.
ԼԹ. Յաղագս սահմանի:
64. Περὶ ὅρου.

Ներածութիւն իմաստասիրութեան, որ է խաղոժիկի· զկնի այսր եւ ամենայն իմաստասիրութեան գործարան, որ է որղանոն ըստ Հելլենացւոց բարբառի[11]:

*Ա. Յաղագս Գոյի, Էութեան եւ Պատահման:*

*Գոյ է հասարակ անուն ամենայն գոյից· եւ այս արդեաւք[12] գոյ հասանի յէութիւն*

---

[11] *Այսպէս վերակազմուած բնագիրը· ձեռագրաց ընթերցուածները տես վերը:*

[12] Յ. οὐσία μὲν οὖν ἐστι τὸ κυριώτερον. *«Իսկ էութիւն կարողագոյն իմն է»· հայ բնագիրը հոս բառերու անկում կ'երեւնէ:*

եւ ի պատահումն: Էութիւն իր իմն է ինքնագոյ, ոչինչ կարօտելով յայլմէ, այլ ինքն յինքեան գոյ. եւ ոչ յայլոց ունել զգոյն. քանզի էութիւնն ենթակայ է՝ որպէս նիւթ իրաց, իսկ պատահումն յէութիւն[13] տեսանի իբր մարմին եւ գոյն. քանզի ոչ է մարմին գունոյ այլ գոյն մարմնոյ. է արդեաւք մարմին՝ էութիւն. իսկ գոյն՝ պատահումն. այնպէս ոգի եւ միտք. քանզի ոչ է ոգի մտաց, այլ միտք ոգոյ: Է արդեաւք եւ ոգի էութիւն. իսկ միտք պատահումն: Քանզի ի պակասել ոգոյն՝ պակասին եւ միտքն: Զի մինչ չիցէ հոգի, յո՞ իցէ հանճարն. իսկ ի պակասել մտացն յիրիք պատճառէ, ոչ ամենեւին իմն պակասի ոգի. լինել վայել է ոգոյն առանց մտաց: Սոյն իսկ եւ ի վերայ ամենայն գոյից, որ յինքեան, ունել զգոյն[14] եւ ոչ յայլում էութիւն ասի. իսկ որ ոչ կարէ ինքեամբ գոյանալ, նա պատահումն է:

Բ. Յաղագս սեռից սեռականի եւ տեսակի տեսականի եւ միմեանց:

Սեռ եռակի ասի ըստ միոյ ազգի ի ծնընդենէ, որպէս յԻսրայելէ Իսրայելացիք[15] ասին. իսկ ըստ այլ ազգի. որպէս յԵրուսաղեմէ Երուսաղեմացիք. եւ ի Պաղեստինոյ՝ Պաղեստինացիք[16]: Ըստ երից ազգի՝ սեռ ասի որ բաժանի ի տեսակս:

---

13 Ց. յէութեան:
14 Այս ինքն՝ զլինելն:
15 Զ. յէլէ. Էլացիք (պատուով):
16 Զ. պաղեստենոյ պաղեստենացիք:

Սակս որոյ առ իմաստասէրս է բանս․ որ եւ սահմանեալ ասին․ սեռ է որ ըստ բազմաց եւ տարբերութեան տեսակի յառինչն իցէ ստորոգունել[17]։ Իսկ տեսակն երկուս նշա<նա>կութիւնս ունի։ Ասի իսկ տեսակ եւ կերպ, որգան՝ տեսակ անդրիանտաց[18]։ Ասի դարձեալ տեսակ ընդ սեռի, որ ի սեռէ հատանի․ յաղագս այսորիկ առ իմաստասէրս է բանս։ Ապա իսկ եւ յաղագս սեռից ասացան զտեսակս յիշեցաք ասելով․ զի սեռ է որ բաժանի ի տեսակս։ Եւ դարձեալ յաղագս տեսակաց ասել զսեռից յիշեցաք։ Զի տեսակ է որ ի սեռից հատանի․ հարկ է գիտել, եթէ որպէս յաղագս հաւր ասել՝ ի հարկէ եւ զորդոյ յիշեմք․ քանզի այն է հայր, որ ունի որդի․ եւ վասն որդւոյ ասել ի հարկէ եւ զհայր յիշեմք, քանզի այն է որդի, որ ունի հայր․ սոյնպէս եւ աստ անհնարին է յաղագս սեռից իմանալ բաց ի տեսակէ, կամ յաղագս տեսակաց բաց ի սեռէ։ Քանզի սեռ ամենեւին ի տեսակս բաժանի։ Եւ որ ոչ ունի տեսակ յիւրմէ բաժանելի, ոչ է սեռ։ Եւ տեսակս ի սեռից բաժանին․ եւ որ ոչ ունին սեռ ոչ են տեսակ։ Եւ որպէս առաջին մարդն ոչ ունէր հայր, այս ինքն է Ադամ, ոչ ասի որդի․ բայց հայր ասի, քանզի ունէր որդիս․ իսկ Սէթ եւ որդի ասի ծնողին իւրոյ, քանզի ունէր հայր զԱդամ եւ հայր ծնընելոյն ի նմանէ

---

[17] Յ․ κατηγορούμενον.

[18] Յ․ τοῦ ανδρίανιος.

*զի ծնաւ որդի. բայց Աբէլ որդի իմն ասի, քանզի ունէր հայր. եւ հայր ոչ ասի, զի ոչ ունէր որդի. այսպէս եւ ի վերայ սեռից եւ տեսակաց:*

*Առաջին սեռ, որ ոչ բաժանի ի սեռէ. եւ ոչ ունի յառաջագոյն այլ ինչ սեռ. սեռ միայն է եւ ոչ տեսակ: Եւ ասի սեռական սեռ որ եւ սահմանեալ ասին. սեռական սեռ է, որ ոչ լիցէ տեսակ, վասն ոչ ունելոյ ի վերայ նորա սեռ. իսկ որ ի նմանէն բաժ(ան)ին՝ տեսակս. եթէ ունեցին ի ներքոյ այլ ինչ տեսակ ի նոցանէ բաժանեալս եւ տեսակս լիցեն կանխագունից նոցա, այսինքն որ ի վերուստ յորոց հատանին. եւ սեռ որ ի նոցանէն, այսինքն է ի ստորագունիցն, եւ ասին սեռ եւ տեսակ ի միմեանց բաժանեալ: Իսկ տեսակս յետինս եւ ստորագոյնս*[19] *որ ոչ ունին ի ներքոյ այլ տեսակ, ոչ ասին սեռ, այլ տեսակ միայն, վասն ոչ ունելոյ*[20] *ի ներքոյ, որպէս ասացի, այլ ինչ տեսակ: Քանզի անհնարին է ասել սեռ, եթէ ոչ ունի ի ներքոյ իւր տեսակ ի նմանէ բաժանեալ...»:*

*Վերջին գլուխն է «Սահմանք փիլիսոփայականք» որ* կ՚աւարտի. *«վասն որոյ անբաւն ի ժամանակին է»:*

*Յովհ. Դամասկացւոյ այս գրուածքին վերջը կը գտնուի հատուած մ՚ալ, «Ճառ ինչ յաղագս բնութեան մարդոյ, բովանդակեալ ի քառեակ եւ կէս թերթս. գուցէ նոյն*

---

[19] Յ. *κατώτερα.*

[20] Զ. *ունելով:*

Յովհ. Դամասկացւոյ», ինչպէս կը գրէ Հ. Գ. Զարբհանալեան (Մատենադարան, 579), յառաջ բերելով Երուսաղէմի Թ. 898 ձեռագրին բովանդակութիւնը: Այս հատուածը կը գտնուի նաեւ Տիւբինգէնի Թ. 74ի մէջ եւ Վենետիկի «Ժողովածու հին Քեր.» ձեռագրին մէջ (էջ 254—258): Ֆինկ — Գեանջեցեան իրենց ցուցակին մէջ կը համարին Դամասկացւոյ գրութեան Խ. գլուխը եւ կը համեմատեն յունարէնի Ծ. հատուածին հետ դիտողութեամբս. „beträchtlich abweichend" այսինքն «զգալի շեղումներով»: Յամենայն դէպս, եթէ Դամասկացւոյ ըլլար այս հատուածը, «Ցանկ մակագրութեանս» կազմողը պիտի անցնէր իր ցանկին մէջ:

Տիւբինգէնի ձեռագրին մէջ, խորագրին ներքեւ, կցած է Սմբատ Գունդստաբլ, ձեռագրին ստացողը, ինքնագիր եւ չափական տողերս.

Զմեկնութիւն ստորոգութեան
Ժ. սեռից տարբերութեան
Համառօտեալ սատ կարճաբան
Դամասկացի սուրբ Յոհան.
Զորս ընկալա գլոյս ընդ մըթան
Խաւար մտաւքս 'վ ածի ի բան.
Սմբատ անունս հայկազան
Եւ Գունդըստայ(պ)լ Հայոց զնդեան
Զձեզ աղաչեմ զամենեսեան,
Զի ուժն է սա իմաստութեան
Եւ ճան(ապ)արհ խոր գիտութեան:

*Թէ ի՞նչ աղբիւրէ իմացած է Հայոց սպարապետը, թէ գրուածքիս հեղինակը «Դամասկացի սուրբ Յոհանն» է, ինծ անծանօթ կը մնայ:*

Ձեռագիրք: *Տիւբինգէն, Թ.* 74, 1*ա*—35*բ* (*ԺԳ*)[21]: *Դաղեան, Թ.* 91, 344*ա*—358*ա* (*ԺԷ*)[22]: *Նոր-Ջուղայ, Ամենափրկիչ, Թ.* 13, 307*ա*—311 (*ԺՁ*)[23]: *Երուսաղէմ, Թ.* 898, 313*բ*—361 (1619)[24]: 925 (1634): 1213 (1635)[25]: *Վենետիկ, Մխիթ. Մատենադարան, «Ժողովածոյ հին Քեր.»*[26]:

*Յոյն բնագիրն՝* MG. 94, *էջ* 538 *եւ շար.*:

Բ. Աղբիւր Գիտութեան: *Յովհաննէս Դամասկացւոյ գլխաւոր գրուածքն է այս. զոր գրեց իր եղբօր Կոզմաս Մայումեցւոյ եպիսկոպոսի խնդրանքով: Ինչպէս*

---

[21] Verzeichnis der armenischen Handschriften der Königlichen Universitätsbibliothek zu Tübingen, von F. N. Finck und L. Gjandschezian. Tübingen 1907. S. 111.

[22] *Յ. Յ. Թօփճեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Դաղեան Խաչիկ վարդապետի. Մասն Ա., Վաղարշապատ* 1898, *էջ* 106:

[23] *Ս. Տէր-Աւետիսեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Նոր-Ջուղայի (անտիպ):*

[24] *Սահակ Կաթողիկոս Խապայեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Ս. Յակոբեանց Մատենադարանին յԵրուսաղէմ (անտիպ): Հմմտ. Զարբհանալեան, Մատենադարան, էջ* 669:

[25] *Տ. Սաւալանեան, Ցուցակ ձեռագրաց Ս. Յակոբեանց յԵրուսաղէմ (անտիպ):*

[26] *Ցուցակ ձեռագրաց Մխիթ. Մատենադարանին Վենետկոյ, կազմուած, ինչպէս կը կարծուի, Հ. Յ. Զօհրապեանէ. անտիպ: Այս ձեռագիրն է զոր կը յիշեն* Quadro *եւ ՆՀԲ. հեղինակները: Այս տեղ կը գտնուի նաեւ Եւկլիդեայ Երկրաչափութիւնը: Ձեռագիրս Սուքրեանի եւ Զարբհանալեանի անծանօթ մնացած է:*

իր Թղթին մէջ կը յայտարարէ Դամասկացին, գրուածքս կը բաղկանայ երեք մասէ. ա. Տրամաբանութիւն կամ Ներածութիւն փիլիսոփայական, բ. Գիրք Հերձուածոց. եւ գ. Բացատրութիւն ուղիղ հաւատոյ[27]: Սիմէոն Պղնձահանեցի, որ թարգմանած է զայս վրացերէնէ, հանդերձ առ Կոզմաս ընծայական թղթով, տուած է միայն Ա. եւ Գ. մասերը, իբրեւ Ա. եւ Բ. հատորներ, առանց որ եւ է խօսք ընելու, թէ ինչո՞ւ դուրս թողուցած է Բ. մասը: Առանց տարակուսի չէ գտած զայն իր վրացերէն օրինակին մէջ, եւ եթէ կար իսկ հոն, աւելորդ համարած է, նկատելով թէ նման գրուածք մը, «Գիրք Հերձուածոց», գոյութիւն ունի արդէն հայերէն թարգմանութեամբ, կատարուած Յովհ. Դամասկացւոյ գլխաւոր աղբիւրէն՝ ուղղակի Եպիփան Կիպրացւոյ գրութենէն[28]: Կ'երե–

---

[27] Յ. Դամասկացի իր Ընծայականին մէջ կը գրէ, ըստ թարգմանութեան Սիմէոնի. «Յառաջագոյն զհելլենացւոց իմաստնոցն առադրեցից, այլ զընտրեալսն ի նոցանէ... եւ զկնի նոցա կարգեցից զաստուածատեաց հերձուածոց բարբանջմունսն. որպէս զի ծանօթութեամբ ստութեանց նոցա առաւել խնդրողք եւ բարեկամք լինիցիմք ճշմարտութեան որպէս ոսկեհուռն զարդուց»:

[28] Կարապետ Տէր–Մկրտչեան, Die Paulikaner im byzantinischen Kaiserreiche. Leipzig 1893. S. 36—37 յայտնեց այն կարծիքը, թէ «Գիրք Հերձուածոցը», զոր հրատարակեց Միաբան, Յովհ. Դամասկացւոյ այս մասին թարգմանութիւնն ըլլայ: Բայց ինչպէս ցոյց տուին Հ. Յ. Տաշեանի քննութիւնները, Հերձուածոց գիրքը Եպիփանի Համառօտութենէն թարգմանուած է, ուղղակի յոյն բնագրէ. հմմտ. Հանդէս Ամսօրեայ, 6 (1892), 289—295, 321—326 = Մատենագր. մանր Ուսումնասիրութիւնք, Ա., 76—146:

*ւայ թէ իրեն անծանօթ մնացած է Բագարատ Մամիկոնեանի Ա. Մասին Թարգմանութիւնը:*

ԳԻՐՔ ՊԱՐՈՒՆԱԿՈՂ ՕԳՏԱԿԱՐ ԳԻՏՈՒԹԵԱՆՑ ՍՐԲՈՅՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԴԱՄԱՍԿԱՑՒՈՅ, ՈՐ ՄԱԿ ԱՆՈՒԱՄԲ ՅՈՐՋՈՐՋԻ ԽՈՂՈՎԱԿ ՈՍԿԵԱՑ:

*Թուղթ սրբոյն քաղցրաբան տեառն Յովհաննու Դամասկացւոյ առ հօր (!) Կոզմայի եպիսկոպոսին Մայումայ, ընկերոջն բազմայարգ եւ սրբակենցաղ առաւել քան զայլս ի ժամանակին յայնմիկ. պատասխանատրութիւն թղթոյ նորին որ առաքեալ էր նմա, խնդրելով ի նմանէ գրել նմա զբանս (զ)այսոսիկ: Պատասխանեաց զայս թուղթս համառօտ իմաստութեամբ: Ծանուցումն յաղագման իւրոյ առ այս գործ*[29]:

Պատասխանի թղթոյն Կոզմայի Մայումացւոյ եպիսկոպոսի:

*Արժանաւոր եւ աստուածապատիւ Հօրդ Կոզմայի արքեպիսկոպոսի Մայումացւոյ նուաստ կրօնաւորս Յովհաննէս, ողջոյն Տերամբ:*

*Զնեղութիւն մտաց եւ զտարակուսանս եւ զանճարութիւն լեզուոյ գիտելով յապաղէի, ով Երանելի, ձեռն արկանել ի վերագոյն քան զկար մեր գործ...:*

ՀԱՏՈՐ Ա.[30]

Սրբոյ եւ աստուածազգեաց հօր մերոյ Յովհաննու Դամասկացւոյ համառօտեալ

---

[29] *Այս խոստաբանութիւնն եւ Յանդիմանութիւնը ունի միայն Անտոնեանց Թ. 112, Թղ. 12բ:*

[30] *Բնագիրը «Հատոր Ա.» զետեղած է խոստաբանութենէն ետքը:*

բանս ի ստորոգութեանց հետորացն՝ զնոցա հանեալն ասելով. եւ ի բաց թողեալ զհակառակաբանութիւն այլոց եւ զընդունայնաբան առասպելսն. զայն յիշելով զոր ընդունի Եկեղեցի:

*Գրակ Ա. Յաղագս էութեան եւ Գոյութեան եւ Պատահման:*

*Էութիւն հասարակաց անուն է ամենայն էից. իսկ էութիւն արամատի ի յերկուս՝ ի գոյութիւն եւ ի պատահումն...:*

*Վերջին գլուխն է. «Գրակ ԽԹ. վասն անձնական միաւորութեան հոգւոյ: — Պարտ է գիտել, եթէ առանձնաւորութեամբ միաւորութիւն զմի անձն խառնեալ կատարէ զմիաւորելոցն...»: Կ՚աւարտի. «անխառն եւ անշփոթ զորակութիւնն:*

*Այսուքիկ արտաքնոց արամակեալ զկարգաւորն զրոշմելով. եւ աստուստ ի Գրոց Աստուծոյ սկսեալ: Վերջ Ա. Հատորին»:*

*Այս տեղ կը ներկայացնեմ «Ցանկն Ա. Հատորին», Վիեննայի Թ. 763էն:*

ՑԱՆԿ Ա. ՀԱՏՈՐԻ

*Ա. Յաղագս էութեան եւ գոյութեան եւ պատահման (Ա):*

*Բ. Վասն սեռի եւ սեռականագոյն սեռի, տեսակի եւ տեսականագոյն տեսակի եւ որ առ միմեանս են (Բ):*

*Գ. ,, բաժանման (6):*

*Դ. ,, պատահման (Ե):*

*Ե. ,, բաժանելոյն (Գ°):*

*Զ. ,, լոյ եւ յաղականի (5):*

*Է. ,, յարանունութեան (Է°):*

Ը. Վասն զինչ էի եւ որպիսի զինչ էի լոյ (Թ):

Թ. „ էականի եւ անէականի, սեռականի եւ անսեռականի (Ժ):

Ժ. „ գոյութեան եւ բնութեան եւ կերպարանի եւ անհատի եւ դիմաց եւ սեռի (ԺԱ):

ԺԱ. „ բաժանեցելոյ (ԺԲ):

ԺԲ. „ բնութեան առաջնոյ (ԺԳ):

ԺԳ. „ սահմանի (ԺԴ):

ԺԴ. „ համանունութեան (ԺԵ):

ԺԵ. „ փաղանունութեան (32):

ԺԶ. „ բազմանունութեան (33):

ԺԷ. „ այլ եւ այլ անուանութեանց (34):

ԺԸ. „ յարանունութեանց (35):

ԺԹ. „ տասանց ազգական ազգի, այս ինքն ստորոգութեանց (35բ):

Ի. „ համազգեաց եւ համատոյից եւ այլազգեաց եւ այլակերպից եւ բաժանման թուոց (36—37):

ԻԱ. „ յուրում է (38):

ԻԲ. „ գոյացութեան (39):

ԻԳ. „ դարձեալ վասն գոյացութեան:

ԻԴ. „ բնութեան (40):

ԻԵ. „ պատկերի, տպի եւ կերպարանի (41):

ԻԶ. „ էակի մարմնոյ, որ է անձն (42):

ԻԷ. „ դիմաց. զի դէմք երիս, սեռք եւ տեսակք եւ անձն մի են (43):

ԻԸ. „ անհատիցն (45°):

ԻԹ. „ էականի որ է անձն (46):

Լ. „ անսեռի (48):

ԼԱ. Բաժանումն էութեան եւ դպրութեան (47):

ԼԲ. Դարձեալ վասն համազգեաց եւ համանուանց, այլազգաց եւ այլ անուանց եւ այլ տեսակաց եւ որք թուով բաժանեալք են:

ԼԳ. Վասն քանակի եւ քանիօնութեան (49):

ԼԴ. „ առնչի (50):

ԼԵ. „ ոյր եւ որպիսութեան (51):

ԼԶ. Վասն տանելոյ եւ հանդիպելոյ (52):
ԼԷ. ,, անկելոյ եւ կալոյ (53):
ԼԸ. ,, ուրի (54):
ԼԹ. ,, երրի (55):
Խ. ,, ունելոյ (56):
ԽԱ. ,, ներհակաց (57):
ԽԲ. ,, ունելոյ եւ պակասութեան (58):
ԽԳ. ,, առաջնոյ եւ վերջնոյ (59):
ԽԴ. ,, յանկարծակի եւ որոյ ընդ նմա (60):
ԽԵ. ,, շարժօղն գոլոյ եւ շարժութեան (61):
ԽԶ. ,, ունելոյ (62):
ԽԷ. ,, ճառելոյ եւ անճառելոյ, որ է այո եւ ոչ (63):
ԽԸ. ,, սահմանի եւ յառաջադրութեան եւ ներքսադրեալ խորհրդոց (64):
ԽԹ. ,, անձնական միաւորութեան հոգւոց (65):

*Փակագծի մէջ առնուած թուահամարները ցոյց կու տան յունարէն բնագրի համապատասխան գլուխները. Ա.—ԺԵ. փակագծեալ թուերը կը համապատասխանեն Բազելի տպագրութեան համարներուն:*

ՀԱՏՈՐ Բ.

Սրբոյ հօրն մերոյ Յովհաննու քահանայի կրօնաւորի Դամասկացւոյ Աւանդութիւն ուղղափառ հաւատոյ:

Ա. *Որպէս զի անհասանելի Աստուած. եւ եթէ ոչ է պարտ քննել եւ խնդրել զոր ոչ է տուեալ մեզ ի մարգարէիցն եւ յառաքելոցն:*

*զԱստուած ոչ ոք ետես երբեք բայց միածինն Որդի որ ի ծոց Հօր, նա պատմեաց մեզ: Անպատմելի է Աստուած եւ անհաս-*

նելի. զի ոչ ոք գիտէ զՀայր, բայց միայն Որդի...:

Վերջին պրակն է՝ «Ծ. Վասն յարութեան ամենեցուն: — Այլ հաւատամք ի յարութիւնն, վասն զի ստուգապէս լինիցի յարութիւն մեռելոց...»: Կ՚աւարտի. «եւ զանվախճան խնդումն եւ զուրախութիւնն կրեն ի նմանէ»:

«Կատար վաստակոց Յովհաննու Դամասկացւոյ կոչեցելոյն Մանսուր. համառօտ ասացեալ նորոյ շնորհաց աւանդութիւնք:

Եւ թարգմանեալ Սիմէոնի[31] ի Վրաց լեզուէ ի հայ բարբառ»:

Ձեռագիրք: Երուսաղէմ Թ. 1297 (1363): 768: 1035: Էջմիածին Թ. 63, 8ա—110բ (ԺԶ): 101, 1ա—209ա (1740): 102, 3ա—98բ (ԺԸ. պակասաւոր): 103, 1ա—178 (1729): 116, 1—243 (ԺԶ): Վիեննա, 763, 6ա—58ա (ԺԸ): Բ. օրինակ (1836)[32]: Զմմառ, Անտ. 112 (1707): Թաւրիզ, Զ., 51, 192ա—221բ (1738, Բ. հատորի, Ա.—

---

31 Այսպէս Էջմ. 63: Վենետիկի օրինակն ունի. «Սիմէոնի» (Զարբանալեան, Մատենադարան, 578): Վիեննայի Թ. 763 կը կարդայ. «Ի Սիմէօնէ»:

32 Այս Բ. օրինակը, որ տակաւին չէ համարագրուած, օրինակած է տիրացու Սերովբէ Բաճեան ի Կարին 1836ին, յայտարարութեամբս, թէ «Զսրբոյն Յովհաննու Աստուածաբանութեանն բաց զբուն իմաստ բանին ամբողջ պահելոյ, գրեթէ զոճ չարադրութեան գլխովին փոխեցաք, զաւելորդ կրկնաբանութիւնս թողլով ի տեղի նոցա զերիս կամ զչորս կէտս եդաք, զի ծանիցեն վերծանողք եթէ բարձեալ է անտի հատուած ինչ... եւ բազում ուրեք բառս ինչ կամ հատուածս յաւելաք ի բացատրութիւն միոյ բանին, զորս եւ փակագծիւ եդաք» են:

ԺԸ. պրակք. Աճառեան, Ցուցակ, էջ 117)։ Սեւան, 58, էջ 25 (1757. Բ. Հատոր. Ն. Մառ, Ցուցակ, էջ 25)։ Երեւան, Պետ. Թանգ. 835, էջ 645 (1735)։ Վենետիկ, Ա. օրինակ Մխիթարեանց, յամէ 1706, օրինակուած ՉՁԸ (1339) Թուականով ձեռագրէ։

Յոյն բնագիրը՝ MG. 94, էջ 517—1228։

Հ. Գ. Զարբհանալեան[33] կը գրէր ի տես այս Յիշատակարանին. «Չենք կրնար որոշել միայն անուամբը, թարգմանչին անձը յայտնի, ինչպէս եւ ոչ ժամանակը. ասանկ ալ թէ ամբողջ գրոցը թարգմանիչն է, թէ անոր մէկ մասին միայն»։ Աւելորդ էր սակայն այս վարանքը. քանի որ Հեղինակը ունէր իր տրամադրութեան տակ գրուածքիս մէկ ձեռագիրը յամէ 1706, որ օրինակուած է 1339ին գրուած գաղափար-օրինակէ։ Ունենալէ ետքը գրուածքիս համար այս կանխագոյն եղրը, դիւրին էր յիշել, թէ համանուն թարգմանիչ մը 1248ին թարգմանած է, նոյնպէս «ի Վրաց լեզուէ» Պրոկղի Աստուածաբանական Տարերքը։ Երկու համանուն թարգմանիչներս, որոնք վրացերէնէ կը կատարեն իրենց թարգմանութիւնները, հարկաւ մի ըլլալու են։ Թէ ամբողջին թարգմանիչը Սիմէոնն է, կը թուի ինձ անկասկածելի, որովհետեւ չկայ որ եւ է կռուան թարգմանութեանս մէջ երկու ձեռք նկատելու։ Սիմէոն Պղնձահանեցի պէտք է

[33] Մատենադարան, էջ 578—579։

թարգմանած ըլլայ գրուածքս 1248էն յառաջ, որովհետեւ նա այս տարւոյն կը զգար ինք զինքը ծեր, տկար անձամբ, մտքով եւ աչքով:

Թարգմանութեանս հնութեան համար վկայ կրնանք կոչել նաեւ Գրիգոր Անաւարզեցի կաթողիկոսը (1292—1307), որ իր իբր 1305ին առ Հեթում գրած թղթին մէջ երկիցս կը յիշէ «Դամասկացին», ակնարկելով, ինչպէս կը թուի, Յովհաննէս Դամասկացւոյ այս Աւանդութիւնն ուղղափառ Հաւատոյ. կը գրէ. «Զայս ամենայն պարտ է զմտաւ ածել եւ զիմ Թղթոցն գրեանքն եւ զԴամասկացոյն Երկու Բնութեանց գրոյցն... եւ զԴամասկացոյն գրոյցն վասն Խաչեցարին. եւ զտէր Ներսէսոյն...»[34]:

«Դամասկացոյն Երկու Բնութեանց գրոյցն» կը համարիմ «Աւանդութեան» ԽԶ. պրակն «Վասն երկուց բնութեանցն» (տես եւ յաջորդ ԽԷ.—ԾԲ. պրակները): Իսկ «Դամասկացոյն գրոյցն վասն Խաչեցարին» առանց տարակուսի նոյն գրոց ԾԳ. պրակն է, որուն խորագիրն է «Յաղագս երրորդ (երից) Սրբասացութեան, զոր յաւելուն»: Այս խնդրոյն մասին Դամասկացի ասկէ յառաջ գրած մասնաւոր թուղթ մ'ալ ունի[35]:

---

34 Կղեմէս Գալանոս, Միաբանութիւն..., Ա., էջ 443:

35 MG. 95, էջ 21—62: Վրացերէն թարգմանութիւնն Христ. Вост. (1912) 13:

*Գրուածքս «Անհերքելի աւանդութիւն ուղղափառ հաւատոյ» խորագրի տակ վրացերէնի թարգմանած է Եփրեմ Կրսեր: Իր թարգմանութիւնը պահուած է Եկեղ. Թանգարանի Թ.* 24 *եւ Վրաց մէջ գրականութիւն տարածող Ընկերութեան Թ.* 1358 *եւ այլ ձեռագիրներու մէջ: Նոյնը միւսանգամ թարգմանած է Արսէն Իքալթոէլի (ԺԲ. դար): Ձեռագիրք՝ Եկեղ. Թանգ.* 66: 157: 1403: *Վրաց մէջ գր. տարած. Ընկ. Թ.* 1463: 2579: *Հրատարակուած է Մոսկուա* 1744*ին*: *Նոր տպագրութիւն մը պատրաստած էր Ս. Գորգաձէ, բայց իր մահուամբ խափանուած է հրատարակութիւնը*[36]:

Գ. Նորին Յովհաննու Դամասկացւոյ Պատասխանի առ Հրեայսն:

*Զաստուածայինս զամենայն յԱստուած վստահանալ պարտ է եւ ի մարդ զմարդկայինն. եւս առաւել զմարդկայինն յԱստուած յանձն առնելով...:*

Ձեռագիրք: *Երուսաղէմ Թ.* 1297 (1363): 768: 1035: *Էջմիածին, Թ.* 63, 115*բ*—156*ա*: 103, *էջ* 188—257: *Թաւրիզ, Բ.*, 11, 178*բ*—218*բ* (1630. *Աճառեան, Ցուցակ, էջ* 54*բ*)[37]: *Փարիզ*, Bibliothèque nationale, 306, 319—

[36] *Հմմտ. Ս. Գորգաձէ, Փիլիսոփայութեան գլխաւոր ճիւղը Վրաց մատենագրութեան մէջ. ի Թերթին Զվենի մեծնիէրա (Մեր Գիտութիւնը), Տփղիս Թ.* 4—5, *էջ* 1—16 *(վրացերէն): Ի. Ջաւախով, էջ* 12. *Պերաձէ, էջ* 240:

[37] *Խորագրուած է. «Հարցումն հրէի միոյ եւ պատասխանի Յովհաննու Դամասկացւոյ»:*

342 (Macler, Catalogue, p. 158)[37]: Ղալաթիա, Ազգ. Մատ. Թ. 77, էջ 1—86 (ԺԸ):

Հաւանօրէն թարգմանուած վրացերէնէ: Բայց G. Peradze չէ գտած նման գրութիւն մը Վրաց գրականութեան մէջ:

Այսպիսի գրուածք մը Յովհ. Դամասկացւոյ անուամբ անծանօթ է: Բայց կը յիշուի Յերոնիմոս Երուսաղեմացի քահանայի Հարցմունք եւ պատասխանիք ընդդէմ Հրէից, որմէ հատուածներ պահուած են (MG. 40, 847—866): P. Batiffol, Jérôme de Jerusalem d'après un document inédit: Revue des questions historiques 39 (1886) 248—255, ջանաց ցոյց տալ թէ սա է 740ին յիշուած Յերոնիմոս քահանայն: Իբր 700ին լոյս տեսաւ ուրիշ գրուածք մ'ալ Dialoques Papisci et Philonis Iudaeorum cum quodam monacho. որուն յոյն բնագիրը հրտ. Mc Giffert, Marburg 1889ին. ասկէ ԺԵ. դարու ձեռագիր մ'ալ երեւան հանեց ի Դրեզդէն E. J. Goodspeed, Papiscus and Philo: The American Journal of Theology, 4 (1900) 796–802. Ը. դարու սկիզբը ապրած է նաեւ Ստեփանոս Բոստրացի, որ հեղինակած է Ընդդէմ Հրէից գրուածք մը ի չորս գիրս, որմէ կոչումներ ունի Յովհ. Դամասկացի. այս կոչումները ի մի հաւաքած է G. Mercati, Theologische Quartalschrift 77 (1895) 662—668. Նման գրուածք մ'ալ, Է. դարէն, հրատարակեց G. Bardy, Les trophées de Damas. Controverse judéochrétienne du septième siècle. Texte grec edité et

traduit. Patrologia Orientalis, XV, (Paris 1927) 169—232: *Թէ ստոյգ մէ մին կամ միւսն ունի՞ որ եւ է կապ Հայ բնագրին հետ, ի վիճակի չեմ ըսելու, վասն զի անմատչելի է ինձ հայերէնը:*

*Յովհ. Դամասկացւոյ այս գրուածքէն կոչում մ'ունինք Ղալաթիոյ եկեղեցւոյ Օրհնութեան գրին մէջ* (1389*էն*), *զոր հրատարակեցի Հանդէս Ամսօրեայ*, 60 (1946), *էջ* 116—117: *Այս Գիրը կը սկսի. «Ասէ ամն աստուածաբանիցն, եթէ* Զաստուածային բանս ի յԱստուած վստահանալ պարտ է եւ զմարդկայինս ի մարդիկ, մանաւանդ թէ զմարդկային *բան եւ գործ ըստ այսմ օրինակի* վստահանալով յԱստուած...»: *Այս տողերը գրուածքիս սկզբնաւորութենէն առնուած են:*

Դ. Նորին հօրն մերոյ Յովհաննու Դամասկացւոյ խրիսունեկտար կոչեցելոյ բանք վասն հաւատոյ եւ ընդդիմադրութիւն Նեստորիոսի:

*Պարտ է մեզ փրկելոցս Աստուծոյ ի ձեռն միածնի Որդւոյն իւրոյ, զոր ետ մեզ ի փրկանս մեր ըստ աստուածային բանի, հաւատալ ի Հայր...:*

Ձեռագիրք: *Երուսաղէմ Թ.* 1297 (1363): 768: 1035: *Էջմ. Թ.* 63, 156*ա*—171*ա*: 103, *էջ* 258—283: *Ղալաթիա, Ազգ. Մատ. Թ.* 77, *էջ* 110—124:

*Յոյն բնագիրը՝ περὶ πίστεως κατὰ Νεστοριανῶν, հրատարակեց* Diekamp *ի Թեր-*

*թին* Theologische Quartalschrift 83 (1901) 560—583:

*Վրացերէն թարգմանութիւն մը կատարած է Արսէն Իքալթոէլի. Եկեղ. Թանգարան, Թ.* 205, 397—403: *Վրաց մէջ գրակ. տարածելու Ընկերութեան Թ.* 1463, 103—108: *Հմմտ.* Peradze, *անդ, էջ* 240:

Ե. Յովհաննու Դամասկացւոյ խրիսունեկտարի բանք ընդդիմադրականք ի քակտումն հերձուածոց Յակոբիկ Ասորւոց:

*Եւ ոչ բարին բարի է, սակայն, յորժամ ոչ բարւոք գործեսցի: Բանք իմաստնոցն է. այլ վկայէ Առաքեալն...:*

Ձեռագիրք: *Էջմիածին, Թ.* 63, 173*ա*—185*ա*: 103, *էջ* 284—307: *Երուսաղէմ, Թ.* 768: 1035: *Ղալաթիա, Ազգ. Մատ. Թ.* 77, *էջ* 145—176:

*Վրացերէն թարգմանութիւն մը կատարած է Արսէն Իքալթոէլի. Հմմտ. Ջաւախով, անդ, էջ* 12. *Պերաձէ, անդ,* 241:

*Յոյն բնագիրը Վատիկանի յունարէն Թ.* 1672 *ձեռագիրին (ԺԳ. դարէ) ունի խորագրով.* *Τοῦ αὐτοῦ Ἰωάννου μονάχου, πρεσβυτέρου Δαμασκηνοῦ ἐπονομασθέντος Χρυσορρόα, λόγος πονηθεὶς κατὰ τῆς θεοστυγοῦς τῶν Ἰακωβιτῶν θρησκείας.* *Հրտ.* MG. 94, *էջ* 1436—1501. *Հմմտ.* Dickamp, Theolog. Quartalschrift, 84 (1901) *էջ* 595—599:

*Յովհաննէս Դամասկացի, որ վերադոյն կոչուած էր «Խողովակ ոսկեայ», այս տեղ*

*եւ վերը կ'անուանուի «Խրիստոնեկտար»․ յունարէնն ունի* Χρυσορρόας *«Ոսկեհոս»․ որուն բերնէն ոսկի կը հոսէ, նմանութեամբ «Ոսկեբերանի»* :

Զ․ Նորին Յովհաննու Դամասկացւոյ վասն որ ի Քրիստոս երկու բնութեանց եւ այլ ամենայն բնութեանց ինքնութեանց համառօտեալ :

*Որք երկու բնութիւնս եւ մի անձն զՏէրն մեր Յիսուս Քրիստոս խոստովանեսցին, կրկին եւ բաժանեալս պարտին խոստովանել զբնական ինքնութիւնսն․․․* :

Ձեռագիրք : *Էջմ․ Թ․* 63, 185*ա*—197*բ* : 103, *էջ* 307—329 : *Ղալաթիա, Ազգ․ Մատ․ Թ․* 77, *էջ* 177—208 :

*Յունարէն բնագիրը՝* MG. 95, *էջ* 127—186 : *Հմմտ․* Diekamp, 558 :

*Հայերէնը «համառօտեալ» է կ'ըսուի : Վրացերէն թարգմանութիւն մը պահուած է Տփղիսի Եկեղ․ Թանգարանի Թ․* 267 *եւ* 853 *ձեռագիրներու մէջ․ հմմտ․ Ջաւախով, անդ, էջ* 12 :

Է․ Սրբոյ հօրն մերոյ Յովհաննու Դամասկացւոյ ոգեալ ներբողեան ի Ննջումն ամենասուրբ Աստուածածնին եւ միշտ Կուսին Մարիամու : *Զի՞նչ տացուք քեզ, ով Տիրուհի, կամ [զ]որպիսի՞ զօրութեամբ պսակեսցուք զքահանայական եւ զխառաւոր զլուխ քո․․․* :

Ձեռագիրք : *Վատիկան, Բորգեան Թ․* 41, 57*բ*—63*ա* (*ժԸ․* Tisserant, Codices armeni,

էջ 69): Զմմառ, թ. 86, 82բ (ԺԸ. Քէչիչեան, Ցուցակ, անտիպ):

Յոյն բնագիրը՝ Migne 96, էջ 699—722. Հայերէնը կը սկսի էջ 701, § 3էն:

Կայ նաեւ վրացերէն թարգմանութեամբ՝ Երուսաղէմի Ս. Խաչ վանքի վրացերէն թ. 2: Տփխիսի Եկեղ. Թանգարանի թ. 143 (Ժ. դար): Հմմտ. Ջաւախով, անդ, էջ 14 եւ Պերաձէ, անդ, 24):

Այս Ա—է գրուածքներէն Բ—Դ, այն է Աղբիւր գիտութեան, Ա. եւ Բ. հատոր, Պատասխանի առ Հրեայս եւ Բանք վասն հաւատոյ եւ ընդդիմադրութիւն Նեստորիոսի կը գտնուին Երուսաղէմի թ. 1297ի մէջ արդէն 1363ին: Ասոնք հաւանօրէն միաժամանակ թարգմանուած են Սիմէոն Պղնձահանեցիէն վրացերէն բնագրէ: Ե—է գրութեանց թարգմանիչն, ժամանակը եւ ի՞նչ բնագրէ թարգմանուած ըլլալը կը մնան ինձ անծանօթ:

Յովհ. Դամասկացւոյ յօրինած Երգերէն ինչ ինչ ունինք հայերէն թարգմանութեամբ Հայ-հոռոմներու ժամագրքին մէջ: Այս մասին առիթ պիտի ունենանք խօսելու ուրիշ տեղ:

ԱՆՀԱՐԱԶԱՏՔ

Ը. Նորին Բանք յաղագս Հռովմայեցւոց, թէ որպէս եղեն անմիաբանք ի սոցանէ չորից եկեղեցեաց: Զսա Եւստրատի գրեալ Նիկիոյ մետրոպոլիտն:

*էր երբեմն զի հանդարտութիւն ունէր եկեղեցական անդորրութիւն եւ միոյ եւ նոյն յամենեցունց պաշտելոյ Աստուծոյ...:*

Ձեռագիրք: *Էջմիածին, Թ.* 63, 111*ա*—115*բ*: 103, *էջ* 179—187[38]: 116, 244*բ* (*վերջը թերի*): *Երուսաղէմ, Թ.* 768: 1035: *Ղալաթիա, Ազգ. Մատ. Թ.* 77, *էջ* 87—109 (*ԺԸ*):

*Ճիշդ նկատած է Թարգմանիչը, թէ «զսա Եւստրատի գրեալ Նիկիոյ մետրոպոլիտն»: Արդեամբք ալ գրած է Նիկիոյ Եւստրատիոս մետրոպոլիտը բազմաթիւ հակաճառութիւններ Լատիններու դէմ, անոնցմէ չորսը հրատարակած է Դեմետրակոպուլոս Ἐκκλεσ. Βιβλιοθήκη* 1 (*Լայպցիգ* 1866) 47—127: *Իր մասին հմմտ.* K. Krambacher-Erhard, Geschichte der byzantinischen Literatur, München 1897, *էջ* 85:

Թ. Նորին Յովհաննու Դամասկացւոյ Պատասխանիք առ Հայս. բանք համառօտեալք:

*Եւ արդ իմ մինչեւ ցարդ ես ընդ համազգեացն իմոց խօսելով Ասորւոց, ցաւովք սրտի, սիրով, աղաչանօք խրատել աշխատասիրեցի...:*

---

[38] *Յովհաննէս Լեհացի* (1729) *կը գրէ Էջմ.* 103*ի յիշատակարանէն ետքը* (*էջ* 178)*. «Բանքս որք զկնի հետեւին, եւ մակագրի ի նոսին անուն Ս. Յոհաննու Դամասկացւոյ, ոչ համարիմ թէ նորա իցեն. այլ այլոց: Բայց ընդ նորին բանից օրինակեցի որպէս գտի յԱրեւելս. զի կարիցեմք եւ յայնց առնուլ զնպաստ ճշտութեան հաւատոյս մերոյ կաթողիկէի»:*

Ձեռագիրք: *Էջմիածին, թ.* 63, 198*ա*—228*բ*: 103, *էջ* 330—381: *Ղալաթիա, Ազգային Մատենադարան, թ.* 77, *էջ* 209—277 (*ԺԸ.*):

Հրատարակութիւն: *Բարգէն Վ. Կիւլէսէրեան, Հին էջեր. Յովհաննէս Դամասկացի եւ Հայ Եկեղեցին: Լոյս Շաբաթաթերթ, Կ. Պոլիս,* 1905, *էջ* 1008—1012, 1065—1066 (*Նախաբան Հրատարակչին*), 1066—1068, 1112—1115, 1906, *էջ* 45—48, 116—119, 213—216, 355—359, 474—479, 589—592, 810—815, 957—960, 981—984, 1075—1079, 1124—1126, 1196—1199:

*Առանց տարակուսի այս հակաճառութեան հեղինակն ալ նոյն Եւստրատիոս Նիկիոյ մետրոպոլիտն է. այսպիսի գրուած մը հրատարակեց Դեմետրակոպուլոս* Ἐκκλησ Βιβλιοθήκη 1 (1866) 127—198· *իր այս գրուածքը կասկած յարոյց իր ուղղափառութեան դէմ. ի պաշտպանութիւն գրեց իր* Ἐξομολόγησις (1117*ին*), *հմտ. Դեմետրակոպուլոս, անդ, էջ ԺԱ—ԺԵ: Կրումբախեր, անդ, էջ* 85: *Կիւլէսէրեան, անդ, էջ* 1010, *նկատի առնելով, որ գրուածքիս մէջ «Անանիա, Տօնապատճառ, Մաթուսիկ» անունները կը յիշուին, կը գրէ. «Այս գրուածքը ամբողջովին կամ իր ինչ ինչ մասերով կրնայ Սուտ-Դամասկացիի գործ մը ըլլալ»:*

*Դամասկացւոյ վերագրուած այս «Պա—*

*տախանեաց» գէմ գրեց անանուն մը՝ «Լուծումն գրպարտութեանց Յովհ. Դամասկացւոյն», որ պահուած է Երուսաղէմի Թ. 1040 (յամէ 1737) ձեռագրին մէջ։*

*Էջմ. 103ի գրիչը Յովհաննէս եպիսկոպոս Լեհացի 1729ին կը ծանօթագրէ էջ 381. «Թէ ո՞վ իցէ այս Յոհաննէս Դամասկացի ոչ գիտեմ. զի սուրբն այն չէ (որպէս համարիմ), որ զովլի յԵկեղեցւոյ կաթուղիկէէ»։ Նոյնը նաեւ Ղալաթիա, Ազգ. Մատ. Թ. 77, էջ 277. յառաջ բերուած Լոյս, 1905, էջ 1066։*

ԵՐԿՐԱՑԱԿԱՆՔ

1. Յովհաննու Դամասկացւոյ Բանք վասն Դրախտին։

*Այս խորագրով նոտրագիր գրուածք մը կը յիշուի Վեննետիկի Մխիթ. Ձեռագրաց հին ցուցակի մը մէջ, զոր ունիմ ձեռքիս տակ։ Հմմտ. նաեւ Զարբհանալեան, Մատենադարան, էջ 579։*

*Յովհ. Դամասկացւոյ յունարէն գործերուն մէջ չի յիշուիր այսպիսի ինքնակաց գրուածք։ Բայց ունի Յ. Դամասկացի իր Աւանդութիւն ուղղափառ հաւատոյ գործին մէջ գլ. ԻԴ. «Վասն դրախտին։ — Որով կամեցեալ Աստուծոյ երեւելի եւ աներեւոյթ յէութենէն ստեղծանել զմարդն ըստ պատկերի...» սկզբնաւորութեամբ (Ձեռ. Վիեննայի, Թ. 763, թղ. 28ա—բ)։*

2. Բան վասն նախախնամութեան Յօհան Դամասկացւոյ». *Կը յիշուի Էջմիածնի Կար. 55 նօտրագիր ձեռագրին մէջ: Այլուստ անծանօթ իբրեւ ինքնակաց գործ: Բայց ունի Յ. Դամասկացի իր Աւանդութիւն ուղղափառ հաւատոյ գործին մէջ, գլ. ԽԲ. «Վասն Նախախնամութեան: — Նախախնամութիւն այս փութացութիւն...» (Վիեննա, Թ. 763, Թղ. 33բ—34ա):*

3. Նկարագրութիւն հոգեւոր վարուց Յովասափու որդւոյ թագաւորին Հնդկաց. գրեալ Յովհաննու կրօնաւորի:

*Այս Յովհաննէս կրօնաւորը ոմանք համարեցան Դամասկացին. բայց ներքին փաստերն ցոյց կու տան թէ գրուածքիս հեղինակը Դամասկացիէն դար մը յառաջ ապրած ըլլալու է:*

*Հայերէն թարգմանութիւնը լոյս ընծայեց Մեսրոպ Վ. Տէր-Մովսէսեան, Վաղարշապատ* 1897. *Քննութիւն մը այս առթիւ՝ Հ. Յ. Տաշեան, Հանդէս Ամսօրեայ,* 1898, *էջ* 115—118:

4. Վկայաբանութիւն Ս. Արտեմիոսի:

*Յովհ. Դամասկացւոյ վերագրուած է «Վարք Ս. Արտեմեայ», հրատարակուած* A. Mai, Spicilegium Romanum, IV, 340—397, *նաեւ* Acta Sanctorum Octebris. VIII, 859—884 *եւ* MG 96, 1251—1320: *Բայց, ինչպէս ցոյց*

*տուաւ* J. Langen, Johannes von Damaskus, Gotha 1879, *հեղինակն է Յովհաննէս Ռոդացի, Թ. դարուն:*

*Հայերէն ունինք կրկին խմբագրութեամբ.*

ա. վկայաբանութիւն Ս. Արտեմիոսի: — *Ի ժամանակս ամբարշտին Յուլիանոսի էր սուրբն Արտեմիոս մեծաւ փառօք պատուեալ ի մեծ Թագաւորէն Կոստանդիանոսէ՝ այլեօք ծերացեալ...:* Վերջ՝ *բազում ողբօք եւ պաղատանօք հագիւ ողջացան...:*

Ձեռագիր. *Պարիս*, Bibl. National, cod. arm. 115, 131*բ* (*ԺԳ.*):

բ. վկայութիւն մեծի մարտիրոսին սրբոյն Արտեմիոսի: — *Յետ համբարձման Տեառն մերոյ եւ փրկչին յերկինս, նորին աշակերտացն իսկ եւ առաքելոցն ընդ տիեզերս ամենայն զաւետարանն արկանելով...:*

Վերջ. *եւ այսպէս մնաց մինչեւ ցարդ ի տաճար Մկրտչին քահանայական նշխարքն որպէս գանձարան անծախելի զոյգ պահելով ի փառս...:*

*Պարիս*, Bibl. nationale cod. arm. 118, 78*ա*—87*բ* (1307):

*Յոյն բնագիրն՝* MG 115, 1160—1212 (B. H. G. 172):

5. Ճառ յԱյլակերպութիւնն Քրիստոսի:

Հ. Բ. Սարգիսեան[39] ջանաց ապացուցանել, թէ Մ. Խորենացւոյ ընծայուած Վարդավառի ճառին հեղինակը աչքի առաջ ունեցած է Յովհ. Դամասկացւոյ Այլակերպութեան ճառը: Նման գրութիւն մը հայերէն թարգմանութեամբ չէ հասած մեզի, պէտք է ենթադրել, թէ հայը ծանօթ եղած է յոյն բնագրին:

---

39 Մովսէս Խորենացւոյ կարծեցեալ Վարդավառի ճառն եւ Ս. Յովհաննէս Դամասկացի. Բազմավէպ 1889, էջ 305—313, 353—361:

## Գ. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԼԻՄԱԿՈՍԻ ՍԱՆԴՈՒԽՔ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԵԼԻՑ

*Սինայի ապառաժուտ լեռ մըն է Եգիպտոսի պատկանող սեպաձեւ Սինայի թերակղզւոյն վրայ, Կարմիր ծովու հիւսիսը, ընդ մէջ Սուեզի ծոցին եւ Ակաբայի: Այս լեռան արեւելեան ստորոտը կը գտնուի Ս. Կատարինէ յունական վանքը. իսկ հարաւային կողմը Սինայի թերակղզւոյն անապատը: Է. դարու առաջին կէսին այս վանքի միանձն եւ ապա աբբայն էր Յովհաննէս, այս պատճառաւ ալ կոչուած* Սինայեցի: *Զինքը անուանած են նաեւ «Սքոլաստիկոս» իր գիտնականութեան համար. բայց ընդհանրապէս կը ճանչցուի* Կլիմակոս *յորջորջումով, այսինքն Յովհաննէս որ գրեց Կլիմաքս (Սանդուխք) գիրքը:*

*Յովհաննէս ծնած է իբր 579ին. 595ին իբր 16ամեայ, մտաւ Սինէական վանքը, ուր Մարտիրոս աբբային առաւ զինքը իր մասնաւոր խնամքին տակ: Երբ վախճանեցաւ Մարտիրոս, Յովհաննէս առանձնացաւ նոյն լեռան քղանցքին մենարան մը, անձնատուր աղօթքի եւ նկատութեան: Իբր 639ին վերստին վանք կոչուեցաւ, ուր եւ ընտրուե-*

ցաւ արքայ․ բայց երկար չվարեց այս պաշտօնը․ մեռաւ 649ին առանձնութեան մէջ[1]։

Յովհաննէսի բարեկամն էր Սինայի լեռնէն ոչ հեռու, Կարմիր ծովի եզերքը հիմնուած Ռայթու վանքի Յովհաննէս վանահայրը։ Սա խնդրեց իրմէ հոգեշահ գիրք մը, որ ուղեցոյց ծառայէր միանձնական կոչման հետամուտներուն։ Այս առիթով գրեց Յովհաննէս իր Կլիմաքս կամ Սանդուխք աստուածային ելից հոգեպարար գիրքը։ Ինչպէս աստուածատեսն Մովսէս Սինայի լեռան վրայ ընդունեցաւ տասնաբանեայ պատուիրանները, նոյնպէս ես կ՚արձանագրեմ, կ՚ըսէ, այս տեղ ինչ որ տեսայ Սինէական լեռան առաքինի միանձնաւորներու վրայ։ Այս հոգեշահ խրատները կարող են կատարելութեան ձգտող կրօնաւորներուն համար ինչպէս սանդուխ նկատուիլ, նման այն երկնային սանդուխին, զոր տեսաւ Յակոբ իր երազին մէջ։ Այս նկատումով անուանած է հեղինակը իր աշխատութիւնը «Սանդուխք աս-

---

[1] Անբաւական աղբիւրներու վրայ յեցած ընդհանուր համոզումն էր, թէ Յովհաննէս Կլիմակոս կ՚ապրէր մօտաւորապէս 525—600ի շրջանին։ F. Nau, Note sur la date de la mort de S. Jean Climaque: Byzantinische Zeitschrift 11 (1902), 35—37, հիմնուած Անաստաս մենակեացի «Պատմութիւնք այլ եւ այլք վասն սրբոց հարցն որ ի Սինէական լերին» գրուածքին վրայ, ցոյց տուաւ առաջին անգամ, թէ Կլիմակոս Է․ դարուն հեղինակ է, ծնած իբր 579ին եւ վախճանած մօտ 649ին կամ 650ին։ Կը պատմէ նոյն հեղինակը, թէ Կլիմակոսի կենդանութեան Ս․ Լեռս այցելած է Եղիշէ հայ սրբակեաց քահանան հայ ուխտաւորներու հետ։ Այս մասին առիթ պիտի ունենամ խօսիլ ուրիշ տեղ։

տուածային ելից»․ որուն մէն մի գլուխներն աստիճաններն են այդ Սանդուխին: Բաժնած է 30 գլուխներու․ որոնց կը յաջորդէ ինքնակաց գլուխ մ՚ալ «Բան առ հովիւն», ուր մատնացոյց կ՚ընէ հովուին իր պաշտօնին պարտքերը եւ առ այն պահանջուած սրբութիւնը:

Յովհաննէս կը գրէ պարզախօս եւ ամէնուն դիւրահասկանալի արտայայտութեամբ: Այս պատճառաւ ալ գտած է գրութիւնս ընդունելութիւն․ շատ կարդացուած է եւ արժանացած թարգմանուելու այլ եւ այլ լեզուներու:

Լուծմունքներ գրած են նախ Յովհաննէս, Ռայթուի աբբան եւ գրուածքիս խնդրողը, եւ ապա Եղիա Կրետէի մետրապոլիտը (Թ. կամ Ժ. դար)[2] եւ ուրիշներ:

Յունարէն բնագիրը լոյս ընծայեց Մատթէոս Ռադերոս Յիսուսեանը Պարիս 1633․ անկէ արտատպուած է Migne Patrologia Graeca, 88, էջ 631—1210: Այլ եւ այլ հրատարակութեանց եւ գրուածքիս նուիրուած քննութեանց մասին հմմտ․ Krumbacher եւ A. Ehrhard, Geschichte der byzantinischen Literatur, München 1897, էջ 143—144. O. Bardenhewer, Geschichte der altchristlichen Literatur, հատոր Ե., Freiburg 1932, էջ 77—82:

[2] Ունինք հեղինակէս հայերէն թարգմանութեամբ «Եղիայի ուղղափառի եւ իմաստասիրի Ասորւոյ Մեկնութիւն ճառից մեծի հռետորին Գրիգորի Աստուածաբանի», էջմ. 1480, 111բ եւ այլն:

2. Յովհաննէս Կլիմակոսի Սանդուխքը թարգմանուած է հայերէնի ԺԳ. դարու առաջին կէսին մասամբ յոյն բնագրէ եւ մասամբ վրացերէն թարգմանութենէ: Բերլինի Թ. 25 հայերէն ձեռագիրը, որ կը բովանդակէ գրուածքս, Ի. գլխոյն վերջը ունի Յիշատակարանս. «Թարգմանեալ է մինչեւ աստ ի սրբամիտ կրաւնաւորէ Մինասէ Սիւնակեցէ ի Տրապիզոն քաղաք: Իսկ աստուստ ի Սիմ(է)ոն քահանայէ կրաւնաւորէ Վրաց բարբառով»: Թէ ով է Մինաս Սիւնակեաց, այլուստ չունինք որ եւ է տեղեկութիւն: Սիմէոն անոր բնակավայրը ցոյց կու տայ Տրապիզոն, իսկ վիճակը՝ «Կրաւնաւոր» եւ «Սիւնակեաց»: Վերջինս յն. στυλίτης բառին թարգմանութիւնն է. սիւնակեացներ կային դեռ այս դարուն Արեւելք[3]. բայց հոս «Սիւնակեաց» իմանալու է, ըստ ամենայն հաւանականութեան, «կրօնաւոր» բառին հոմանիշ. ինչպէս պիտի տեսնենք վարը, «Սիւնակեաց» անուանուած է նաեւ Դանիէլ Ռայիթու վանքին կրօնաւորը: Առանց տարակուսի հայ-հոռոմ մըն էր Մինաս Սիւնակեաց ի Տրապիզոն: Այս դարու վերջերը գրած է Մովսէս Երզնկացի «պատասխանի» թուղթ մը «առ հաստուածեալ երէցն Գրիգոր ի Տրապիզոն». գրուածք մը, որ ձեռագիրներու մէջ յաճախ կը տեսնուի. կը յիշեմ

---

[3] Յովհաննէս Սիւնակեաց մը կը յիշուի Ե. դարուն վերջերը, որ այլ եւ այլ հարցումներ առաջարկած է Սահակ Ձորափորեցի կաթողիկոսին:

Տիւբինգենի Թ. 52, Թղ. 256բ—278ա (յամէ 1313): Իսկ Սիմէոն քահանայ կրօնաւոր, որ սկսեալ ԻԱ. գլուխէն թարգմանած է «ի Վրաց բարբառոյ» (ա՛յսպէս պէտք է հասկընալ), ոչ այլ ոք է, բայց եթէ Պղնձահանեցի Սիմէոնը: Կանխա՞ւ համաձայնութեամբ կատարուած է մէկ գրքի թարգմանութիւնը երկու ձեռքէ, եւ այն յոյն եւ վրացի օրինակներէ, թէ միայն խափանումը մահուամբ կամ որ եւ է պատճառով, միւսը հարկադրուած է լրացնել: Ինձ կը թուի, թէ առաջին ենթադրութիւնն է ուղիղը. վասն զի այս երկուքի, Մինաս Սինակեցի եւ Սիմէոն Պղնձահանեցւոյ գործակցութիւնը կը տեսնենք նաեւ Յունաց ժամագրքի թարգմանութեան մէջ, ինչպէս յիշատակագիր մը 1583ին կը գրէ. «Սուրբ հայրն մեր պապա Մինասէ (Մինասի՞) եւ պապա Սիմոնի թարգմանեալ էր ի Վրաց լեզուէ ի մեր լեզու» (Բազմավէպ, 1894, էջ 328, ծան.): Այս մասին պիտի անդրադառնանք յետոյ:

Quadro (Վենետիկ 1825, էջ 32) կը գրէր ի մասին թարգմանչին. „È fuor di dubbio essere stata quest' opera tradotta dall' original Greco". Իսկ ՆՀԲի Հեղինակները, Նախադրուռն, 14ա (Կլիմաք.) կը յայտնեն. «Որպէս ոճն է պարզ, նոյնպէս թարգմանութիւնն՝ յանյայտ ժամանակի: Յիշին եւ բանք ինչ նորա յընթացս Հարանց վարուց»: Հ. Գ. Զարբանալեան, Մատենադարան, էջ 531—537, կու տայ միայն գործին գլխա—

կարգութիւնները, առանց խօսք ընելու թարգմանչին եւ թարգմանութեան ժամանակի մասին: Կը տեսնուի ասկէ, թէ Վենետիկի Մխիթարեանց 4 օրինակները (առաջին երեքը՝ նոտրագիր, իսկ չորրորդը բոլորգիր յամէ 1551) չեն պահած Սիմէոնի Յիշատակարանը:

Ինձ ծանօթ ձեռագիրներէն հնագոյնն է Դաղեան Խաչիկ վարդապետի Թ. 70, գրուած 1329ին [4]. ունի հետեւեալ Յիշատակարանը. «Ի թուիս Հայոց ՉՀԸ. աւարտեցաւ գիրքս որ կոչի Սանդուխք աստուածային ելից եւ միւսն Յոհան որ կոչի Աստուածաբան, յանապատս Փոս վերակոչեալ, յաշխարհիս Կիլիկեցւոց. ի թագաւորութեանն Հայոց չորրորդ Լեւոնի աստուածակարգ արքայի, որդւոյ Աւշնի թագաւորի. ի կաթողիկոսութեան Տ. Յակոբայ, յառաջնորդութեան ուխտիս տէր Ստեփաննոս սրբասէր եպիսկոպոսի, ձեռամբ մեղաւոր Հայրապետի. եւ վերջին ճառս որ է Միաշաբաթի Յարութեան Տեառն, ձեռամբ Թորոսի որդւոյ քեռ մերոյ...»:

Այս օրինակութեան բնագիր առնուած է Պետրոս անուն մէկուն օրինակը, որուն գրիչն եղած է Վարդան քահանայ եւ վկայ. «Ողորմութիւն աւրինակիս գրողին Վարդանայ... քահանայի եւ արեամբ վկայի. այլ եւ Պետրոսին որ յաւժար կամաւք ետ որ գրեցի»

[4] Յ. Թօփճեան, Ցուցակ ձեռագրաց Դաղեան Խաչիկ վարդապետի, Ա., Վաղարշապատ 1898, էջ 86:

(Թղ. 332բ)։ Հայրապետ գրիչ յառաջ բերած է տեղ մը նաեւ Վարդան վկայի մէկ յիշատակագրութիւնը Գլխացանկէ յառաջ. «Այս բանք գովութեան ճառիցս թուի թէ չէ միաբան ճառից. այլ ես զհամարն ի վերայ առաջնոյ ճառացուցին եդի, զի յաւրինակն անհամար էր եւ ստոյգ երեր մինչ ի վերջն։ Զայս Վարդանն էր գրել՝ լաւ հասու եղեալն»։ Ըսել կ՚ուզէ, թէ Ճառացոյցն կամ Գլխացանկը զաղափար–օրինակին մէջ «անհամար» էր, չկար գլուխներէն յառաջ թուահամար. ինքը Վարդան աւելցուցած է համարները, որոնք ճշդիւ համապատասխանած են ճառերուն, այն է տուած են 30 + 1 թիւր, առանց հաշուի մէջ առնելու Յովհ. Ռայիթուեցւոյ թուղթը։

Ո՞վ է այս Վարդան քահանայ եւ «արեամբ վկայ»։ Այն պարագան որ Հայրապետ գրիչ 1329ին գիտէ թէ Վարդան վախճանած է վկայական մահուամբ, ենթադրել կու տայ, թէ գրչին մերձաւոր ժամանակակից մը եղած ըլլալու է, ուստի ԺԴ. դարու առաջին (կամ ԺԳ. դարու վերջին) տասնեակէն *։ Գրիչը կը գովէ զինքը իբրեւ «լաւ հասու եղեալն», այս ինքն հոգեշահ գրականութեան ներհմուտ անձնաւորութիւն մը. որ երեւան բերած է իր հմտութիւնը նաեւ այս գրութեան օրինակութեան մէջ։ Այս կէտին վրայ ուշադրութիւն կը հրաւիրեմ, որովհետեւ Վարդանի օրինակը կը ներ–

* Տես վարը՝ էջ 141։

կայանայ «Սանդուխք» գրքին նոր մէկ խմբագրութիւնը, որ կը շեղի սկզբնագրէն բազմօք, ինչպէս պիտի տեսնենք յետոյ: Այս օրինակէն յառաջացած են ծանօթ ձեռագիրներէն շատերը, ի բաց առեալ Բեռլինի Թ. 25 եւ էջմիածնի Թ. 1925:

Երկրորդ հնագոյն օրինակն է Բեռլինի Թ. 25; գրուած 1361ին[5]: Ունի հետեւեալ Յիշատակարանները. Թղ. 228բ. «Զսակաւ գիրս կարդա եւ զիս յիշեայ: Գրեցաւ եւ աւարտեցաւ ի Թվականիս Հայոց ՊԺ (1361) ի մարտի Լ. ի Թագաւորութեան Կոստանդեա եւ ի Հայրապետութեան տէր Մեսրով(բ)այ»: Թղ. 233ա. «Փառք... Արդ եղբարք ցանկացող եղեալ իմ աստուածային մատենիս՝ գրեցի զսա ի Թվլիս ՊԺ. եւ զի իմ անտեղեակ գոլով գրչութեան արհեստի. այլ բստ փափագանաց սրտիս եւ յաղագս յիշատ(ակ)ի հոգոյ իմոյ եւ ծնողաց իմոց գրեցի զսա: Զեղկելի եւ զբազմամեղ ողիս զՏաւնական սուտանուն մի անտես առնէք...: Յիշեցէք եւ զՅոհանէս աբեղայն, որ զաւրինակն երետ»: Գրութեան տեղը կը մնայ անյայտ: Նկատի առնենք, որ 1381ին Տաւներ գրիչ յԵրզնկա «ի դուռն սուրբ Դամբարանի սրբոյն Գրիգորի Լուսաւորչի» կ՚օրինակէ

[5] N. Karamianz, Verzeichnis der armenischen Handschriften der Königl. Bibliothek zu Berlin, S. 19: Հ. Ց. Տաշեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Բեռլինի Պետ. Մատենադարանի (անտիպ), ուր մանրամասն ցուցակագրած է ձեռագիրս: Վերաքննեցի նոյնը եւ ես 1930, Նոյեմբերին:

Սանասարեան Վարժարանի Թ. 26 (Եսայեայ Մարգարէութիւն) եւ կը խնդրէ յիշել «զհոգեւոր հայրն զիմաստունն եւ զհանճարեղն զտէր Կիրակոս», որ է համանուն Երզնկացին[6]. եւ դարձեալ նոյն ձեռագրէն կ'արտագրէ 1383ին Գրիգոր գծող Հռոմի R. B. Casanatense 2021 ձեռագիրը «ի դուռն սուրբ Դամբարանի» եւ կը խնդրէ յիշել «զուսուցիչն իմ զՏաւնական սարկաւագն[7]»: Եթէ 1383ին Տաւնական ուսուցիչն էր Գրիգորի, իսկ ինքը 1381ին աշակերտն Կիրակոս Երզնկացւոյ: Կիրակոս սակայն վախճանած է 1356ին մարտ 18էն յառաջ[8]: Ուստի կա–

---

[6] Հ. Աճառեան, Ցուցակ հայ. ձեռ. Սանաս. Վարժ., Վիեննա 1900, էջ 22:

[7] Հ. Գ. Գալէմքեարեան, Ցուցակ հայ. ձեռ. Կազանատեան Մատենադարանին ի Հռոմ (անտիպ):

[8] Երուսաղէմի Թ. 1236 Ժամագիրքը, ըստ Խապայեան Տ. Սահակ Կաթողիկոսի ցուցակին գրուած է Հայոց ՊԵ (1356) յամսեանն մարտի ԺԸ. (Երզնկա) «ընդ հովանեաւ սուրբ տաճարիս որ Ծառով Սուրբ Յակոբ կոչի». գրիչն է Ստեփանոս երէց, որ կը խնդրէ. «Յիշեցէք եւ զերջանիկ եւ զերից երանեալ րաբունապետն մեր զԿիրակոս վարդապետն որ յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս... եւ զհարազատ նորին զմիւս վարդապետն Յովհաննէս (Երզնկացի) որ այժմ Աստուծով զմեզ հայրաբար խնամէ եւ զտէր Մանուէլ եպիսկոպոս եւ զՅովաննէս քարտուղարն... եւ զպարոն Տաւնականն որ օգնական եղեն ի սուրբ մատեանս»: Այս Տաւնական օրինակած է նաեւ Երուսաղէմի Թ. 1262 (Կիրակոս Երզնկացւոյ վերլուծութիւնքն Եսայեայ). դարձեալ անյիշատակ թողլով գրչութեան տեղը: Հանդ. Ամս. 1947, էջ 262, 1356 վրիպակաւ տպագրուած էր 1386: Այս կէտին անդրադարձած է Յ. Քիւրտեան, Հայաստանեայց Եկեղեցի, 1949, էջ 144—146: Ուշադիր կ'ընէ, որ Աւագ վանք 1366—1372 տարիներուն կը յիշուի համանուն Կիրակոս վարդապետ մ'ալ: Այլ է Տօնական երէց տպագրած 1483ին:

*րող ենք հաստատապէս ըսել թէ ձեռագրիս գրչութեան տեղը Երզնկայի Աւագ վանքն է։ Օրինակութեան համար գաղափար օրինակն տրամադրած է Յովհաննէս աբեղայ։*

*Բեռլինի Թ. 25ին հետ կը համընթանայ Էջմիածնի Թ. 1925, գրուած Մարկոս գրչէ 1401ին ի Կաֆայ։*

*Այս երկու խումբերը իրարմէ զգալի չափով կը խոտորին։ Սկզբնագրին աւելի մօտ է Բեռլինի օրինակը, զոր պիտի անուանեմ Ա. խումբ (B)։ Անկէ ծագած է Բ. խումբը, որուն հնագոյն օրինակն է Դաղեան 70 (D)։ Վերջնոյս խմբագիրը (Վարդան վկա՞յ) ջանք տարած է յոյն (եւ վրացի) բնագրէ ստրկաբար թարգմանուած հայերէնը պարզել դիւրհասանելի նախադասութիւններով, անփոյթ ամենեւին, թէ ասով սկզբնագիրը կը խեղաթիւրուի եւ կ՚աղճատի։ Ձեռքի տակ չունիմ ամբողջական հատուածներ այս կրկին խմբերէն, որպէս զի համեմատութեան դնեմ զանոնք։ Զարբանալեան եւ Տաշեան տուած են այս երկու խումբերու գլխոց խորագիրներն եւ սկըզբնաւորութիւնները. ասկէ կը քաղեմ համեմատութեան համար մէկ քանի օրինակներ։*

| Ա. (B) | Բ. (DZ) |
| --- | --- |
| Բ. *Յաղագս անախտութեանն։ Որ ճշմարտութեամբ զՏէր սիրեսցէ, որ ճշմարտութեամբ հան-* | վասն ցաւօք եւ տըրտմութեամբ հրաժարման յաշխարհէ։ *Որք ճշմարտութեամբ զՏէր սիրես-* |

| Ա. (B) | Բ. (DZ) |
| --- | --- |
| *զերծեալ արքայութեանն հանդիպել խնդրեսցէ…:* | *ցեն, եւ ճշմարտութեամբ հանդերձեալ արքայութեանն հանդիպել* փութասցին…: |
| Գ. *Որք բարեպաշտութեան տեսութեանն մեզ հակառակ գործեն…:* | Գ. *Որք* բարւոք տեսողականութեանն *մեզ հակառակ* առնեն…: |
| Դ. *Վասն երանելի եւ միշտ յիշատակելի ունկնդրութեան: Առ մրցորդքս մեզ եւ Քրիստոսի ճգնաւորքս յառաջմէ բանն յաջողեալ հանդիպեցաւ: Ամենայն պտղոց նախ եւ առաջ՝ արձակի ծաղիկն…:* | Վկայութիւն *վասն* երանութեամբ յիշատակեալ արւութեան *եւ ունկնդրութեան: Առ* որս բան մեր յաջողի, նեղ եւ ըստ Քրիստոսի ճգնութեան հանդիպումն, այսուհետեւ *արձակի* շառաւիղ…: |
| Զ. *Ամենայն բանի յառաջանայ միտք. իսկ յիշատակ մահու եւ յանցանաց յառաջանայ եւ լալոյ եւ սգոյ…:* | *Ամենայն բանի* եւ մտածութեան նախապատիւ է խոկումն *մահու եւ յանցանաց.* եւ առաջին է *լալոյ եւ* գթոյ. *եւ զկնի նորին բանս կարգեցաւ….:* |
| Ը. *Զոր օրինակ ջուր ի բոց սակաւ հեղլով՝ կատարելապէս բոցն շիջցի. այսպէս եւ ճշմարիտ սգոյ՝ արտասուք…:* | ….: *Զոր օրինակ զջուր* յառ սակաւ սակաւ հեղուլն ի բոց՝ *կատարելապէս* զնոյն շիջուցանէ, *այսպէս եւ ճշմարիտ սգոյ արտասուք…:* |
| ԺԴ. *Վասն ամենահամբաւ տիկնոջն չար որովայնի: Հանդերձեալ եմք վասն որովայնի ասել՝ որպէս յամենայնի՝ այժմ առաւել եւ իմաստասիրել առանձին նախ եղաք…:* | *Նորին վասն* չարահամբաւ *տիկնոջ որովայնի:* Հանդերձեալ իմ *վասն որովայնի ասել*, որ նախ սկիզբն եղի զամենայնն առանձին իմաստասիրել…: |

| Ա. (B) | Բ. (DZ) |
| --- | --- |
| *ԺԵ. Վասն անապականութեան յապականացուքս. ի վաստակոց եւ ի քրտանց սրբութիւն եւ իմաստութիւն:* | Նորին վասն ապականութեան վաստակոց ի յապականութեան քըրտունք սրբութեան եւ իմաստութեան: |
| *ԺԶ. Բազումք յիմաստուն վարդապետացն զկնի նախագրեալ բանաւորին՝ զառաջիկայ բիւրագլուխ գիտացին կարգել...:* | Բազումք որք զիմաստասիրականն վարդապետեն, զկնի նախագրեցելոցդ՝ զերկրորդ բիւրագլխի եդին...: |

*Չեմ ուզեր յառաջ տանիլ համեմատութիւնները: Այս շեղումները Dին Bէն՝ կարող են ընթերցողին վրայ այն տպաւորութիւնը թողուլ, որ ասոնք արդիւնք են կրկին թարգմանութիւններու՝ թերեւս յունարէն իրարմէ խոտորող բնագիրներու: Bի ընթերցուածներու համաձայնութիւնը յոյն բնագրին հետ կատարեալ է: Dի աղերսը Bի հետ նոյնպէս ակներեւ: Կը մնայ D նկատել յապաւութիւն մը Bի:*

*Կարեւոր կը համարիմ այս տեղ տալ ընդհանուր ակնարկ մը* B *եւ* D *խումբերու բովանդակութեան վրայ. այսինքն թէ ինչպէս հասած է «Սանեղիոց» թարգմանութիւնը հայերէն ձեռագիրներու մէջ:*

1. BD *սկիզբը ունին անխորագիր նախադուռն մը, այսպիսի սկզբնաւորութեամբ. «Մեծ գիր ճշմարտութեամբ թէ որպէս զՔրիստոսի մարմնական հասակին թիւ վերելութեանս մեր քանակեաց...: Վ. ոչ ան-*

*հաւատալի ծանուցուք ապացուցին* (4 գիր դժուարընթեռնլի, վասն զի նոր գրչէ ջնջուած են. *գոր առ տ) նոյնս անդր գրեաց»*: D *կը կարդայ. «Մխտ գիր թէ որպէս ճշմարտութեամբ...* վ. *անբիծ է նորին բնապատմութիւնն»: Նման վերջաւորութիւն մը ունի յոյնը գլխացանկին վերջը* (MG 88, 629):

2. B *կը յաջորդը. «Աբբայ Յոհաննու հայրն Ռայիթույ թուղթ առ Յովհաննէս...»:* D *չունի այս թուղթը: Յոյնը այս թուղթը Կլիմակոսի թղթին հետ զետեղած է գլխացանկէն յառաջ:*

3. *«Սանդուխք աստուածային ելից: Ի գիրս կենաց յերկինս գրին...»* (BD): *Յառաջաբանս գլխացանկին սկիզբը ունի նաեւ Յոյնը* (MG 88, 628):

4. *Յանկ գլխոց Ա.—Լ.* (BD): *Այսպէս նաեւ Յոյնը:*

5. *Սկիզբն արասցուք առ սակաւ մի ի բազմաց հռետորական գեղեցկութեամբ հանդերձ զովելի վարուք. Տախտակ հոգեւոր:* — *Այս տողերը* D *համաձայն Յոյնին ունի «Սանդուղք»ի իբր նախաբան. տես* § 6: *Կը յաջորդէ. «Յովհաննու առ Յովհաննէս. ուրախ լեր: Ընկալեալ որպէս վայել էր սեփհական եւ անախտ վարուցդ...»* B: *Իսկ* D. *Յովհաննու առ Յովհաննէս ուրախ լինել: Ընկալաք զվայելուչն ազնուական եւ անախտ վարուցդ...»: Այս թուղթը Յոյնին մէջ զետեղուած է* § 2*էն ետքը:*

6. *«Աբբայ Յովհաննու առաջնորդի*

կրաւնաւորացն որ ի սխնէական լերինն՝ Բան կրաւնաւորական յաղագս ուսմանու-Թեանց կենցաղոյս եւ վասն հրաժարելոյ եւ մեկնելոյ յաշխարհէ։ — Բարւոյ եւ առաւել բարւոյ եւ ամենաբարւոյ Թագաւորի մերոյ եւ Աստուծոյ...» B։ Իսկ D ունի. «Սկիզբն Հողեւոր Տախտակիս գրոյ հռետորական ճշմարիտ վարուց»։ Այս աղճատուած կրկնուԹիւնն է Bի ընԹերցուածին, զոր տեսանք վերագոյն (§ 5). բայց կը պատ-կանի այս տեղւոյն, ինչպէս ունի նաեւ Ցոյնը իբրեւ «նախաբան բանին, որում ա-նուն յորջորջանաց Տախտակք հոգեւորք»։ D կը շարունակէ. «Բան կրօնաւորական աբբայ Յոհաննու հօր Սինեայ լերինն միանձանց, զոր հրամանաւ հօր Յոհաննու ՌայիԹու լերինն գրեաց եւ առ նա առա-քեաց։ — Բարւոյ եւ գերագոյն բարւոյ ա-մենաբարւոյ Աստուծոյ մերոյ եւ Թագա-ւորի ծառայի՝ առ ծառայակիցս...»։ Հարազատագոյն է Bի ընԹերցուածը։

7. Իւրաքանչիւր գլխոյ վերջը ունին BD տեսակ մը առածաձեւ բնաբաններ։ B զա-ռոնք զետեղած է յաջորդ գլուխներու սկիզբը. այսպէս. «Աստիճան Բ. Ով հեծեալն մի դարձցի յետս»։ Կը հայի Ա. գլխոյն։ «Գ. Աստիճան. «Որ ընԹասցի մի կնոջն Ղովտայ նմանեսցի»։ (Դ.) «Երեքն Երրոր-դուԹեան է համաԹիւ ընԹաց. որ հե-ծեալն էր մի հայեսցի յաջ կամ յահեակ»։ D խումբը զետեղած է այս առածները

գլխոց սկիզբը այսպէս. «Աշտիճան Ա. Ցոր հեծեալն ոչ դարձցի յետս...»: Բ. աշտիճան. ընդ որ ընթացաւղն Ղաւտայ եւ ոչ կնոջն նմանեսցի...»: Ցոյնը գետեղած է իւրաքանչիւր գլխու վերջը:

8. Գլխոց բաժանում համարաթուերով Ա.—Լ. ունի B. կը բացակայի այս Dի մէջ: Բայց Bի այս համարաթուերը սկսեալ Իէէն մինչեւ Լ չեն համապատասխաներ ճշդիւ Ցոյնին: Հայը Լի տակ ամփոփած է չորս գլուխ. իսկ Ցոյնը իր կարգին ԻԶ գլխոյն մէջ կ՚առնէ Հայոյն Իէ եւ ԻԸ. եւ Իէ գլխոյն մէջ՝ Հայոյն ԻԹ եւ Լ$^{1}$. իսկ Լ$^{2—4}$ կը կազմեն յոյնին ԻԸ, ԻԹ եւ Լ գլուխները: Ուստի համաձայնութեան պատկերն է.

ԻԵ = XXV. ԻԶ Իէ. ԻԸ = XXVI. ԻԹ. Լ$^{1}$ = XXVII. Լ$^{2}$ = XXVIII. Լ$^{3}$ = XXIX. Լ$^{4}$ = XXX:

ԺԵ. գլխոյն սկզբնաւորութիւնը Bի մէջ կը չեղի յոյն բնագրէն. բայց Ցոյնին համաձայն է D խումբը. կը տեսնուի ասկէ, որ B արկածի հանդիպած է, թերեւս գաղափար օրինակին մէջ այս տեղ թուղթ ինկած:

9. Բերլինի Թ. 25 բացի գլխոց բաժանումէ (Ա.—Լ.), ունի նաեւ լուսանցքներու վրայ ա—ճլգ են հատուածաբաժանումներ, այսպէս Ա. ունի ա—ժգ, Բ.՝ ժդ—ի, Գ.՝ իա—իէ, Դ.՝ իը—խգ են: Ասոնք չեն տեսնուիր Dի մէջ: Զունի նաեւ Ցոյնը:

10. *Լ. գլխի վերջաւորութեան* B 25 (*թղ.* 229*ա*) *կը գծագրէ Սանդուխ մը* 30 *աստիճաններով. աստ մէկ կողմը նշանակուած են վերէն վար Լ.—Ա. թուագրերը, որոնք աստիճաններու թուերը կը ներկայացնեն, իսկ միւս կողմը, իւրաքանչիւր թուին դիմաց գրուած են աստիճաններու նիւթերը. այսպէս.*

*Լ. Վասն սիրոյ, յուսոյ, հաւատոյ...*
*Ա. Վասն ելանելոյ յաշխարհէս:*

*Ամէնէն վարը՝ «Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ վասն յաւիտեանս. ամէն»: Այս ցանկը կը տեսնուի նաեւ Վատիկանեան օրինակին մէջ* (*առանց Սանդուխի*):

11. *Բեռլինի* 25, *թղ.* 229*բ. կը յաջորդէ. «Կեանք եւ քաղաքավարութիւն երանելի սուրբ հայրն մերոյ Յոհաննու հայրն Սինէի», որ կ՚ընդհատի թղ.* 231*բ, որովհետեւ հոս թղթերու անկում տեղի ունեցած է: Ըստ այսմ կը պակսին՝ վարքին վերջաւորութիւնը, Թուղթ առ Հովիւն եւ Լուծմունքը:*

12. D *Լ. գլուխը կ՚աւարտի. «յանսահմանելի յաւիտեանս լոյս...»: Կը յաջորդէ՝ Նորին առ Հովիւն: Յոհաննու առ Յոհաննէս: Յերկրաւոր եւ ներքին յայս գիր...* վ. *եւ սէր է Աստուած եւ Աստուած սէր է. որում...»: Ապա՝ Կեանք եւ քաղաքավարութիւն... եւ աստ կից՝ Լուծմունք դժուարիմաց եւ նուրբ բանից...* (*հմմտ.*

Ցուցակ, էջ 84)։ Այս «առ Հովիւն» ZVat խորագրած են պարզապէս «Յառաջաբանութիւն։ Յոյնն ունի. «Բան առ Հովիւն։ Յառաջաբանութիւն։ Յայսմ ստորին (երկրաւոր) գիրս...»։ Ուստի չկայ «Յովհաննու առ Յովհաննէս (հմտ. MG 88, 1165—1208, բաժնուած 15 գլուխներու)։

13. Ստորեւ պիտի տամ «Սանդուքի» գլխակարգութիւնը խորագիրներով եւ սկզբնաւորութիւններով համաձայն Բերլինի Թ. 25ի, որ ներկայացուցիչն է Ա. խմբին։ Բ. խմբի գլխակարգութիւնը տուած է ամբողջութեամբ Հ. Գ. Զարբանալեան, Մատենադարան, էջ 531—537։ Յովհ. Ոսկեփորեցւոյ Թուղթը յառաջ պիտի բերեմ ամբողջութեամբ. նոյնպէս Դանիէլ Ոսկեփորեցւոյ գրած «Կեանքն» պիտի տամ ընդարձակ հատուած մը։ Նպատակս է առիթ ճաշակ մ'ընծայել Մինաս Տրապիզոնցւոյ եւ Սիմէոն Պղնձահանեցւոյ թարգմանութեան արուեստին եւ իրենց կիրարկած լեզուական ինքնուրոյն գիծերէն։

14. Վերադոյն յիշեցինք, թէ գրուածքիս Բ. մասն, սկսեալ ԻԱ. գլխէն թարգմանած է Սիմէոն Պղնձահանեցի վրացերէն թարգմանութենէ։ Յովհ. Կլիմակոսի երկասիրութիւնս առ Հովիւն գլխուն հետ կ'ըսուի թէ 5 անգամ թարգմանուած է վրացերէնի. ա. Ժ. դարու Թերակատար թարգմանութիւն մը կը յիշէ Ս. Եւթիմիոս։ բ. Ինքը Ս. Եւթիմիոս թարգմանած է ԺԱ.

դարուն: գ· Նոյն ԺԱ· դարուն տաղաչափեալ թարգմանութիւն մը տուած է Յ· Պետրիճէ: դ· Լիակատար թարգմանութիւն մը հոգաց Պետոս Գելաթեցի ԺԳ· դարուն: ե· Դարձեալ տաղաչափեալ թարգմանութեամբ Անտոն կաթողիկոս (հմմտ· Պերաճէ, անդ, էջ 243 եւ Զաւախով, անդ, էջ 23—24): Սիմէոն ձեռքի տակ ունեցած ըլլալու է Գելաթեցւոյ թարգմանութիւնը:

15· Առաջին մասին թարգմանչի՝ Մինաս Տրապիզոնցւոյ թարգմանութենէն կը յիշեմ օրինակներս: Սկզբնագիրն ունի·

1. *Εἴρηται μὲν ἡμῖν βραχέως ἐν τοῖς φθάσασιν, ὡς ἐπισφαλές λίαν, καὶ αὐτοῖς τοῖς πνευματικοῖς εἶναι δοκοῦσι παρεισδῦνον τὸ κρίνειν* (MG, 88, 852).

B Ասացեալ մեզ զդուզնաքեայ որք հասանեն որպէս սղալանս յոյժ, եւ նոքա որք կարծեսցեն դատել (ԺԲ):

D Ասացաւ ի մէնջ դուզնաքեայ սխալանք այնոցիկ որք դատեն:

Այս ինքն· «Ասացաք կարճ ի կարճոյ վերադոյն, եթէ քանի՛ վտանգաւոր իցէ եւ՛ որոց հոգեւորքն կարծիցին լինել, միջամուխ լինել ի դատել:

2. *Εἷς καί οὗτος πολλάκις τῶν τῆς πολυλογίας κλάδων, ὡς καὶ ἤδη φθάσαντες εἴπομεν, ἐστὶ, καὶ πρῶτος ἀπόγονος, λέγω δὴ ὁ τῆς ἀκηδίας* (MG· 857)·

B· Մի եւս այս բազմախօսութեանցն ով ասիցէ, որպէս զի եւ ուր հասաք արաս-

ցուք եւ նախանձնունդ ասեմ ճանճրութեան (ԺԳ):

D. Չի եւ այս պատառի ի բազում իրս չատախօսութեան սաղարթ եւ նախածնող ասեմ ճանճրութեան զատութիւնն:

Այս ինքն. «Եւ այս յաճախ մի յոստոց անտի չատխօսութեան է, որպէս եւ ի վեր անդր կանխեալ ասացաք, եւ առաջին ծնունդ, զճանճրութենէ ասեմ:

Աւելի օրինակ հարկաւոր չէ, ցոյց տալու համար թարգմանչին անհմտութիւնն յունարէնի մէջ եւ անբաւականութիւնը նման աշխատանքի մը: Միաժամանակ նկատելի կ՚ըլլայ նաեւ խմբագրին տարածճիգը, այս պղտորութենէն իմաստ մը կորզելու:

Սիմէոնի թարգմանական արուեստը քննութեան առնելու համար կը բաւեն ԻԱ. եւ ԻԹ. գլուխներէն առնուած հատուածերս.

1. Δειλία ἐστὶν ἐκτροπὴ πίστεως ἐπὶ προσδοκία ἀδοκήτων (MG, 88 945).

B. Երկչոտութիւն խաւարումն է ի հաւատոյ ակն ունելոյ յանկարծակի վչտաց:

Բնագրին իմաստն է. «Երկչոտութիւնն է օձտումն հաւատոյ յակնկալութենէ յանկարծակի իրաց:

2. Φόβος ἐστὶ προμελετώμενος κίνδυνος. Ἢ παλιν· φόβος ἐστὶ σύντρομος αἴσθησις καρδίας περὶ ἀδήλων συμφορῶν κλονουμένη, καὶ ἀσχάλουσα (անդ.):

B. *Երկիւղ է յառաջկասկածելի նեղութիւնք. կամ դարձեալ՝ երկիւղ է (դո)ղացեալ ողայարանք սրտին, անիմանալի չարութեամբ փորձութեանցն կորացեալ եւ տրտում* (*ԻԱ.*) :

D. *Երկիւղ իջէ նախախորհութիւն վշտաց. երկիւղ իջէ դողումն զգացութեան սրտի, որ յաղագս անյայտ սրտմտութեան սաստանի եւ լուծի* (*ՆՀԲ. ը. բ. Երկիւղ*) :

*Այս ինքն. երկիւղ է կանխանկար վտանգ. կամ դարձեալ՝ երկիւղ է երկչոտ զգացումն սրտի յանստոյգ գլխաց աղմըկեալ եւ վրդովեալ :*

3. B. *Բարձրամիտ անձն ծառայ է վհատութեան. որ յանձն իւր վստահացեալ է, նա յապառնեաց չարժմանէ եւ ի հովանոց ումեքէ երկչոտ է :*

*Յոյնն՝ «բարձրամիտ անձն ծառայ է երկչոտութեան եւ յանձն իւր վստահ. եւ ի չչին ինչ եւ յանձին իսկ ստուերէ երկչոտ» : Հոս «յապառնեաց» եթէ կարդանք «ի սաղարթաց» չարժմանէ, կարելի է համեմատ ըլլալ յոյնին «ի ձայն» կամ ի չչին ինչ առութեան :*

4. *Յունարէն* ἔκστασις, *ապշութիւն մտաց, խելապարութիւն, թարգմանուած է «բառումն եւ գիլումն»* (*կարդա՛* գելումն) :

5. *Յոյնին «եւ յիրաւի» չէր կրնար «եւ* ապացոյց *յիրաւի» տալ :*

**իթ** (27). *Περὶ τῆς ἱερᾶς σώματος καὶ ψυχῆς ἡσυχίας. Ἡμεῖς ὥσπερ ἀεὶ ὠνήσιμοι*

τινες τῶν ἀνοσίων παθῶν ὑπάρχοντες, καὶ δοῦλοι ὑπόσπονδοι γενόμενοι ἐκ τούτου καὶ τοὺς δόλους καὶ τρόπους καὶ τὰς ἐπιταγὰς, καὶ τὰς πανουργίας ποσῶς ἐπιστάμεθα . . . (MG 88, 1096).

B. *Նորին վասն քահանայականին այն հանդարտութեան հոգւոյ եւ մարմնոյ: Միայնակեաց ասէ (կարդա՝ ասեն) Յոյնք հանդարտելն: Մեք որ միշտ վաճառեալ եւ ծառայ եղեալք անսուրբ ախտից եւ հնազանդեցաք նմա, յայսմանէ եւ զնենգութիւն եւ զներգործութիւն եւ զկարգ եւ զամենայն գործ եւ զքանխօնութիւն ծանեաք:*

D. *Նորին վասն քահանայականին այն հանդարտութեան հոգւոյ եւ մարմնոյ: Միայնակեաց ասէ յոյժ հանդարտեալն է: Մեք որ միշտ վաճառեալ եւ ծառայ եղեալ անսուրբ ախտից եւ հնազանդեալք նմա. յայնմանէ զնենգութիւն եւ զաղգս եւ զկարգ եւ զամենայն գործ եւ զքանխօնութիւն ծանեաք:*

*Յունարէնին բառական թարգմանութիւնն է. «վասն սուրբ հանդարտութեան մարմնոյ եւ հոգւոյ: Մեք որ հանապազ իբրեւ զվաճառեալս անսուրբ կարեաց հնազանդեցաք եւ նոցին վարձկանք եղեաք, անտի եւ զնենգութիւն, զբարս, զհնարագիտութիւն եւ զեղեռնագործութիւն քանխօնութեամբ ուսաք»:*

*Յուն.* ἱερός, *սուրբ, առնուած է* ἱερεύς, *քահանայ բառին նմանութեամբ.*

յաւելուած է «Միայնակեաց աւսն Յոյնք հանդարտելն». այսինքն ἡσυχία, անդորրութիւն, «հանդարտութիւն», հանդիստ, եւ ἡσυχαστής, միանձնական, կրօնաւոր, ծագած են ἡσυχάζω բառէն, որ կը նշանակէ «հանդարտիմ», ըստ այսմ կարելի է, կ'ենթադրէ թարգմանիչը, «հանդարտութիւն» նաեւ «միանձնաւորութիւն» իմաստով առնել։ Այսպիսի անդրադարձութիւն մ'ալ ունի թարգմանիչը ԻՋ. գլխոյն մէջ։ «Նորին վասն դատողութեան խորհրդոց...։ Հելլենացի՝ դիակրիսիս, այսինքն դատողութիւն»։ Յ. περὶ διακρίσεως εὐδιακρίτου, վասն բարեխորհուրդ դատողութեան։ Թարգմանիչն այս «դիակրիսիս» բառը գտած է հաւանօրէն վրացերէն օրինակին մէջ։

Սիմէոն նաեւ հոս վրացերէն թարգմանութիւն մ'ունի իր առջեւ։ Թէ ո՛րքան յաջող էր այդ թարգմանութիւնը, չեմ կարող դատել. բայց ցոյց կու տան հայերէն թարգմանութեան մթութիւնք, թէ թարգմանիչը իր առաջադիր օրինակին մէջ հանդիպած է անհասկանալի տողերու։

Բնագիրն է ըստ Բեռլինի Թ. 25ի։

ԱՌԲԱՅ ՅՈՀԱՆՆՈՒ ՀԱՒՐՆ ՌԱՅԻԹՈՒՈՅ ԹՈՒՂԹ ԱՌ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՐԺԱՆԱԳՈՎ ՀԱՅՐՆ ԵՒ ԱՌԱՋՆՈՐԴՆ ՍԻՆԷԱԿԱՆ ԼԵՐԻՆՆ։

Վերագոյ բնութեան եւ հաւասար հրեշտակաց հաւրդ հարց եւ վարդապետիդ յոյժ վերնագունի մեզաւորս Յովհաննէս առաջնորդ Ռայիթույ ի Տէր ողջոյն։

*Գիտացեալ մեք տղէտքս, զոր առ ի Տէր քո անընտրող առ ամենեսեան խոնարհութիւն առաքինութեամբ եւ լողութեամբ զարդարել... (Թղ. 2ա—3բ):*

### ՍԱՆԴՈՒԽՔ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԵԼԻՑՆ
(Նախաբան)

*Ի գիրս կենաց յերկինս գրին, որք զանձինս իւրեանց ի սորա յընթացս դնեն*[9]*: (Ի սմա յաջողեալ զտանին ձեռնարկողքն անմոլար. եւ ամենեւին ի քարէ գայթակղութեանն անկործան պահեսցին: Սանդուղքս մեզ ի յերկրաւորէս ի սրբութիւնն երկնից. բարձրացեալ կանգնեալ կայ ի գլուխն, որպէս ինձ թուի, սանդղոցն՝ զոր խաբող ախտիցն Յակոբ ի հանգչելն բարեմտութեամբ տեսս, ընդ որ ելցուք յաւժարութեամբ եւ հաւատովք. եւ յիմանալի այս եւ երկնային ընթացիցս կէտն ժամանեսցուք: Իսկ այժմ յառաջին աստիճանս վարդապետէ զբարւոքն եւ զատոյգն) (Թղ. 3բ):*

Սկիզբն արասցուք առ սակաւ մի ի բազմացն հռետորական գեղեցկութեամբ հանդերձ զովելի վարուք Տախտակ հոգեւոր:

### ՅՈՀԱՆՆՈՒ ԱՌ ՅՈՀԱՆՆԷՍ ՈՒՐԱԽ ԼԻՆԵԼ[10]

*Ընկալեալ, որպէս վայելէր սեփհական եւ անախտ վարուցդ եւ մաքուր եւ խոնարհեալ*

---

[9] *Հ. Յ. Տաշեան արտագրած էր Բերլինի ձեռագրէն այս քանս միայն: Կը լրացնեմ Հ. Զարբհանալեանի, ուստի Բ. խումբի օրինակէն (Զարբ., Մատենադարան, էջ* 531—532)*:*

[10] B *լեր.* D *լինել:*

սրտից, զոր առ մեզ աղքատքս յառաքինու-
թենէ եւ նուաստքս առաքեցեր գիրս. մա-
նաւանդ հնազանդութիւն ի վեր քան զզաւ-
րութիւն մեր հրամայեցեր: Զի քո է ճշմար-
տապէս, քո եւ քոյոցն սուրբ անձանց[11] սեփ-
հական: Որոց մեք անխրատ բանիւք եւ գոր-
ծովք, անուսմունք վարդապետութեան բանի
եւ խրատու խնդրոյ սովորութեան միշտ մեզ
զանձին խոնարհութիւն ապացոյց տալ: Զոր
եւ ես այժմ զնոյն առնեմ. երկիւղ է բազում
եւ վիշտ, զմայրն առաքինութեան, զունկն-
դրութեանն զսուրբ լուծն յանձնէ ի բաց
ձգել. եւ արդ ոչ անբանապէս ի վեր քան
զզաւրութիւն յանդգնիմք: Պարտ է քեզ, ով
սքանչելի սուրբ Հայր, զայս բարուք հաւա-
նել. քանզի յաշակերտաց կարգի կամք: Իսկ
որ ի ձեզ են աստուածազգեացք եւ ճշմարիտ
գիտութեան խորհրդածողք, ունկնդրութեան
է անքննելի հաւանել. որոյ ի վեր քան զաւ-
րութիւնն: Ահաւասիկ զոր անձին անտես
արարաք, եւ բարիոք մտածութեամբ, որ ի
վեր քան զմեզ ձեռնարկեցաք: Զի ոչ որպէս
քեզ պիտոյ է, ով սքանչելի Հայր եւ գլուխ,
քանզի գիտեմ, ոչ ես միայն, այլ եւ ի բարե-
խորհեցիցն[12] իրաքանչիւր ոք՝ մաքրել
զմտաց աչաց յամենայն երկրաւոր եւ խաւ-
րային ցնորմանց եւ առանց արգելլոյ յաստուա-
ծային լոյսն մտանել եւ ի նմանէ լուսաւորել
եւ զայլս յանհնազանդ մահուանէ ի բաց մեկ-

---

[11] Յ. քում սրբոյ անձին:

[12] Յ. τῶν εὐφρονούτων.

նել եւ ի հնազանդութիւն ամենասուրբ հրամանիդ զկնի եկեալ երկիւղիւ եւ ցանկութեամբ, որպէս բարեմիտ եւ ունկնդիր ծառայ եւ կենդանագիր ազատ: Քանզի սուղ եւ նուաստ գիտութեամբ մեր նշանագրեմք սիրոյն մելանաւ առ քեզ, ով վարդապետաց գլուխ դու. որպէս զի դեղովք երանկաց դեղեցկացուսցես եւ լցուսցես զթերութիւն տախտակաց եւ հոգեւոր աւրինացս: Ոչ եթէ դու ի մեր ձեռնարկելս կարաւտանաս, քաւ լիցի, զի մերս վերջին է աւրինակ. բաւական ես Տերամբ եթէ զայլս, այլ եւ զմեզ խրատել յաստուածային աւրինացն սովորութիւն, ով գերարդոյ վարդապետաց կարող աչակերտաւղ աստուածակոչ ժողովրդոցդ, զի եւ քոյով աղաւթիւք ըստ իմանալի յուսոյ անուամունս թեթեւանայ եղեգանս զեկ. զդեղեցիկդ ունելով զղեկավար մերոյ բանիս նաւապետ, ձեռնտուութեամբ աւժանդակեալ յայս ամենայն որ վասն քո ունկնդրութեանդ խնդրոյ, սկսանիմ որ խոնարհ զիջանիս յամենայնի. զի եւ սա Ոնեսիփորայ տեսանի. զի եւ զնոյն պտուղ զմեր որպէս զբարեմիտ ծառայի համարեսցի. եւ ձեռնարկութիւնս միայն պարգեւ յԱստուծոյ խնդրէ զհատուցումն. ոչ յասացելոցս հայել յանվայելչութիւն, որ ամենայն անդիտութեամբ եւ տգիտութեամբ ճշմարտապէս է լցեալ. որք մատուցանեն ընդունել զձեռնարկեալս պատարագ ոչ իբր զբազում ընծայս եւ զաշխատանս, այլ լրութեամբ Աստուած պատարա-

*գիս այս զվարձս հատուցէ: Ողջ լեր Տէ-րամբ. եւ Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս* (*Թղ.* 3*բ*—6*ա*):

*ԱԲԲԱՅ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՋՆՈՐԴԻ ԿՐԱՒՆԱՒՈ-ՐԱՑՆ ՈՐ Ի ՍԻՆԷԱԿԱՆ ԼԵՐԻՆՆ ԲԱՆՆ ԿՐԱՒՆԱՒՈ-ԿԱՆ:*

(*Ա.*) *Յաղագս ունայնութեանց կենցա-ղոյս եւ վասն հրաժարելոյ եւ մեկնելոյ յաշ-խարհէ: Բարւոյ եւ առաւել բարւոյ եւ ա-մենաբարւոյ Թագաւորի մերոյ եւ Աստուծոյ. բարւոք է յԱստուծոյ առ յԱստուծոյ ծա-ռայսն սկսանել: Ամենեքեան որ ի նմանէ ստեղծան բանաւորք եւ անձնիշխանական աստիճանաւ զարդարեցան...* (6*բ*—15*ա*): — *Ով հեծեալն մի դարձցի յետս:*

*Աստիճան Բ. Յաղագս Անախտութեանն: Որ ճշմարտութեամբ զՏէր սիրեաց, որ ճշմարտութեամբ հանդերձեալ արքայու-թեանն հանդիպիլ խնդրեաց...* (15*ա*—18*բ*): *Որ ընթացցի մի՛ կնոջն Ղովտայ նմանեսցի:*

*Գ. աստիճան. նորին յաղագս Աւտարու-թեան: Աւտարութիւն է թողուլն անդարձ զամենայն զորս ի հայրենիսն, որք բարեպաշ-տութեան տեսութեանն մեզ հակառակ գոր-ծեն...* (*Թղ.* 18*բ*—24*ա*): — *Երեքն երրոր-դութեան է համաթիւ* (*եւ համ*)*ընթաց. որ հեծեալն էր մի հայեսցի յաջ կամ յահեակ:*

*Դ. Վասն երանելի եւ միշտ յիշատակելի ունկնդրութեան: Առ մրցորդքս մեզ* (*սակ*) *եւ Քրիստոսի ճգնաւորքս յառաջմէ բանն յա-ջողեալ հանդիպեցաւ: Ամենայն պտղոց նախ*

եւ առաջ արձակի ծաղիկն... (Թղ. 24ա—58ա):

Ե. Վասն Ապաշխարութեան հոգալոյ եւ ճշմարիտ քննութեան վարուց սուրբ դատապարտելոցն [13]: Ապաշխարութիւն է վերակոչումն մկրտութեան: Ապաշխարութիւն է ուխտ առ Աստուած երկրորդ վարուց... (Թղ. 58բ—70բ): — Ի հինգերորդ աստիճան ելեր որ ապաշխարեցեր. քանզի զհինգ զգայարանսդ մաքրեցեր ի ձեռն սոցա զակամայ չարչարանսն եւ զտանջանսն ի ձեռն ինքնայաւժարութեան փոխեար:

Զ. Վասն Խոկման մահու: Ամենայն բանի յառաջանայ միտք. իսկ յիշատակ մահու եւ յանցանաց յառաջանայ եւ լալոյ եւ սգոյ... (Թղ. 70բ—76բ): — Ի վեցերորդ աստիճան որ ելանէ, ոչ այնուհետեւ մեղանչէ երբեք. քանզի ասէ. Յիշեա զվերջինս քո եւ յաւիտեան ոչ մեղանչես:

Է. Վասն Ուրախարար Սգոյ:: Սուգ որ առ Աստուած է տրտմութիւն հոգւոյ՝ զերկունս սրտին վերադրելով միշտ զծարաւեալն ցանկութեամբ խնդրելով... (Թղ. 76բ—87ա): — Աստիճան է. որ արժանացի եւ ինձ աւգնեսցէ եւ ինքն աւգնեալ եղիցի: Ասացաք յետին աստիճան է յաւիտենիս այսորիկ. ի կործանմանէն պահեցաւ:

Ը. Ասացուք վասն Անբարկութեան եւ Հեզութեան: Զոր աւրինակ ջուր ի բոց սա-

---

[13] Յ. τῶν, ἁγίων καταδίκων.

կաւ սակաւ հեղլով կատարելապէս բոցն հիջցի, այսպէս եւ ճշմարիտ սղոյ արտասուք... (Թղ. 87ա—93բ)։ — ||| Իսկ որ ի քրտանց ուժիցն ամենեւին յաղթեաց։

Թ. Վասն Յիշաչարութեան։ Քանզի սուրբ առաքինութիւնքն Յակովբայ սանդղոցն նմանեցան. իսկ անսուրբ չարութիւնքն՝ չղթայիցն, որ անկաւ ի Պետրոսէ գլխաւորէն... (Թղ. 93բ)։ — Աստիճան Թ. որով ստացաւ այնուհետեւ համարձակութեամբ զլուծումն յանցանաց խնդրեսցէ ի Փրկչէն Աստուծոյ Յիսուսէ Քրիստոսէ։

Ժ. Վասն Զարախաւսութեան։ Ոչ ոք յիմաստնոցն հակառակ ասէ ինձ թուի ոչ ի յատելութենէ եւ ի յիշաչարութենէ զբամբասութիւնն ծնեալ։ Վասն այսորիկ եւ զհետ իւրոց ծնաւղացն պատշաճեալ կարգեցաւ... (Թղ. 95ա)։ — Աստիճան Ժ. որով յաղթեաց սիրոյ մշահ (°) է կամ սղոյ։

ԺԱ. Վասն Շատախաւսութեան եւ լռութեան։ Ասացեալ մեզ զղուղնաքեայ որք հասանեն որպէս սղալանս յոյժ. եւ նոքա որք կարծեսցեն դատել, մանաւանդ թէ դատեսցին եւ լեզուաւք տանջեսցին... (Թղ. 97բ)։ — Ասացաք ի ԺԱ. աստիճանսդ, որով յաղթեաց բազում չարեաց ի միասին եւ եհար։

ԺԲ. Ասասցուք վասն Ստութեան։ Ծնունդ երկաթոյ եւ քարի՝ հուր. իսկ ծնունդ շատախաւսութեան եւ ծաղրածութեան՝ ստութիւն... (Թղ. 99ա)։ — Աստիճան ԺԲ. Որ հեծեալն զարմա(տ°) բարեաց ստանայ։

*ԺԳ.*[14] *Վասն Զանձրութեան: Մի՛ եւս այս բազմախաւսութեանցն ո՞վ ասիցէ, որպէս զի եւ ուր հասաք արասցուք եւ նախածնունդ ասեմ ձանձրութեան...* (*Թղ.* 100*բ*): — *Յաղթութիւն որ ոք ստացաւ ճշմարտապէս յամենայն փորձութիւնս եկաց:*

*ԺԴ. Վասն ամենահամբաւ տիկնոջն չար Որովայնի: Հանդերձեալ եմք վասն որովայնի ասել որպէս յամենայնի, այժմ առաւել եւ(ս) իմաստասիրել առանձին նախ եղաք...* (*Թղ.* 102*բ*): — *Ար(ութեամբ) յաղթութիւն. որ կարողն է. յայտ է թէ անախտութիւն եւ յիմաստութիւն ծայրագոյն եհաս:*

(*ԺԵ.*) *Վասն Անապականութեան յապականացուքս. ի վաստակոց եւ ի քրտանց սրբութիւն եւ իմաստութիւն: Լուեալ եմք զՄէնանդրոսի*[15], *այժմ որ ասէ վասն պոռնկութեան սորա ծնաւղք եւ զոր անմարմինս պատերազմ. եւ ոչ է զարմանք...* (*Թղ.* 109*բ*): — *Ծղունք. որ ոք ի մարմնի է եւ զսա ընկալաւ նա չմեռաւ եւ յարեաւ. եւ զհանդերձելոց անապականութեան զաւրինակ աստէն ծանեաւ:*

*ԺԶ. Վասն Արծաթսիրութեան: Բա-*

---

14 *«Երկոտասաներորդի»:*

15 B *զամէնանդրոսի.* ա *ջնջագրով:* B*ի այս սկզբնաւորութիւնը կը չեղի Յոյնէն, որ ունի համաձայն* D*ի* (*յէականս*)՝ *այսպէս. «Նորին վասն Ապականութեան վաստակոց. ի յապականութեան քրտունք սրբութեան եւ իմաստութեան: Սրբութիւն իցէ անմարմնոցն բնութեան միաւորութիւն. սրբութիւն իցէ տուն Քրիստոսի անփորձ եւ երկնային սիրտ երկրաւոր...:*

*զումք յիմաստուն վարդապետացն զկնի նա-խադրեալ բնաւորին զառաջիկայ բիւրա-գլուխս գիտացին կարգել... (Թղ. 124ա): — Մարտ, զոր եթէ ոք յաղթեաց կամ սէր ստացաւ եւ կամ զհ(ոգս) եհատ:*

*ԺԷ. Վասն Անստացուածասիրութեան եւ կամ անընչասիրութեան: Անստացուածու-թիւն իցէ հոգոյն ի բաց դրումն, ան-հոգութիւն վարուց, ճանապարհորդ անար-գեալ, հաւատ պատուիրանաց... (Թղ. 125ա): — Ճգնութիւն զոր թէ ոք ստացէ՝ առ երկինս աննիւթ ճանապարհորդեցէ:*

*ԺԸ. Վասն (Ան)զգայութեան որ է մեռե-լութիւն հոգւոյ եւ մտաց նախ քան զմահ մարմնոյ: Անզգայութիւն է ի մարմին եւ ի հոգի մեռեալ զգայարան... (Թղ. 126բ):*

*ԺԹ. Վասն քնոյ եւ աղօթից եւ վասն ի ժողովս սաղմոսերգութեանց. Նորին սրբոյն ասացեալ: Քուն է բնութեան քնութեան հաստատութիւն. պատկեր մահու, զգայա-րանաց խափանումն... (Թղ. 129ա):*

*Ի. Վասն Արթնութեան մարմնական եւ որպէս ի նմա մտանել: Երկրաւոր թագա-ւորացն ոմանց տանց զինուց եւ ոմանք մերկք. իսկ ոմանք խարազանս ունելով. եւ այլք ասպարս... (Թղ. 130ա—132ա):*

*Թղ. 132ա. Կարմրագիր.* Թարգմանեալ է մինչեւ ցաստ ի սրբամիտ կրաւնաւորէ Մի-նասէ սիւնակեցէ ի Տրապիզոն քաղաք: Իսկ աստուստ ի Սիմէոն քահանայէ կրաւնաւորէ՝ վրաց բարբառով:

*ԻԱ. Վասն Երկչոտութեան. նորին ասացեալ: Երկչոտութիւն (ման)կական սովորութիւն է (ի ծերացեալ) սնափառ անձն: Երկչոտութիւն խաւարումն է ի հաւատոյ ակն ունելոյ յանկարծակի վշտաց: Երկիւղ է յառաջկասկածելի նեղութիւնք: Կամ դարձեալ երկիւղ է (դո)դացեալ սգայարանք սրտին, անխմանալի չարութեամբ փորձութեանցն՝ կորացեալ եւ տրտում (°): Երկիւղ է յուսոյ պակասութիւն: Բարձրամիտ անձն ծառայ է վհատութեան: Որ յանձն իւր վստահացեալ է՝ նա յարպանեաց չարժմանէ եւ ի հովանոց ումեքէ երկչոտ է: Սգաւորք եւ զղջացեալք քմտումն եւ գիլումն բազում անգամ երկչոտք կրեցին. եւ ապացոյց յիրաւի: Թուլացուցանէ Աստուած զբարձրամիտսն երկնչել, զի մնացորդքս ուսցուք ոչ հպարտանալ: Ամենայն երկչոտք՝ սնափառք. իսկ ոչ ամենայն ոչ երկչոտք՝ խոնարհամիտք են...* (*Թղ.* 132*բ*):

*ԻԲ. Նորին վասն Սնափառութեան: Ոմանք երբեք ի բաժանման կարգ բանիցն զսնափառութիւն առաւել քան զբարձրամտութիւն սահմանեալ սիրեցին...* (*Թղ.* 133*բ*):

*ԻԳ. Նորին վասն Ամբարտաւանութեան որ առ մարդիկ: Ամբարտաւանութիւն ուրացումն է Աստուծոյ, գտեալ ի դիւաց, արհամարհութիւն մարդկան...* (*Թղ.* 139*բ*): — *Յաստիճանս յայս որ ի վեր ել՝ հզաւր է, եթէ ստուգապէս եւ ելանել կարաց:*

Նորին վասն անպատմելի խորհրդոյն Հայհոյութեան։ Ի չար արմատոյ եւ ի մաւրէ չարագոյն ոստ եւ որդի ել։ Յառաջ եկելոցդ լուաք ի չար սնափառութենէն ասեմ եւ յամբարտաւանութենէն եւ անպատմելի հայհոյութեան որդի գոլ... (Թղ. 144ա)։

ԻԴ. Նորին վասն Հեզութեան եւ պարզմտութեան եւ անմեղութեան։ Յառաջընթանալ արեգակն լոյս առաւաւտուն. եւ ամենայն խոնարհութեան հեզութեան ընթացքն որով եւ լուսոյն լուսցուք այսպէս յաստիճանս կարգեալ... (Թղ. 147ա)։

ԻԵ. Վասն ախտից կործանիչ բարձրական խոնարհութեանն անտանելի սգայութեամբ։ Զսիրոյն Աստուծոյ զբարէձեւութիւն եւ զխոնարհամտութիւն սիրոյն գեղեցկութիւն եւ զերանելոյն սրբութիւն ճշմարտութեամբ... (Թղ. 150ա)։

ԻԶ. Նորին վասն Դատողութեան խորհրդոց եւ վասն ախտից եւ առաքինութեանց, հել(են)ացի՝ դիակրիսիս, այս ինքն դատողութիւն։ Դատողութիւնն ի վերայ նոր եկելոյն, այս է զինքն ինքեամբ ստուգապէս գիտել... (Թղ. 162ա)։

[ԻԷ.] Վասն Դատողութեան բարւոք զատելոյն։ Որպէս փափագէ եղջերու պասքեալ յաղբերս ջրոց, նոյնպէս կրաւնաւորաց փափաքելի է... (Թղ. 179բ)։

[ԻԸ.] Նորին գլխաւորեալ եւ համառօտ բան վասն յառաջասացելոց։ Հաւատ հաստատուն այր հրաժարման եւ հակառակն

սորա յայտ է յոյս անխոտորելի անձին անհոգութեան դուռն եւ գիմամարտ սորա յայտնի... (Թղ. 192բ):

27. [ԻԹ.] Նորին վասն քահան(այականին այն) հանդարտութեան հոգւոյ եւ մարմնոյ: Միայնակեաց առէ յոյնք հանդարտելն: Մեք որ միշտ վաճառեալ եւ ծառայ եղեալք անսուրբ ախտից եւ հնազանդեցաք նմա, յայսմանէ եւ (զնենգութիւն) եւ զներգործութիւն եւ զկարգ եւ զամենայն գործ եւ զքանիանութիւն ծանեաք... (Թղ. 198ա):

[Լ.] Վասն իւրաքանչիւր հանդարտելոյն զանազանութեան եւ զատողութեան եւ բացորոշութեան: Եւ այս եւս ամենեցուն յայտնի է, եթէ առ ամենայն արուեստս եւ գործ զանազանութիւն գոյ կամաց եւ խորհրդոց եւ չափոց իւրաքանչիւրց... (Թղ. 202բ):

28. Նորին վասն քահանայականին եւ մաւր ամենայն առաքինութեան, երանելի աղաւթից որ ի նմա մտաւք եւ սպասարանաւք յառաջ գալ: Աղաւթք է բնութեամբ իւրով միաւորութիւն մարդկան եւ Աստուծոյ: Իսկ ներգործութեամբ իւրով աշխարհի հաստատութիւն եւ հաշտութիւն ընդ Աստուծոյ...:

29. Նորին վասն որ ի վերայ երկրի երկինք. աստուածանման անախտութիւն եւ կատարելութիւն եւ յարութիւն հոգւոյ յառաջ քան զհասարակաց յարութիւն: Ահաւասիկ մեք ստուգապէս եղեալ ի գուբս անդի-

*տութեան խորին եւ ի մութն ախտից եւ ի ստուերս մահու մարմնոց մերոց...»:*

30. *Նորին վասն կապակցութեան առաքինութեան. երկրորդական առաքինութեանց, որ են հաւատ, յոյս, սէր: Իսկ արդ ստուգապէս զկնի յառաջասացելոցն ամենեցուն կեան երրորդքս այսոքիկ· որ եւ զկապ ամենեցուն ամրացուցանէ...* (*Թղ.* 224*ա*):

## ՆՈՐԻՆ ԱՌ ՀՈՎԻՒՆ[16]

Յառաջաբանութիւն: Յովհաննու առ Յովհաննէս:

*Յերկրաւոր եւ ի ներքին յոյս գիրս ես զքեզ, ով սքանչելի, քան զամենեսեան յետոյ կարգեցի· իսկ ի վերին յերկնաւոր հաւատամ զքեզ քան զամենեսեան զմեզ՝ ի գրելն Աստուծոյ՝ յառաջագոյն գոլ...:*

Վ. *եւ սէր է Աստուած եւ Աստուած սէր է:*

*Վերջ գրոցս Սանդղոց Յովհաննու Սինա(ե)ցւոյ:*

Ձեռագիրք: *Բեռլին*, *Թ.* 25 (1361): *Էջմիածին*, 1925 (1401): 1919 (1683): 1924 (1653): 1926 (1660): 1927 (1657): 1928 (1760): *Լազարեան Ճեմարան*, 10 (*ԺԸ*):

---

[16] *Այս գրուածքը, զոր կցած է Յովհ. Կլիմակոս իր «Սանդուխք»ին, ինքնակաց գործ է, ուր կուտայ առաջնորդաց յարմար խրատներ: Այս կը պակսի Բեռլինի օրինակին մէջ, թերեւս թղթերու անկման հետեւութեամբ: Ինչ ինչ ձեռագիրներ, այսպէս Զարբ. եւ Վատիկ. կը խորագրեն. «Յառաջաբանութիւն». ուղիղն է. «Բան առ Հովիւն: Յառաջաբանութիւն: Յերկրաւոր...»: Կը հետեւիմ* D *խումբին:*

*Դադեան* 70 (1329, *Թոփճեան*, *Ցուցակ*, *էջ* 84—86)։ *Երուսաղէմ*, 623 (1591)։ 1220 (*ԺԸ*)։ 1551 (1743)։ *Վատիկան*, *Բորգեան*, 75 (*ԺԸ*. Tisserant, Codices armeni, 134—136)։ *Վենետիկ*, *Մխիթ.*, 4 *օրինակ* (*երեքն նորագիր. մին* 1551*էն*)։

ԴԱՆԻԷԼ ՌԱՅԻԹՈՒԵՑԻ

*Յովհաննէս Կլիմաքոսի «Սանդուխք» երկասիրութեան կցուած է անոր «Կեանքն եւ քաղաքավարութիւնը», «զոր գրեաց Դանիէլ կրօնաւորն սիւնակեաց Ռայիթուոյ լերինն»։ Այս գրուածքէն միայն ծանօթ է մեզի Դանիէլ. թէ երբ ապրած է, կը մնայ անյայտ։* D *խումբի ձեռագիրները «Սիւնակեացը» վերածած են «միայնակեացի»։ Տեսանք վերագոյն, թէ* B *ձեռագրին մէջ նաեւ Մինաս Տրապիզոնցի կրօնաւորը յորջորջուած էր «Սիւնակեաց»։ Սիմէոն Թարգմանիչ կ'երեւայ թէ «միայնակեաց» եւ «սիւնակեաց» հոմանիշ բառ համարած է։ Յունարէնը* MG 88, 596—609։

D *խումբի ձեռագիրները իրեն վերագրած են նաեւ «Լուծմունք դժուարիմաց եւ նուրբ բանից, որ կան ի գիրքս յայս կոչեցեալ Կլիմաքս. արարեալ Դանիէլի, վասն ելիցն յաշխարհէ»։ Այս «Լուծմունքը» չէ պահուած Բերլինի Թ.* 25 *ձեռագրին մէջ, բայց ունի Էջմիածնի Թ.* 1925։ *Յոյն ձեռագիրները չեն ճանչնար Դանիէլի անուամբ*

այապխսի Լուծմունք: Այն պարագան, ո Դանիէլի անունը զետեղուած է ընդ մէջ «կոչեցեալ Կլիմաքս» եւ «վասն ելից յաշխարհէ» բառերու, կասկածելի կ’ընէ «արարեալ Դանիէլի» կամ ինչպէս այլ ձեռագիրներ ունին «արարեալ Դանիէլի կրօնաւորի Ռայիթեցւոյ» յաւելուածը. վասն զի «ի գիրքս յայս կոչեցեալ Կլիմաքս [վասն] ելիցն յաշխարհէ» մէկ ամբողջութիւն է, ուստի Դանիէլ չէր կրնար գրել Լուծմունք... վասն ելիցն յաշխարհէ»: Այս «Լուծմունք» նախնաբար անանուն եղած ըլլալու են: «Սանդուխք» գրքի համար բազմաթիւ Լուծմունքներ հասած են յանուն Յովհ. Ռայիթուեցւոյ, Եղիա Կրետացւոյ, Փոտ պատրիարքի. կան նաեւ անանուն Լուծմունքներ (Հմմտ. Krumbacher-Ehrhard, Geschichte der byz. Lit., 144): Վրացերէն թարգմանութեամբ կը յիշուի Փոտ պատրիարքի Լուծմունքը (Ջաւախով, էջ 24):

Հայերէնը նոյն չէ Յովհ. Ռայիթուեցւոյ Լուծմանց հետ: Բիւզանդագէտներու կը թողում ստուգել, թէ ինչ բնագրէ կատարուած է հայերէն թարգմանութիւնը: Առ այս կը ներկայացնեմ հայերէն Լուծմանց ցուցակը, ինչպէս կը գտնեմ զայն ցուցակագրուած Յ. Թօփճեանէ:

Կարեւոր կը համարիմ Բերլինի Թ. 25էն հանելով տալ հոս Դանիէլ Ռայիթուեցւոյ գրած «Կեանքն եւ քաղաքավարութիւնն» Յովհ. Կլիմակոսի, թէեւ թերակատար ըլ-

*լայ այն վերջաւորութեան մէջ: Սիմէոն Պղնձահանեցւոյ գրչէն է այն, թարգմանուած վրացերէն թարգմանութենէ: Իր արտայայտութիւնն՝ լեզուն եւ ոճը պայծառ կը տեսնուի հոն, այնու որ թարգմանութիւնը կատարուած է անկաշկանդ: Մարտիրոս անունը երիցս գրուած է «Մարտիրի», ինչպէս սովոր են կոչել Վրացիք:*

Կեանք եւ քաղաքավարութիւն երանելի սուրբ հաւրն մերոյ Յովհաննու, հաւրն Սինէի, որ կոչի Կղիմաքս, զոր գրեաց Դանիէլ կրաւնաւորն Սինակեաց[17] Ռայիթ(ու)ոյ լերինն:

*Ոչ է կարող բանք իմ, ով սիրելի եղբարք, պատմել թէ ո՛ր էր քաղաք, յորում ծնաւ եւ սնեալ եղեւ ախոյեան զաւրականս այս աստուածպաշտութեան, յառաջ քան զմտանելն իւր ի ճգնութեան ասպարէզն. վասն զի ոչ կարացի գիտել ճշմարտութեամբ: Իսկ եթէ ո՞ր է քաղաք, յորում այժմ բնակի եւ անմահական երանութեամբն փափկանայ երանելին այն, ոչ անգիտանամ: Զի բնակեալ է ի քաղաքն յայն, ուր բնակչութիւն այնոցիկ է, զորս բարձրաձայն փողն եկեղեցւոյն Քրիստոսի Պաւղոս քարոզէ, եթէ Նոցա որոց քաղաքավարութիւնն յերկինս է. անդ կեալ երանելիս այս եւ*

---

[17] *Այսպէս* B. *իսկ* D *Մենակեաց Ռութայ լ.* E 1915 *միայնակեաց Ռայիթու լ.* E 1924, Vat. *Մենակեաց Ռութայ լ.:*

զուարճանայ իմանալաբար յանյայտելի բարութիւնսն եւ զանտեսանելի գեղեցկութիւնն եւ զանհասելին մտաւք տեսանէ. եւ արժանի ըստ քրտանց իւրոց վարձս սփոփ ի վերայ նորա. եւ վասն աշխատութեան իւրոյ առեալ է պատիւ զարքայութիւնն երկնից. եւ է եւ եղիցի յաւիտեանս ի նմա, որոյ ոտքն կացին յուղղութիւն: Իսկ եթէ որպէս ընդ աննիւթն միաւորեցաւ նիւթականս այս, պատմեմ ձեզ:

Էր սա վեշտասան ամի մարմնոյ հասակաւ, ամենագովս եւ բիւրաւոր ամաց մտաւք եւ իմաստութեամբ, յորժամ մատոյց զանձն իւր ընծայս կամաւորական եւ պատարագ մեծի քահանայապետին Քրիստոսի, առ որ ընծայեաց զմարմին իւր ի լեառն Սինեայ եւ զհոգին իւր ի լեառն երկնից: Եւ այսպէս ի ձեռն աւտարութեան, որ է առաջնորդ ամենայն առաքինութեանց, զախտս համարձակութեանն յարմատոց խզեաց յիւրմէ եւ ստացաւ խոնարհութիւն յոյժ. եւ արտաքսեաց զխաբողական ախտ ինքն անաւրէնութեան եւ զհետեւումն կամաց իւրոց. քանզի խոնարհեցոյց զպարանոցն ընդ հոգեւոր վարդապետաւն, որպէս զի անաշխատ եւ առանց ալէկոծութեան ընթասցի նա ի ծով խիստ այսու կենցաղավարութեանս. եւ այնպէս հնազանդեաց զանձն իւր առաջնորդին, իբր եթէ անբան է եւ հեռացեալ ի կամաց հոգի ունելով: Եւ սքանչելի այս էր, եթէ այն, որ ուսեալ էր զամենայն իմաստասիրական

եւ զհռետորական զերկոտասան ուսումն, զիա՞րդ աշակերտեցաւ մարդոյ պարզամտի, որ անգէտ էր այնու ամենայնի. եւ յետ հնազանդելոյն երկնային խորհրդով եւ առաքինութեամբ եւ խոնարհութեամբ՝ հալածեաց յիւրմէ զիմաստասիրութեան հպարտութիւնն. եւ կոչէր վարդապետին իւրոյ, որ եւ հարթեաց զնա, Մարտիրի, որ բնակեալ էր ներքսագոյն քան զսուրբ հայրն Անտոն, որ մերձ է ի ծովն Կարմիր: Յայնժամ եկեալ հեթանոսք ի վանք սոցա, որ բնակեալ էին ի լերինս մերձ նոցա. եւ աւարեալ զվանսն՝ սպանին ի հարանցն անձինս վեց. եւ միոյ ի սպանելոցն կոչէր Կոնոն, որ եւ զծածկեալսն գիտէր եւ շնորհք մարգարէութեան ունէր յԱստուծոյ: Իսկ հայրն Մարտիրի առեալ զմարմինս նոցա եւ եդ ի փոքր այրի ինչ եւ ծեփեաց զդուռն այրին կրով եւ վիմաւք մեծամեծաւք, եւ գրեաց ի վերայ զանուանս նոցա մինչեւ թաղեսցէ զնոսա: Եւ զկնի երկուց աւուրց գայ տեսանել զտեղին, զի մի գազան ինչ փորեսցէ զնոսա. եւ կամէր թաղել. եւ եգիտ զդուռն պահեալ զգուշութեամբ եւ գիրն ամբողջ ի վերայ. եւ բացեալ եմուտ ի ներքս, զի առեալ թաղեսցէ զնոսա: Եւ մինչ եմուտ, ոչ գտաւ երկուս ի մարմնոց նոցա. զի փոխադրեաց զնոսա Աստուած ուր եւ կամեցաւ. եւ էին փոխադրեալ մարմինն աբբա Կոնոնի եւ այլոյ եղբաւր մեծի ումեմն: Իսկ մեք յառաջի բանն եկեսցուք:

Քանզի յորժամ հայրն Յովհաննէս կրաւ-

նաւոր եղեւ վեշտասան ամաց գոլով, եւ տարաւ զնա հայրն Մարտիրի ընդ ինքն առ աբբա Յովհաննէս, որ բնակեալ էր յարտաքին յանապատն Կեղարու. եւ աշակերտն իւր Ստեփաննէ ընդ ինքն բնակէր: Եւ իբրեւ ետես զնոսա ծերն, յարուցեալ արկ ջուր ի կոնք եւ լուաց զոտս նորա. եւ ոչ էլուաց զոտսն Մարտիրի: Իբրեւ ետես Ստեփաննէ աշակերտ ծերոյն, գայթակղեցաւ ընդ միտսն եւ ընդ եղեալ գործս: Եւ իբրեւ գնաց աբբա Մարտիրի եւ աշակերտն իւր, գիտէր ծերն Յոհաննէս զի ծածկագէտ էր, եթէ գայթակղեալ էր ընդ միտս աշակերտն իւր, եւ ասէ. Ստեփանէ, ընդէ՞ր գայթակղեալ ես, որդեակ. ճշմարիտ ասեմ քեզ, ոչ գիտեմ զմանուկս զայս. այլ առաջնորդ լերինն Սինեայ եկն եւ ես զոտս առաջնորդին լուացի: Որ եւ զկնի ԽԳ. ամաց առաջնորդ եղեւ լերինն Սինեայ, որպէս ասաց ծերն: Եւ ոչ եթէ ծերս միայն մարգարէացաւ վասն սորա, այլ եւ Սարատի միայնակեացն, որ ոչ երբեք ելեալ էր ի սենեկէ իւրմէ |||:

Վ. (ըստ D) ի ներքոյ խրատք տեսութեան ի փառս անեղին Աստուծոյ:

Լուծմունքն դժուարիմաց եւ նուրբ բանից որ կան ի գիրքս յայս կոչեցեալ Կլիմաքս, արարեալ Դանիէլի[18], վասն ելիցն յաշխարհէ:

[18] Այսպէս D. իսկ էջմ. 1924, 1925, Vat. «Դ. կրաւնաւորի Ռայիթեցւոյ»:

*Ա. Զինչ է ուրացումն եւ ատելութիւն: Այլ զայս ուսուցանէ...:*

*Բ. Վասն Անհոգութեան: Որ ի բարկութիւն եւ ի չարակրութիւն անչփոթելի...:*

*Գ. Վասն Հնազանդութեան: Դատողութիւն ի բաց դրումն...:*

*Դ. Վասն Ապաշխարութեան: Ինքն զատեալ եւ ինքն...:*

*Ե.—ԺԵ. Վասն յիշատակի մահուան, սգոյ, բամբասողութեան, ստութեան, չար ոխնոյ որովայնին, անապականութեան, անմտութեան, արթնութեան, մնափառութեան, հպրտութեան, խոնարհութեան:*

*ԺԶ. Վասն Դատողութեան խորհրդոց: Ութ են ազգային խորհուրդք...:*

*ԺԷ.—ԺԹ. Վասն Հանդարտելոյն, Աղաւթից, Անախտութեան:*

Վ. *«Դատարկացեալք ի գործոց չարեաց եւ գործովք չարեաց»*: (D 70, *թղ.* 301*ա*—334*բ*, *Յուց.*, *էջ* 85):

Ձեռագիրք Ա. եւ Բ. Յաւելուածներու: *Բեռլին*, *Թ.* 25, 229*բ*—231*բ* (1361. ա. *թեբի*): *Էջմիածին*, 1925 (1401): 1924 (1653): 1926 (1660): 1927 (1657): 1928 (1760): *Դաշեան*, 70, 291*բ*—334*բ* (1329. *Յուցակ*, *էջ* 85): *Վատիկան*, Borg., 75, 173*ա* (Tisserant, 135—136): *Եւ այլն:*

## ՅԱԻԵԼՈՒԱԾ ՅԷՋՆ 109

Այս Վարդանի կը հային Յովհ. Ոսկեբերանի Մատթէի Մեկնութեան Վենետիկի Մխիթ. Ձեռագրին Յիշատակարանի տողերս, գրուած յԱկներ 1329ին ի ձեռն Գրիգոր գրչի. «Եւ գլխման արժանին զսուրբ քահանայն՝ զարեամբ նահատակն զՎարդան, որ բազում տառապանօք էր գրեալ զօրինակս, երիս օրինակս մերձ ունելով. եւ մեզ դիւր ճանապարհ էր կազմեալ» (Սիսուան, էջ 155): Այս ինքն օրինակութեանս գաղափար օրինակը գրուած էր Վարդանէն, որ օրինակութեան ժամանակ աչքի առաջ ունեցած էր նոյն Մեկնութեան երեք օրինակներ, եւ անոնց բաղդատութեամբ վերակազմած էր իր օրինակութեան բնագիրը:

## Դ. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ

Ձեռագիրներու մէջ յաճախ կը պատահինք միանձնական կեանքի հայող խրատներու հաւաքածոյքի մը, որուն հեղինակ կը նշանակուի «Յովհաննէս Աստուածաբան»: Հեղինակը իր ինքնութեան մասին որ եւ է ակնարկութիւն չ՚ըներ: Իր գրուածքներն ուղղուած են «Եղբօր» մը կամ «Եղբարց»: Ուզած է ձեռնարկել գրուածքիս, բայց զգացած է իր անկարողութիւնը. աստուածուստ ունեցած է սակայն թելադրութիւն, միջամուխ ըլլալու գործին աներկիւղ: Կը յիշէ մէջ ընդ մէջ անապատականներու խոստովանութիւններ, առանց անուան:

Յոյն եւ Ասորի գրականութեան մէջ այս յորջորջումով մատենագիր ծանօթ չէ: Մերիններէն ոմանք նոյնացուցին կամ նոյնացնել ուզեցին Յովհ. Կլիմակոսի հետ, այսպէս ՆՀԲի հեղինակները. «Յիշին եւ բանք ինչ նորա (այս ինքն Կլիմակոսի) յընթացս Հարանց վարուց»: Այդ յիշուածները «Յովհ. Աստուածաբանի» անունը կը կրեն: Հ. Գ. Զարբանալեան, Մատենադարան, էջ 538, կը գրէր. «հաւանօրէն Կլիմաքոսի է նաեւ այս երկասիրութիւն»: Հ. Յ. Տաշեան իր Մխի-

թարեան Մատենադարանի հայերէն ձեռագրաց ցուցակին մէջ («Ցանկ անուանց», էջ 1124բ—գ) Յովհաննէս Աղեքսանդրացւոյ վերագրած է այս գրուածքները, նկատի առնելով թերեւս որ Թ. 276 ձեռագրին մէջ անոնց յաջորդող հատուածներէն[1] միոյն մէջ Յովհ. Աղեքսանդրացւոյ անունը կը յիշուի:

Ձեռագիրներու մէջ ընդհանրապէս Յովհ. Կլիմաքոսի Սանդխոց եւ անոր Լուծմանց կը յաջորդէ գրուածքս: Այս տեղ զետեղուած էր այն հաւանօրէն ԺԳ. դարու վերջերը Վարդան վկայի օրինակին մէջ: Այս օրինակէն յառաջացած է Դաղեան Խաչիկ վարդապետի Թ. 70 ձեռագիրը, ուր պահուած է նաեւ գաղափար օրինակին յիշատակարաններէն մաս մը, եւ կը համարիմ թէ անոնցմէ մէկն է նաեւ հետեւեալը. «Գիրքս այս, որ է Աստուածաբան Յոհաննու, նոր է թարգ-

---

[1] Այս յաւելուածական հատուածներն են. Թղ. 194ա—200ա. «Անտոնի մեծի սրբոյ անապատականի խրատ ճգնաւորաց. ի նորին վարուցն է». տե՛ս Վարք Հարանց, Ա., էջ 30, տ. 6—48, տ. 25. հատուածս ունի ընտիր ընթերցուածներ, արժանի ուշադրութեան: Թղ. 200ա. «Յովհաննու, որ եւ զձեռագիրն ի Տեառնէ առեալ. Միայնակեաց մի Անտիոքացի գնաց ի սուրբն քաղաքն յԵրուսաղէմ աղօթել...»: Հարանց Վարքի մէջ ներս չէ առնուած: Թղ. 200բ. «Վասն պատարագի, որ յանուն ննջեցելոց կատարի...»: Հրտ. Վարք Հարանց, Բ., էջ 400—401: Թղ. 201ա—202ա. անխորագիր, սկիզբէն պակաս արդէն գաղափար-օրինակին մէջ. կը սկսի. «Առաքեաց զքո սրբութիւնդ...»: Հատուած մըն է Եղեգէոս միայնակեացի կեանքէն. հրտ. Վարք Հարանց, Ա., էջ 665—669:

*մանած յԱսորւոց ի մերս. եւ ես գրոցս հանդիպեցայ սմա ի վանս զԱրդասճոյ (ա՛յսպէս) առ ճգնաւորի ումեմն Ատոմ կոչեցելոյ, որ էր բերեալ զսա ի Թափարականէն. եւ ասէր թէ ոչ կամեցայ գրել կարգաւ... զի ահ եղեւ զարմանալի» (Թօփճեան, Ցուցակ, Ա., էջ 86):*

*Յիշատակարանս շատ խնդրական կէտեր ունի: Նախ իսկ ի՞նչ իմանալու է «ի Թափարականէն». ի Թափարակա՞ն լեռնէ, թէ Ատոմ ճգնաւոր աստանդական, թափառական շրջագայութենէ մը վերադարձին հետը բերած է: Ո՞ւր կը գտնուի Զարդասճոյ կամ Արդասճոյ վանքը, որուն անդամ էր Ատոմ ճգնաւոր: «Եւ ասէր (անշուշտ Ատոմ) թէ ոչ կամեցայ գրել կարգաւ». օրինակութիւնս քաղուածո՞յ մը համարելու է, քանի որ գաղափար-օրինակը չէ ուզած նա «գրել կարգաւ»: Դժբախտաբար Թօփճեան ամբողջութեամբ յառաջ չէ բերած յիշատակարանին վերջին մասը, ուր կը պատմուէր անշուշտ դէպք մը, որուն համար կ՚ըսուի թէ «ահ եղեւ զարմանալի»: Կապ ունէ՞ր այս դէպքը ձեռագրին բովանդակութեան կամ գրչութեան հետ:*

*Մեզի համար հոս կարեւորն այն է, որ գրուածքս իր մասերով «Նոր է թարգմանած՝ յԱսորւոց (լեզուէ) ի մերս»: Թարգմանչին եւ թարգմանութեան տարւոյն մասին խօսք չկայ. բայց թարգմանութիւնը հաւանօրէն ԺԲ. դարուն կատարուած ըլլալու է:*

Ծանօթ հնագոյն ձեռագիրն է Դաղեան Թ. 70, գրուած 1329ին Փոս վանքին մէջ Հայրապետ գրչէն. Ցիշատակարանը տեսանք վերագոյն։ Ապա կու գայ Երուսաղէմի երեք ձեռագիրներէն մին։ Հ. Գ. Զարբանալեան, Երուսաղէմեան ձեռագրին թիւը առանց յիշելու՝ յառաջ կը բերէ միայն անոր Ցիշատակարանէն մաս մը, որուն համաձայն գրուած է ձեռագիրը ՊԼ (1381) թուին «ի մայրաքաղաքիս ընդ ափն Նաւագնաց ծովի Ղատին աղգաց իշխանութեան, ընդ հովանեաւ առ ոտս սուրբ Ցակոբայ և Ցանգիպեկի տեղն» (Մատ., էջ 538)։ Այս Ցիշատակարանը քաղուածօրէն հանուած է Թ. 295էն, Իգնատիոսի Մեկնութիւնն Ղուկասու, գրուած 1381ին ի ձեռն Մարկոս գրչի խնդրանօք Ցովհաննէս աբեղայի, ի Կաֆայ։ Հնութեամբ չորրորդն է էջմիածնի Թ. 1925 յամէ 1401։ Իմ տրամադրութեանս տակ ունիմ Վիեննայի Մխիթ. Մատենադարանի Թ. 276, որ Ժէ. դարէ կ'երեւայ, որ ճշգիւ կը համընթանայ Դաղեան Թ. 70 ձեռագրին։

Գրուածքս բաժնուած է մեծ եւ փոքր հատուածներու կամ գլուխներու առանց թուահամարի։ Անոնց թիւն է ԻԲ։ Դաղեան եւ այլ ձեռագիրք ունին ԻԳ. գլուխ մ'ալ, որ առանց տարակուսի ինքնակաց գրութիւն եղած ըլլալու չէ։ Այս Ա—ԻԳ գլուխները թէ նախնաբար մէ՞կ գրուածքի մասեր եղած են, չենք կրնար հաստատել։ Ինձ կը թուի թէ Ա. Գիրքն ունեցած ըլլայ Ա.—ԺԳ. հա-

տուածներն, իսկ Բ.ր՝ ԺԵ—ԻԲ: Կարելի է այնուհետեւ ԻԳ. հատուածն նկատել Գ. գիրք: Հ. Տաշեան ամբողջն միահետ թուարկելով տուած է ԻԲ. գլուխ: Թօփճեան բաժնած է Ա.—ԺԶ. գլուխներու, ԻԳ.ն բաղատեալ: Իսկ Հ. Գ. Զարբանալեանի Երուսաղեմացի տեղեկատուն հաշուած է բովանդակն «մետասան գլուխք բանից կամ ճառից»: Այս տարբերութիւնները յառաջ եկած են անկէ, որ ցուցակագրողները մանր հատուածներէն մէկ քանին միացուցած են:

Երուսաղեմացի Տեղեկատուն ի մէջ այլոց հաղորդած է Զարբանալեանի, թէ յիշեալ ճառերէն «ոմանք թուին ունենալ կրկին եւ իրարմէ բաւական տարբեր թարգմանութիւնք»: Եւ «Բանասիրաց հետաքննութեան համար» համեմատութեան կը դնէ հատուած մը (Ժ. գլխէն) այդ կարծեցեալ երկու թարգմանութիւններէն (էջ 538): Չէ յիշուած թէ ի՛նչ ձեռագիրներէ առնուած են այս հատուածները, մին առանց տարակուսի վերոյիշեալ 1381ին գրուած ձեռագիրն է, միւսն ըլլալու է Երուսաղէմի Թ. 623 (յամէ 1591) կամ 1251 (յամէ 1743): Այս հատուածները համեմատելով Վիեննայի Թ. 276ի հետ, եկայ այն համոզման, թէ Երուսաղէմեան ձեռագիրները մեծապէս ենթարկուած են փոփոխութեան, նոյն իսկ ազատ խմբագրութեան: Երկուքին հիմն ալ մէկ հայերէն սկզբնագիր է. տեղիք չկայ «բաւական տարբեր թարգմանութիւններ» նկատելու:

Ասոր նոր ապացոյց կարելի է առնել Ա. գլխին համեմատութիւնը Վարք Հարանցի օրինակին հետ, զոր յառաջ պիտի բերեմ: Տեսանք վերագոյն, թէ Յովհ. Կլիմակոսի «Սանդուխքն» ալ ենթարկուած էր ազատ խմբագրութեան. այն ձեռքը (Վարդան վկա՞յ), զոր նշմարեցինք հոն, նաեւ այս տեղ խմբագրողի դերի մէջ է:

ԻԳ. հատուածն, որուն վերնագիրն է «Յաղագս Պատրաստութեան Միաչարաթուն» չունիմ աչքի առաջ. Դաղեան ձեռագրին մէջ գրուած է իբր 20 թուղթ:

Հարանց Վարքի մէջ կայ ինքնակաց ճառ մ'ալ յանուն Աստուածաբանի, այսպիսի խորագրով. «Երանելի հօրն Յոհաննու Աստուածաբանի վասն Երկոտասարդաց Եղբարց»: Առանց տարակուսի անհարազատ գրուածք մըն է այս: Եւ արդէն Հարանց Վարքի հրատարակիչն (Բ. 631 ծան.) ուշադիր եղած է, որ «ի Մատենադարանի Հարց, հատոր ԺԲ. 465 առաջիկայ ճառդ ընծայի հօրն Դորոթէոսի, վերնագրեալ՝ Յաղագս բարեկարգութեան միայնակեցաց: Իսկ ի հատ. Ե. 530 ընծայի հօրն Իսահակայ: Եւ է սա, որպէս երեւի, քաղուած ի բանիցն Սերեպիոնի եպիսկոպոսի յէջ 509. ըստ հին թարգմանութեան օրինակաց մերոց եւ յաւելմամբ բանից ինչ ի կատարածին»:

Այս տեղ կը ներկայացնեմ Յովհաննէս Աստուածաբանի ճառերու Ցուցակը վերնա-

*գրերով, սկզբնաւորութեամբ եւ վերջաւորութեամբ: Նախերգանքը կու տամ ամբողջութեամբ իբրեւ ճաշակ թարգմանութեան: Ստորեւ կը զետեղեմ մանրագիր նոյնին այն խմբագրութիւնը, որ ներս առնուած է Վարք Հարանցի մէջ: Վարք Հարանցի Վենետիկի հրատարակութեան մէջ տեղ չեն գտած այս Ա—ԻԳ ճառերը: Կը յուսամ, թէ բաւական պիտի ըլլայ այս ցուցակը տալը գրականութեան մերձաւոր ծանօթ մատենագէտներու, վերհանելու այն տեղ սկզբնագիրն եւ հեղինակը, բան մը, ինչ որ ինծի չյաջողեցաւ հակառակ ամէն ջանքերուս:*

ԲԱՆՔ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ

Ի կամս Աստուծոյ մարդասիրին եւ ի նախախնամութիւն սուրբ Երրորդութեանն, որ է գոյացուցիչ Հայր եւ Որդի եւ սուրբ Հոգի: Այս են բանք ճշմարտութեան սուրբ հօրն Յովհաննու Աստուածաբանի, զոր ասացեալ է վասն միանձանց եւ անապատականաց, զոր ազդեաց ի նմա Հոգին սուրբ:

1. (Նախերգանք:) *Թողութիւն շնորհեա՛, եղբայր, զի եղի ի մտի իմում սկսանել ի գիրս յայս եւ զարհուրեցայ յոյժ վասն անգիտութեան իմոյ: Եւ ապա ետես Մխիթարիչն զնուաստութիւնս իմ. եւ եկն բնակեցաւ առ իս եւ ի ձեռն հրեղէն կամաց իւրոց զօրացոյց զիս, [զ]որ խոնարհեցաւ առ*

իս ասել, թէ սկսիր համարձակութեամբ եւ մի երկնչիր. ես գրեցից առ քեզ զոր ինչ վայել է. եւ օգնական եմ մինչեւ կատարի. քանզի իշխանութեամբ խօսիմ զիմն յիմաղ: Բորբոքեցաւ հուրն եւ կիզեաց զբնակութիւնս եւ բնակողք տանն զքուն գիշերոյ ոչ գիտեն. զի հուր նոցա ոչ շիջանի. տիւն լոյս է եւ գիշեր նոցա ոչ խաւարի: Եւ ահա սկսայ որպէս հրամայեաց ինձ, զի ջերմութիւն իւր բազմացաւ ի նուաստութիւնս իմ: Աղօթ(ս) արա, եղբայր իմ, զի մի հեռասցի զօրութիւն իւր ի տկարութենէ իմմէ: Երանի ոմանց որ իջանեն ի ծով ժողովել ակունս մեծագինս ի բնակութենէ իւրմէ, զի երանութիւն իւր անման է: Երանի են տեսողքն լուսոյն ճշմարտութեան անտանելի սրբոյ Երրորդութեանն եւ ուրախանան ի նմին ուրախութիւն մեծ անհատ եւ կառուցեալ կան առաջի տեսլեանն այնմիկ. եւ միացեալ ընդ Աստուած եւ մատուցանեն զփառս Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ: Եւ սկսանի յաղօթս շինել զսա ի վերայ հիման սրբոյ Երրորդութեանն: Տէրդ մեր Յիսուս Քրիստոս, որ ի զօրութեան քում կան բնութիւնք բանաւորք ամենայն զատուք իւրեանց, եւ էութիւնք նոցա անարձակելիք որ ի քէն յարմարեցան եւ ի քէն արբցեն զկեանս ուրախութեան եւ զօրութիւն սատանան, տուր մեզ վտանգելոյս եւ նուաստիցս զօրութիւն գրել զհոգեւորա-

*կան իմաստս ներգործութեամբ եւ տպաւորութեամբ սուրբ Հոգւոյդ*։*

*2. Յաղագս զգուշանալոյ յամենայն չար ախտից եւ պատուիրանապահութեան։ —*

---

* *Թէ ո՛րքան փոփոխութիւն կրած են Յովհ. Աստուածաբանի գրութիւններս ձեռագիրներու մէջ, գեղեցիկ ապացոյց կ՚ընձեռէ մեզի Վիեննայի Թ. 279 Հարանց Վարքը, որ հիւրընկալած է այս մասը։ Կ՚օրինակեմ ամբողջութեամբ, թողլով համեմատութիւնը ընթերցողներուս։*

«Բանք հօրն Յոհաննու Աստուածաբանի ասացեալ ազդմամբ սուրբ Հոգւոյն. ի խնդրոյ միանձանց եւ անապատականաց։

*Թողութիւն շնորհեա, եղբայր, զի եդի ի (մտի) իմում սկսանել ի գիրս այս եւ զարհուրեցայ յոյժ վասն անգիտութեան իմոյ։ Իսկ Մխիթարիչն տ(ես)եալ զնուաստութիւնս իմ՝ զաւրացոյ ի ձեռն (հրեղէն) կամաց իւրոց. եւ ինքն ասէ. Զոր խորհեցար՝ սկսիր համարձակութեամբ եւ մի երկնչիր. եւ ես տպաւորեցից զքեզ զվայելչականն եւ օգնական եմ մինչեւ կատարել. քանզի իշխանութեամբ խօսիմ զիմսն յիմդ։ Եւ ետկոյն բորբոքեցաւ հուրն եւ կիզեաց զբնակութիւնս մաքրելով յախտից։ Եւ բնակողք տանն ի գիշերի յայս ոչ ննջեն. քանզի հուր նոցա ոչ շիջանի, տիւն լոյս է եւ գիշեր նոցա ոչ խաւարի։ Եւ ահա ըստ այսմ սկսանիմ. զի ջերմութիւն իւր առատացաւ ի նուաստութիւնս իմ. եւ քեզ մաղթեմ, եղբայր, աղօթել զի մի հեռասցի զօրութիւն նորին ի տկարութենէս մերմէ։ Երանի՛ որոց իջանեն յիմանալին ծով եւ գանգին մարգարիտն չտեմարանեն յոգիս իւրեանց. երանի՛ է տեսողաց ճշմարիտ լուսոյ անճառելի սրբոյ Երրորդութեանն, զի զուարճանան անպատում խնդութեամբ եւ անդեղջ կարծրանան յուրախութիւնն յայն եւ միացեալ ընդ աստուածութիւնն Հօր եւ Որդւոյ եւ սրբոյ Հոգւոյն, սկսանի բարբառել առ նոյ զհարազատ բանս կապակցութեամբ սիրոյ։ Տէր մեր Յիսուս Քրիստոս ի քո զօրութիւնդ կան բնակութիւնք բանաւորք դասուք իւրեանց. եւ էութիւնք նոցա յարմարեալ ի քեզ ըմպեն զկեանս ուրախութեանն եւ զօրութիւն սոսնան։ Տուր եւ մեզ զօրութիւն վատթարելոցս եւ ստորաքարշիցս՝ զօրութիւն գրել զհոգեւորական իմաստս ներգործութեամբ եւ տպաւորութեամբ սուրբ Հոգւոյդ»։*

*Որ արգելու զբերան իւր ի բազում բանից՝ լռեցուցանէ զսիրտ իւր ի չար ախտից...*

3. *Յաղագս օգնականութեան Հոգւոյն սրբոյ, որ տայ ուրախութիւն հնարաւորացն երրորդ ի չափ հասելոցն: — Լոյս ի լուսոյ լուսաւորիչ աշխարհի, որ երեւեցար ի փրկութիւն մեզ...: Որ ոք խնդրէ զԱստուած եղէց եւ ես օգնական նմա...*

4. *Յաղագս պոռնկական խորհրդոցն եւ փախուստի պատերազմի եւ փորձութեանց եւ չար եւ ատելի ախտից: — Փառաւոր ճառագայթ որ յայտնեցար մեզ ի ծոցոյ Հօր...: Եղբարք ի ժամանել փորձանացն ի վերայ, առանց դողալոյ կացեալ ապաւինեսցուք ի Քրիստոս...:*

5. *Յաղագս մոլորութեան բանի դիւացն, որ եւ զբազում եղբարս անյոյս ցուցանեն եւ մոլորեցուցանեն ի ճշմարտութենէ: — Արարիչ ամենայնի եւ հիմն հաստատութեան եղելոց, որ ի ձեռն իմաստութեան զամենայն յօրինեցեր...: Գիտասջիք եղբարք, զի այլ ընդ այլոց հայհոյութեան դեւն չարահնարութեամբ խօսի ընդ հոգին...:*

6. *Վասն բարկացողաց եւ հպարտից: — Բարեբար Աստուած եւ գթած, որ ոչ բարկանաս ի վերայ հպարտից, զի քաղցրութեամբ քով բարձեր զամենայն յանցանս...:*

Զի խաւարէ զառնապէս զհոգիս զազրալի չարութեամբ...:

7. Վասն պարգեւատուութեանց որ կատարի յաղագս միանձանց երրորդ չափահասութիւն: — Քրիստոս զգեցեալ հայր, զի առ քեզ ցնծայ տեսութիւն բանաւորաց ի ձեռն աշխատութեանց...: Արդ ցուցանեմ ձեզ եղբարք, թէ ուստի՞ սկիզբն լինի մխիթարել զմեզ Հոգին սուրբ...:

8. Վասն գործակցութեան առաջին կոչմանն: — Են ոմանք որ զխոնարհութիւն զգեցեալ են յանձինս իւրեանց եւ զխորհուրդս արհամարհեն զերկրամերձս...:

9. Այս է չափահասութիւն երկրորդ հոգեւոր: — Այսուհետեւ փոփոխէ Հոգին սուրբ զգործս իւր ի հոգիս ընտրելոց...:

10. Չափահասութիւն կատարման: — Արդ մերձ եմք մտանել ի սենեակ գանձուց: Տեղի է ուրախութեան եւ ցնծութեան...:

11. Վասն սիրոյ զոր ցուցանեն սուրբ հրեշտակքն առ ճգնաւորսն եւ մխիթարեն զնոսա, եւ յաղագս մոլեգնութեան դիւացն, եթէ որպէս է մոլորութիւն նոցա: — Յորժամ խափանի ոք ի ծուլութենէ եւ կայ ի զղջումն ապաշխարութեան...:

12. Ցոյց ներգործութեան ժամանելոցն ի չափ հոգեւոր տեսութեան աստուածարելոցն: — Յորժամ լոյս աստուածութեանն ծագէ յոգւոջն եւ միաւորի ընդ նմա...:

13. *Առ սոյն խորհուրդ վերատին իմաստ վկայութեան եղբարց։ — Երբեմն յափշտակէ միտք ի ջերմութեան Հոգւոյն սրբոյ, որ ընակեցուցանէ զնա ի լուսաւոր ծով գիտութեան իւրոյ...։*

14. *Յաղագս թէ պատուիրանին պահութեամբ գայ ոք ի գիտութիւն արտաքնոյն եւ ներքնոյն։ — Ահա խնդրեմ ի ձէնջ, եղբարք ընթերցողք բանիցս այսոցիկ, մի ոք ամբոխեալ միտք...։ Վ. Օրհնեալ եղիցին անձինք, որք սպասաւորեն այսմ խորհրդոյ. եւ երանութեան նոցա մի լիցի վախճան... եւ (ընդ) հովանեաւ նորա պահպանեսցին ի հայեցուածոց խեղխ տեսողաց թշնամեացն իւրեանց. ի ծոց Հօր գտցեն զանձինս իւրեանց եւ ամբարձեալ վերասցին ընդ սուրբ զօրութիւնսն երկնից ի յաւիտենական ի կեանսն, որք հոգեւոր սուրբ տեղւոջն կոչեցեալք ժառանգաւորք։ Յիշեսջիք զնուաստութիւնս իմ յամենայն աղօթս, որք գայք զկնի իմ. եւ Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս. ամէն (Թղ. 190ա)։*

15. *Զափ(ք) եւ աստիճանք, որով բարձրանան հոգիք ընթերցողաց ի չափս հոգեւորս ի լրումն կատարելութեան վարուց։ — Որ ոք ցանկայ լինել որդի Աստուծոյ, օտարացեալ ի մեղաց ջերմութեամբ տրոփման...։*

16. *Յայտնութիւն գլխական մրցմանց, որք յետ այսոց լուսաւորելոցն ներգործին: — Յորժամ կամին սուտքն նմանել ճշմարտիցն, զնմանութիւն ճշմարիտ ջերմութեանն զգենուն...:*

17. *Քննութիւն առ ի նոյն իմաստ հոգեւոր տեսութեանց: — Ո՞ կարասցէ պատմել զխորհուրդս որովայնամոլութեան, որ է բղխիչ ամենայն չարեաց...:*

18. *Քննութիւն աւետարանական ճառին, զոր ասաց Տէրն. Հուր եկի արկանել յերկիր: — Որպէս կայծակունք հրոյ բոց արծարծէ..:*

19. *Յորդորումն կրօնաւորաց բարի օրինակօք: — Հոգի միայնակեցին դրախտ է կենաց եւ ի նմա բղխի աղբիւր...:*

20. *Յաղագս ժամանելոյ յանխռով նաւահանգիստն խաղաղութեան երկնաւորի: — Խաղաղութիւն հոգւոյ այն է, յորժամ ոչ գտցի ի նմա չար խորհուրդք բաժանողք, այսինքն ցանկութիւն եւ բարկութիւն արտաքոյ բնականին...:*

21. *Ի նոյն իմաստութեան հոգեւոր գիտութեանն: — Որպէս պատուական է ուղեղն քան զամենայն անդամսն...:*

22. *Բան իմաստութեան: — Երեք են զօրութիւնք մտաց եւ սոքօք խոնարհի եւ բարձրանայ...: Վ. Երանի միայնակեցի որ ոչ դադարի խոկալ ի մշտնջենաւոր կեանսն սաղմոսերգութեամբ, որ է աղօթք մարմնա-*

*ւոր եւ բնաւորական գիտութեան, որ է դարման հոգւոյ: Եւ Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս. ամէն:*

23. *Սրբոյ հօրն մերոյ Յովհաննու ասացեալ Յաղագս պատրաստութեան միաշաբաթուն:*

*Սիրելիք մեր, պարտ է զգուշանալ վասն խորհրդոյ միաշաբաթուն...:*

վ. *Փառաւորել զմինն, որ փառաւորի յերիս անձնաւորութիւնսն...:*

= *Թօփչեան, Ցուցակ ձեռագրաց Գաղեան Խաչիկ վարդապետի.* *Թ.* 70, 402*ա*—421 (*Ցուց.*, *էջ* 85—86) *յամէ* 1329: *Էջմիածին*, *Թ.* 1925 (1401): 1919 (1683): 1924 (1653): 1926 (1660): 1927 (1760): *Վիեննա*, 277, 183*ա*—201*ա* (1737. *միայն* 1—22: *Ցուց.*, 698—699): *Բերլին*, 48, 223*ա*—263, 361—362 (1619. *Վարք Հարանց*): *Երուսաղէմ*, 295 (1381. *Հմմտ. Ջարբ. Մատ.*, 538): 623 (1591): 1251 (1743): §§ 1—2 *Վիեննա*, *Թ.* 66, 417*բ*—14*բ* (1644. *Ցուց.*, 302): վ. թերի): 279, 351*բ*—352*բ* (1640, *վերջը թերի. Ցուց.*, 702): *Հրտ. Վարք Հարանց*, *Կ. Պ.*, 1720, *էջ* 531—533:

24. *Երանելի հօրն Յոհաննու Աստուածաբանի վասն Երիտասարդաց եղբարց:*

*Այս են Վարքն սիրելեացն Աստուծոյ, զի մի լիցի հայել նոցա աստ կամ անդ, այլ*

*առաջի հայել պարտ է եւ ի բազմաբանութենէ հեռանալ...: Վ. Զայսոսիկ զպատուիրանս եթէ պահեսցուք, միաւորիմք առ Աստուած եւ հոգի Աստուծոյ ի մեզ բնակի:*

*Ձեռագիրք՝ Վիեննա, Թ.* 66, *Թղ.* 50*բ*: 279, *Թղ.* 48*բ*:

*Հրտ. Վարք Հարանց, Բ.*, 631—633:

*ՆՀԲ. ասկէ առած է կոչումս. «ի բազմաբանութենէ հեռանալ.* վրք. իր. Բ»:

# Ե. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎՐԱՑ

1. «Վրաց Պատմութիւնը», զոր ունինք հայերէն թարգմանութեամբ, իրենք Վրացիները կ'անուանեն Քարթլիս Ցխովրեբա», այն է «Վրաստանի կեանք»: Գրուածքս ծանօթ էր Վախթանգ Զ. թագաւորի (1703—1724) օրով լոյս տեսած խմբագրութեամբ, զոր ապա լրացուց Վախուշտ արքայորդին:

Մինչեւ 1835 կ'իշխէր վրացագէտներու մէջ այն համոզումը, թէ այս Քարթլիս Ցխովրեբա կոչուած վրական Տարեգրութիւնը առաջին անգամ ԺԸ. դարու սկիզբը կազմուած էր Վախտանգ թագաւորի հրամանով Յանձնաժողովի մը կողմէ: Բայց երբ հրապարակ եկան «Վրաց Պատմութիւնը» հայերէն թարգմանութեամբ եւ Տարեգրութեան այսպէս կոչուած Մարիամ թագուհւոյ օրինակը, որ ԺԷ. դար կը հասնէր, ուստի նախավախտանգեան շրջանին կը պատկանէր, գիտական աշխարհի մէջ այն կարծիքը ստեղծուեցաւ, թէ Քարթլիս Ցխովրեբա լոկ հաւաքոյթ մըն է այլ եւ այլ ժամանակագրական–պատմական գրուածքներու, զանազան հեղինակներէ եւ զանազան շրջաններու մէջ գրուած: Այս Հաւաքածոյին հնագոյն խմբագրութեան ներկայացուցիչն է «Վրաց Պատմութիւնը» իր սկզբնագրին մէջ, որ կը հասնի այժմեան

օրինակին մէջ մինչեւ Դաւիթ Բ․ թագաւորին մահը (1125)։ Այն կարգը, զոր ունի հայերէն թարգմանութիւնը, զուգընթաց է այսպէս կոչուած Մարիամ թագուհւոյ օրինակին հետ։ Վերջնոյս մէջ հետեւեալ կարգով եւ անունով զատաւորուած են ժողովածոյին մասերը․

Ա․ Ղեւոնդիոս Ռուխեցի (Լէոնտի Մրովելի), Վրաց թագաւորներու եւ նախահայրերու եւ տոհմերու պատմութիւն։

Բ․ Ջուանշեր Ջուանշերեան (ըստ Կ․ Կեկելիձէի՝ Ղ․ Ռուխեցի), Վախտանգ Գորգասալի պատմութիւն։

Գ․ Ղ․ Ռուխեցի, Արշիլ թագաւորի Վկայաբանութիւն։

Դ․ Անանուն, Քարթլիի մատեանը։

Ե․ Անանուն, Դաւիթ արքայից արքայի պատմութիւնը։

Զ․ Սմբատ որդի Դաւթի, Բագրատունիներու պատմութիւն[1]։

Այս մասին հայերէն թարգմանութիւնը պահած է միայն տողերս, Արշիլ թագաւորի Վկայաբանութեան վերջը․ «Եւ զասա Պատմութիւնս համառօտ ի ժամանակս չիոթման, եւ եղաւ ի գիրքս որ կոչի Քարթլիս Ցխօրէպա, որ է Պատմութիւն Քարթլայ․ եւ եգիտ զսա Ջուանշեր, գրեալ մինչեւ ցՎախթանգ թագաւոր․ եւ մինչեւ ցայս վայր ինքն յաւել Ջուանշեր․ եւ զգալոցն յանձնեաց տե-

---

[1] Մելիքսեթ-Բէկ, Վրաց աղբիւրները, 129—133։

*տողացն եւ պատահելոցն ի ժամանակին»* (*էջ* 104)։

*«Քարթլիս Ցխովրեբա» տարեգրքին Հայերէն թարգմանութիւնս ծանօթ է ԺԳ. դարու վերջերը պատմագրող հայ մատենագիրներու՝ Մխիթար Այրիվանեցւոյ եւ Ստեփանոս Օրբելեանի։ Իսկ վրական բնագրի գոյութեան յիշատակութիւնը ըրած է Դոսիթէոս Երուսաղէմի պատրիարքը, որ* 1659*ին այցելած է Վրաստան. սա կը հաւաստէ, թէ այդ Պատմութիւնը գրած է Աբխազներու Բագարատ թագաւորը* (991*ին*)*։ Այս տեսութեան համամիտ են Վրացի բանասէրները այնու, որ իրենք ԺԱ. դարուն, առ կանուխ, կը դնեն Պատմութեան կարեւոր բաժիններու գրութիւնը։*

*Ղեւոնդիոս Ռուիսեցի, որ Աթոսի Թ.* 61 *ձեռագրին մէջ կը յիշուի իբրեւ Լէոնտիոս արքեպիսկոպոս Ռուիսի, ԺԱ. դարու մատենագիր էր ըստ Ի. Ջավախիշվիլիի. նոյնպէս ԺԱ. դարու հեղինակ եղած է Վախտանգ Թագաւորի պատմիչը։ Քարթլիի Պատմութիւնը կամ Մատեանը («Մատիանէ Քարթլիսա»), որ Ը—ԺԱ. դարու պատմութիւնը կու տայ, «անտարակոյս ԺԱ. դարուն» գրուած է (Ջաւախիշվիլի)։ Իսկ Դաւիթ արքայից արքայի պատմութիւնը Ի. Ջաւախիշվիլի գրուած կը համարի ժամանակակիցէ մը* 1123—1126 *տարիներուն* [2]։

---

[2] *Մելիքսէթ-Բէկ, անդ,* 140, 186, 214։

Ղեւոնդիոս Ռուխեցի ունեցած է իրեն աղբիւր Մովսէս Խորենացւոյ Պատմութիւնը. իսկ Ագաթանգեղոսի Պատմութեան ծանօթ է ըստ Մելիքսեթ–Բէկի՝ Սիմէոն Մեսոփոտամէսի խմբագրութեան վրացերէն թարգմանութենէն (կատարուած 1081ին) [3]: Այս կէտը կը ստիպէ մեզ Ղ. Ռուխեցին ԺԲ. դարու սկիզբը ենթադրել: Զարմանալի է, որ Ղ. Ռուխեցի անտեսած է ուրիշ հայ աղբիւրներ՝ Կորիւն, Ղազար Փարպեցի, Զ.—Է. դարու Թղթակցութիւնները, Ուխտանէսը եւ այլն, որոնք կրնային նիւթ մատակարարել իրեն թէ քաղաքական եւ թէ եկեղեցական պատմութեան վերաբերեալ:

Պատմութիւն մը, որ ազգին խանձարուրքէն սկսեալ առաջին անգամ ԺԱ.—ԺԲ. դարուն գրի կ՚առնուի, ինքնին հասկանալի է, թէ ո՞ր աստիճանի արժանահաւատութիւն կրնայ ունենալ: Ի. Ջաւախիշվիլի նկատի առնելով Վախտանգ Գորգասալի պատմութիւնը, կը գրէ.

«Ջուանշերի երկասիրութիւնը Վախտանգի ժամանակի պատմութեան համար, բացի մէկ քանի տեղեկութիւններէ, գրեթէ պիտանի չէ. եւ ուշագրաւ է միայն իբրեւ բնորոշող այն բանի, թէ ինչպիսի տեղեկութիւններ եւ ինչպիսի պատկերացում ունէին ԺԱ. դարու Վրաց ուսեալ շրջանակները Վախտանգ Գորգասալի անձի եւ թագաւո–

---

[3] Անդ, 142:

րութեան մասին»։ Պատմութեան համար կը պահէ իր արժէքը ինչ որ աւանդած է Ղ. Փարպեցի այս Թագաւորի մասին (Մելիքսեթ-Բեկ, 185—186)։ Վրաց դարձի եւ Դ.—Է. դարու քաղաքական եւ եկեղեցական հանգամանքներու մասին խօսած եմ այլուր. համեմատէ նաեւ Մարկուարտ, Քասունի եւն։

2. «Վրաց Պատմութեան» հայերէն թարգմանութիւնը պահուած է մեզի Երեւանի Պետական Մատենադարանի Թ. 1902 (ըստ Մայր Ցուցակին՝ Թ. 1680 եւ 1681, այսպէս կրկին համարներու տակ նշանակուած) ձեռագրին մէջ, որ կը պարունակէ.

ա. Թղ. 3բ—127բ. Պատմութիւն Ղեւոնդեայ վարդապետի։

բ. Թղ. 128ա—214բ. Եւագրեայ գրութիւնք եւ Լուծմունք։

գ. Թղ. 215ա—306բ. «Պատմութիւն Վրաց. (սկ.) Յիշատակ արարցուք այսմ. զի Հայոց եւ Վրաց եւ Ռանաց... հայր մի էր սոցա Թորգոմ կոչեցեալ...»։ Կ՚աւարտի. «Հիւանդանայր (Դաւիթ Բ.) զերկրաւոր կեանս ի ԾԳ. ամի կենաց իւրոց՝ յունուարի ամսեան ի. ԻԵ.ն նստուց |||| [4]»։

Ձեռագիրս գրած է Սարգիս գրիչ տէր Համազասպ Մամիկոնեանի հրամանով, ինչպէս կը տեսնուի Թղ. 127բ եւ 214բ զետեղուած յիշատակարաններէն։ Թէպէտ ձեռա-

[4] Ձեռագրիս մասին հմմտ. Brosset, 3e Rapport, 62—63. Ն. Մառ, Сборники, 55—57. Ակինեան, Մատենագր. հետազօտութիւններ, Գ., էջ 34—40։

գրիս գրութեան տարին չէ նշանակուած՝ գլխաւոր յիշատակարանը ինկած ըլլալով, բայց ծանօթ է. այլուստ տէր Համազասպ «յազգէն Մամիկոնեանց», որ Յոհաննավանքին արքեպիսկոպոսն էր ի Կարբի, յիշուած 1279—1311 գրուած արձանագրութիւններու եւ յիշատակարաններու մէջ: Գրչութեան տարին կրնանք մերձաւորապէս նշանակել 1290: Ձեռագիրը 1664ին կը ստանայ Յովհաննէս Կարճաւանեցի, որ կը գրէ թէ «փտեալ կայր», այս ինքն փտտուած վիճակի մէջ կը գտնուէր, զոր ապա նորոգել կու տայ Լօռեցի Շմաւոն վարդապետի: Այս թուականէն ոչ շատ վերջը ձեռագրիս տէրը կ՚ըլլայ Վարդան Բաղիշեցի, որ անկէ օրինակներ հանելէ վերջը 1690ին կը նուիրէ Էջմիածնի Մատենադարանին: Ձեռագիրս տեսած եմ ես 1926ին: Կը սկսի Ղեւոնդի Պատմութեամբ, որուն առաջին թուղթը փտտուած ըլլալուն՝ նորոգութիւն կրած է նոր օրինակութեամբ, որուն հարազատութիւնը կասկածելի է: Թէ անկէ յառաջ ուրիշ մասեր կայի՞ն, կարելի չէ ըսել: Կ՚երեւայ, թէ ձեռագիրը կազմալոյծ վիճակի մէջ էր, վասն զի թղ. 294 եւ 295 նախնաբար, կազմելու ժամանակ, սխալ դասաւորուած են եւ այս առթիւ թուահամարուած իբրեւ թղ. յզ եւ յէ, եւ յետոյ պատչաճ տեղ զետեղուած, հաւանօրէն Վարդան Բաղիշեցիէն: Փտութիւնը կ՚երեւայ թէ ոչնչացուցած է նաեւ Վրաց Պատմութեան վերջին թղթերը, որուն հետեւութեամբ կ՚ա-

ւարտի այժմ «նստուց» կիսակատար բառով, զոր պէտք է լրացնել մօտաւորապէս՝ «նըստուցեալ յաթոռ իւր զԴեմետրէ զորդին իւր...»:

Այս հնագոյն ձեռագիրն է Վրաց Պատմութեան: Մեզի ծանօթ բոլոր օրինակները յառաջագայած են այս պակասաւոր ձեռագիրէն ուղղակի կամ միջնորդութեամբ. ասոնք են.

Երեւանի Պետ. Մատենադարանի Թ. 3070 (1674էն) եւ Թ. 5501 (1683էն)[5]: ԺԹ. դարու երեսնական թուականին Թ. 3070ի տէրն էր Տփղիսի Կարապետ եպիսկոպոսը. ասկէ արտագրուած են Վենետիկի Թ. 218, Թղ. 137բ—171բ (1835էն)[6], Բրոսէի օրինակը (իբր 1841ին)[7], Պետ. Մատենադարանի Թ. 7084 (1840էն) եւ 3052 (Պատկանեանի

---

[5] Ասոնք հաւանօրէն Վարդան Բաղիշեցւոյ օրինակել տուած ձեռագիրներէն են: Վարդան իր կազմած Ամիրտոլու վանքի գրոց Ցուցակին մէջ կը յիշէ ուրիշ երկու օրինակներ ալ, որոնք կը բովանդակեն. 1. Ստ. Օրբէլեան, Ղեւոնդ, Վրաց. պատմագիրք եւ Սմբատ. 2. Զենոբ, Ստ. Ասողնիկ, Ղեւոնդ, Վրաց Պատմութիւն, Մխ. Այրիվանեցի, Ստ. Օրպէլեան (Հմմտ. Ակինեան, Մատ. հետազ., Գ., էջ 39):

[6] Հ. Ե. Սէթեան, որ օրինակած է ձեռագիրս, կը ծանուցանէ, թէ «Ղեւոնդեայ պատմութիւնն եւ Վրաց՝ գաղափարեցան ի բոլորգիր օրինակէ, ընդ որում կային նոյնագիր՝ Ասողնիկ եւ Լաստիվերտցի, եւս եւ Զենոբ՝ նոտրագիր: Ձեռագիրն թէեւ անթուական գիտէ (Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ, Բ., 278—292), բայց Բրոսէ գտած է հոն ՌՃԺԸ (1669) եւ ՌՃԻԳ (1674) թուականները (Hist. XVII):

[7] Հմմտ. առ այս Բրոսէ, անդ:

օրինակը) [8], եւ Պարիսի Ազգ. Մատենադարանի Թ. 210 (1855էն) [9].

«Վրաց Պատմութեան» գիւտը փութաց Levaillant de Florival, Վենետիկէն՝ ի ձեռն Հ. Գ. Այվազովսկիի հաղորդուած տեղեկութեանց վրայ յեցած, հրատարակել Պարիսի Journal asiatiqueի մէջ (1838, էջ 395—399), անճիշդ հաւաստումներով[10]: M. Brosset հոգաց անոր գաղղիերէն ամբողջական թարգմանութիւնը «Chronique arménienne» վերնագրի տակ[11]: Հայերէն բնագիրը լոյս տեսաւ շատ ուշ, նախ «Բազմավէպ»ի 1883—1885 տարիներուն եւ ապա առանձին հատորով՝ «Համառօտ Պատմութիւն Վրաց, ընծայեալ Ջուանշէրի պատմչի», Վենետիկ 1884, էջ 137:

3. Այս «Պատմութիւնն Վրաց» ոչ այլ ինչ է, բայց եթէ համառօտ թարգմանութիւն մը վրացերէն «Քարթլիս Ցխովրեբայի», ինչպէս ցոյց տուած է Բրոսէ եւ հաստատած է Ի. Ջավախիշվիլի: Թարգմանութեան ժամանակը Բրոսէ կը մատնանշէր «ԺԳ. դարէ յառաջ», իսկ Թ. Ժորդանիա եւ Յ. Աբուլաձէ կը համարին ԺԲ. դար: Աւելի ուղիղ դատեց Ի. Ջավախիշվիլի, որ ԺԳ. դարուն

---

8 Պետ. Մատենադարանի այս ձեռագիրներու մասին տես Ի. Աբուլաձէ:

9 F. Macler, Catalogue des manuscrits arméniens et géorgiens de la Bibliothèque Nationale, Paris 1908, p. 116.

10 Հմմտ. Brosset, Hist. XVII—XVIII եւ Additions, 61:

11 Additions, էջ 1—61:

կը դնէ։ Թարգմանիչը հայ մըն է, ըստ Ի. Աբուլաձէի «միաբնակ իր դաւանութեամբ» (էջ 36—37)։

Թէպէտ թերակատար է Պատմութիւնս իր վերջաւորութեան մէջ, բայց վրացի բանասէրներու ընդհանուր համոզումն է, թէ այս պակասը սակաւ տողեր միայն ըլլալու են, վասն զի Քարթլիս Ցխովրեբայի հնագոյն բնագիրը այս տեղ վերջացած պէտք է ըլլայ, այսինքն Դեմետրէ Ա.ի գահակալութեան յիշատակութեամբ, չհաշուելով թարգմանչին եւ գրչին յիշատակարանները, որոնք կ'ենթադրուին։ Ի. Աբուլաձէ կը գրէ. «Թարգմանութիւնը ընդհատուած է 1125 թ. դէպքերով, այս իսկ թիւը պէտք է համարել թարգմանութեան terminus a quoն։ Ճիշտ է, հայերէն թարգմանութիւնն անսովոր կերպով նստուց բառով է ընդհատվում, բայց այս բառից յետոյ տեքստը չպէտք է շարունակվէր. ընդ ամէնը մի քանի տող պիտի լինէր, որովհետեւ Դաւիթ Շինողի Պատմութիւնը բնագրի՝ այս ինքն՝ Քարթլիս Ցխովրեբայի վերջին երկն էր, ինչպէս այս հաւաստել է ակադ. Ի. Ջաւախիշվիլին»։ Իսկ «Դաւիթ Շինողի Պատմութեան գրելու ժամանակը ակադ. Ի. Ջաւախիշվիլին համարում է 1123—1126 թ. որ եւ ընդունում են ուրիշները» (էջ 37)։

Ձեռագրին մէջ բացի վերջաւորութենէն թղթեր ինկած կ'երեւան նաեւ բնագրին մէջերէն, որուն ուշադիր եղած էր արդէն

Բ. Բրոսէ (Hist. XXII)։ Այսպէս կը պակսին էջ 39, տ. 1· Բակուր Ա. (231—246) եւ Միհրդատ Բ. (246—262) թագաւորներու պատմութիւնը. էջ 40, տ. 9. ընդարձակ հատուած մը. «եկն <ի Հայս... եկն> ի Մծխիթա. էջ 95. Բակուր (557—570), Գուարամ (575—600) եւ Ստեփանոս (600—619) թագաւորներու գործերը։ «Նոյնպէս հայրապետների շարքում չեն երեւում Մակար, Սիմէոն (եւ Սամուէլ Ա.) կաթողիկոսները։ Ինչպէս երեւում է, այս թերութիւնը թարգմանչի գործ չէ, այլ արտագրողի»։ Եւ որովհետեւ յիշեալ անունները ծանօթ են Մխիթար Այրիվանեցւոյ, կը հետեւցնէ Ի. Աբուլաձէ. «ուրեմն Մխիթարի ժամանակ եւ նրա ձեռքի տակ եղել է Վրաց Պատմութեան այնպիսի օրինակ, որ սկզբնագրի լրիւ օրինակութիւնն է ներկայացնում» (էջ 34)։ Ի. Աբուլաձէ կը շարունակէ.

«Ինչ վերաբերում է terminus ad quemին, մասնագէտները մեծ մասամբ իբրեւ այդպիսին ընդունում են ԺԳ. դարը։ Իմ կարծիքով, այս երկրորդ սահմանագիծը հեռու է տարուած»։ Ժորդանիա եւ Ի. Աբուլաձէ հայ. թարգմանութեան այն տեղիքէն ուր թարգմանիչն «իբրեւ յաւելուած, Սարկաւագի եւ Դաւիթ արքայի մտերիմ յարաբերութեան մասին է խօսում, գրում է. 'Եւ տեսաք արդեամբ կատարեալ զբան Սաղմոսին (որով Սարկաւագն էր դիմում արքային) ի վերայ թագաւորին, եւ յոլովք ի բանից անտի վայե-

լէին նմա,. եւ յետոյ թարգմանիչը թւում է այն փորձանքները, որոնցից անվնաս մնաց Դաւիթ արքան եւ որոնց մասին խօսում է նաեւ (վրական) բնագիրը», կը հետեւցնեն թէ «թարգմանիչը Դաւիթ Շինողի ժամանակակից է, ամենաշատը՝ կրտսեր ժամանակակից» (37)։ Ուստի, կը գրէ Աբուլաձէ, «նա Քարթլիս Ցխովրեբայի մէջ զետեղուած Դաւիթ արքայի պատմութիւնը կարող էր թարգմանել ԺԲ. դարի միայն երկրորդ կիսում» (37)։ Չեմ կրնար յամենայնի համակարծիք ըլլալ Ի. Աբուլաձէի։

Իրողութիւն է, թէ «Վրաց Պատմութիւնը» թերակատար հասած է մեզի. կ՚աւարտի Դաւիթ Բ. թագաւորի ԾԳ. տարւոյն, յունուար 25ին, այն պահուն, երբ Դեմետրէ Ա. գահ կը բարձրանայ, այն է ըստ ընկալեալ ժամանակագրութեան 1125ին։ Թէ իրօք այս կամ յաջորդ տարւոյն դէպքերո՞վ կ՚աւարտէր Պատմութիւնը, ինչպէս կ՚ընդունին վրացի բանասէրները՝ Մառ, Ջավախիշվիլի եւ այլք, հաւաստեաւ չգիտենք։ Մխիթար Այրիվանեցւոյ տուած Վրաց թագաւորներու արքայացանկը թոյլ կու տայ մեզ ենթադրելու, թէ Պատմութիւնը կը շարունակուէր գոնէ մինչեւ Ռուսուդանի գահակալութիւնը։ Այս մասը, Դեմետրէ Ա.էն մինչեւ Ռուսուդան, ուստի 1125—1223, պէտք է ինկած ըլլայ ձեռագրէն՝ թարգմանչին եւ օրինակողին Յիշատակարաններով միասին, իբրեւ «փտեալ» թերթեր։

Անանուն գրուածքի մը մէջ, որ վերնագիր կը կրէ «Պատմագիրք», այսինքն ցանկ մը հայ ինքնուրոյն եւ թարգմանածոյ պատմագրութեանց, կը յիշուի նաեւ «Վիրք (իմացիր «Վրաց») Պատմութիւն, ի Վրաց լեզուէ թարգմանեալ եղեւ, որ է յԱդամայ մինչեւ ԶՃ (այլ օր. ԶՃ) թուին Հայոց»: Գրուածքիս հեղինակը, որ գիտէ թէ Վրաց Պատմութիւնը «ի Վրաց լեզուէ» թարգմանուած է, եւ կը հասնի մինչեւ 1151 (կամ 1251), կ՚ենթադրէ Պատմութեանս լիակատար օրինակ մը, ուր կար նաեւ թարգմանչին Յիշատակարանը:

Զարմանալի է, որ Մխիթար Այրիվանեցի, որ ունեցած է ձեռքի տակ Վրաց Պատմութիւնս, չէ յիշած զայն իր Պատմագրաց Ցանկին մէջ (էջ 37), թէպէտ յիշատակած է հոն Միքայէլ Ասորւոյ գործը: Այրիվանեցի ասկէ կազմած է «Իշխանք Վրաց», «Թագաւորք Վրաց» եւ «Եպիսկոպոսք Վրաց» ցանկերը (էջ 22—23 տպ. Պատկանեան): Վերջնոյն համար կը ծանօթագրէ. «Զայսչափս գտաք յօրինակս», այսինքն Վրաց Պատմութեան մէջ գտած է եպիսկոպոսաց յաջորդութիւնը «Տէր Յոհանէն մինչեւ տէր Թափոր», եւ իրօք ալ հոն վերջին եպիսկոպոսը յիշուած է Թափոր (էջ 98): Թագաւորաց յաջորդութիւնը հասցուցած է մինչեւ «Դեմետրէ (Բ.) սպանեալ (1289). ՀԹ իշխանք եւ թագաւորք» եւ յաւելուածաբար՝ յիշած է «Դաւիթ» (Զ. 1290—1308) եւ

«Վախթանկ» (Գ. 1301—1304), անյիշատակ թողլով Վախտանգ Բ. 1289—1292 եւ Գորգի Ե. 1299—1301: Ի՞նչ աղբիւրէ քաղած է Այրիվանեցի 1125—1289 տարիներու թագաւորաց յաջորդութիւնը, որոնք են.

(Դեմետրէ Ա. 1125—1154):
Գուրգի (Գորգի Գ. 1154—1184)
Թամար (1184—1212)
Լաշայ Գորգի (Գորգի Դ. Լաշա 1212—1223)
Ըռուսուդան (1223—1247)
Դաւիթ (Դ.) Փոքր (1247—1259)
Դաւիթ (Ե.) Մեծ (1243—1272)
Դեմետրէ (Բ. 1272—1289)
(Վախտանգ Բ. 1289—1292)
Դաւիթ (Զ. 1292—1308)
Գորգի Ե. 1299—1301)
Վախտանգ (Գ. 1301—1304)

Հայ պատմագիրներէն ոչ ոք աւանդած է մեզի այս ցանկը: Եթէ ընդունինք, թէ 1247—1308 շրջանի արքայացանկը կազմած է Մխիթար ինքնին իբրեւ ժամանակակից (մոռացմամբ դուրս ձգելով Վախտանգ Բ.), նախորդ 5 անունները նա քաղած պէտք է ըլլայ Վրաց Պատմութենէն:

Վրաց Պատմութիւնը ձեռքի տակ ունեցած է նաեւ Ստեփանոս Օրբելեան, որ ծաղկած է ԺԳ. դարու վերջին քառորդին եւ վախճանած 1304ին: Սա հիւսելու համար Օրբելեանց պատմութիւնը (գլ. ԿԵ, էջ 269—273, տպ. Էմինի), կ'օգտուի նաեւ ի «Ժա-

մանակագրոց, զոր Քարթլիս Ցխորեբայ կոչեն», այսինքն անոր հայերէն թարգմանութենէն, ինչպէս ինքնին կը խոստովանի. «Եւ ահա ծանեաք ընդ աղօտ ինչ ի Վրաց Պատմութենէն»: Քաղուածքներ կատարած է յատկապէս առաջին երկու գլուխներէն: Եւ որովհետեւ «Վրաց Պատմութեան» մէջ Օրբելեանց մասին յիշատակութիւն չէ գտած, համարած է, թէ «վասն նախանձու Գէորգի Թագաւորին, որ ազգաւ ջնջեաց զնոսա ի Վրաց աշխարհէն, ջնջեցին զանուանս նոցա ի Պատմութենէն իւրեանց եւ յամենայն գրեանց եւ յեկեղեցեաց...: Այլ զի ժտեալ էր յիշատակ նախնական զրուցաբանութեանց նոցա, նաեւ ամենայն արութիւնք եւ գործք երեւելիք ի տանն Վրաց ազգին Օրբելեանց ի նոյին ժամանակագրոցն, զոր Քարթլիս Ցխորեբայ կոչեն...» (272—273), այս պատճառաւ «մեք քննեալ եւ տեղեկացեալ ծանեաք զսակաւս ի բազմաց ի գիտող արանց եւ ի մնացեալ յիշատակարանաց ուրեք ուրեք, եւս եւ յաւանդութեանց նախնեացն իւրեանց, զոր ծանուցին հարք որդւոց մինչեւ ցմեզ»: «Վասն այն մեք ոչ գիտացաք զորպէսն եւ զկարգ բանիցն, զի ըստ կարգի չարայարեալ էաք. բայց զոր գտաք ի հայալեզու գիրս սակաւ ինչ յիշատակ՝ գիցուք» (272—273):

Ստ. Օրբելեանի յիշած «Գորգի», ո՞րն է համանուն չորս Գորգիներէն, որոնք են. Գորգի Ա. 1014—1027, Բ. 1072—1088, Գ. 1154—1184, եւ Դ. 1212—1223: Հաւանօրէն

*խօսքը Գորգի Գ.ի մասին է, ուստի Ստե- փանոս Վրաց Պատմութեան իր օրինակին մէջ ունէր անոր թագաւորութեան «կրճատեալ» պատմութիւնը եւ կը թուի ինձ, թէ ձեռքի տակ ունեցած «Հայալեզու գրոց» մէջ կը գտնուէր նաեւ Վրաց Պատմութիւնը:*

*Մխիթար Այրիվանեցի եւ Ստ. Օրբելեան ենթադրել կու տան որ Վրաց Պատմութիւնը կը բովանդակէր իր մէջ ինչ ինչ նաեւ ԺԳ. դարու պատմութենէն: Անանուն Պատմագրաց ցանկին համաձայն այդ Պատմութիւնը կը հասնէր ցամն ՋՃ* (1151). *Եթէ արժէք տանք Անթիլիասի Մատենադարանի օրինակի «ՋՃ» ընթերցուածին՝ այն կը հասնէր մինչեւ* 1251, *ինչ որ կ'արդարացնեն Մխիթար Այրիվանեցի եւ Օրպէլեան: Այս թուականը կարելի է նկատել Վրաց պատմութեան գրութեան համար իբրեւ* terminus ante quem:

*Զայս հաստատել կը թուի Մխիթար Անեցի, որ ծաղկած է ԺԲ. դարու վերջին եւ ԺԳ. դարու առաջին քառորդին: Անեցի պատմագիրին, որ օգտուած է Բարթլիս Յիսովբերայէն ուղղակի, անծանօթ մնացած է «Վրաց Պատմութիւնը» հայերէն թարգմանութեամբ: Այս կը տեսնուի այն հատուածէն, զոր յառաջ բերած է Վարդան Պատմիչ իր Պատմագրքին մէջ (էջ* 91—92).

*«Իսկ յաղագս Վրաց թագաւորացն սկըզբանց, որ կայ ի գիրս նոցա, եթէ Թորգոմ ութ որդւովք եկն յԱյրարատ գաւառ զկնի ջրոյն մեծի. եւ երեք յորդւոց նորա նախա-*

*դահք եղեն՝ Հայոս եւ Քարթլոս եւ Կոկասոսն, եւ տիրեցին աշխարհաց, եւ իւրեանց անուամբն կոչեցին Հայս եւ Քարթլ եւ Կովկաս, եւ տիրեցին ի ծովէն Պոնտոսի մինչեւ ցծովն Կասբից՝ մինչեւ ցՄիհրան [եւ ցԱրրակ թոռն իւր], որ էառ կին ի Պարթեւաց՝ Սահակդուխտ անուն ի Պարտաւայ. որ եւ ամուլ գոլով հաւատաց ի Քրիստոս, եւ եա նմա զաւակ՝ զՎախտանգ, որ եւ Գուրգասարն կոչեցաւ, որ է Գայլագլուխ ի Պարսից բառն. զի ունէր ի վերայ սաղաւարտին պատկեր գայլոյ յառաջի կոյսն, եւ յետին կոյսն՝ առիւծու: Սա էառ իւր ի կնութիւն զդուստր Լեւոնի կայսեր. եւ ի սմանէ սերեցան թագաւորք մինչեւ ցԹեւտաս, զոր կուրացոյց Արաս. յետ որոյ թագաւորեաց Բագարատ, որդի Գուրգենայ, որդւոյ Աշոտոյ Ողորմածին*[12], *ի վերայ Ափխազաց. այս ըստ Մխիթարայ երիցու ասիցն»:*

*Տեղիքս* «երեք յորդւոց նորա նախագահք եղեն՝ Հայոս եւ Քարթլոս եւ Կոկասոս» *Հայ. թարգմանութիւնն ունի.* «*Եւ ընտրեցան յորդւոց նորա արք ութ արիագոյնք եւ անուանիք. Ա.՝ Հայկն, Բ.՝ Քարթլոս... Է.՝ Կովկաս». վրացին ունի՝* Haos... Karthlos... Cawcas (Hist. 17). «Մինչեւ ցՄիհրան [*եւ ցԱրրակ թոռն իւր*], որ էառ կին ի Պարթեւաց՝ Սահակդուխտ անուն ի Պարտաւայ». *հայերէն թարգմ.* (73). «*Իսկ զօրագլուխն Առանայ Բարգաբօթ տայր զդուստր*

---

[12] *Հմմտ. առ այս Մարկուարտ, էջ* 150, *ծան.* 16:

*իւր ի կնութիւն Միրդատայ... եւ էր անուն նորա Սակդուխտ»: Անիմաստ է փակագծի մէջ առնուած մասը:* «Որ եւ ամուլ գոլով հաւատաց ի Քրիստոս. եւ ետ նմա զաւակ զՎախտանգ». *Հայ. Թարգմ. «Եւ եղեւ նմա դուստր մի Խորանձէ անուն... յետ չորից ամաց եղեւ նոցա որդի... Վախտանգ»* (73—74): «զՎախտանգ, որ եւ Գուրգասարն կոչեցաւ, որ է Գայլագլուխ ի Պարսից բառն. զի ունէր ի վերայ սաղաւարտին պատկեր գայլոյ յառաջի կոյսն, եւ յետին կոյսն առիւծու»: *Հայերէն Թարգմանութիւնն է. «Եւ Վախթանգ արար ի վերայ ոսկիակազմ սաղաւարտին պատկեր գայլու եւ առիւծու. վասն որոյ ի ժամ պատերազմին տեսեալ զնա եւ ճանաչեալ՝ ասէին. Ի բաց եղերուք ի գայլէ եւ յառիւծու. եւ կոչեցաւ նա Գուրգասալ, այսինքն Գայլառիւծ՝ ի Պարսից լեզուն»* (86). *Տարեգիրքն ունի.* Le roi Wakhtang avait un casque d'or, sur lequel se voyait, par-devant un loup, par-derrière un lion... Les Perses... comprenant ce que signifiait l'emblème du loup et du lion, ils disaient... „Dour az gourgasal, i. e. garez-vous de la tête de loup;" de là le roi fut nommé Gorgasal (Hist. 177—178).

*Այս համեմատութիւնները ցոյց կու տան, թէ Մխիթար Անեցի անկախ է Հայ Թարգմանութենէն եւ հետեւած է Քարթլիս Ցխովրէբայի լիակատար օրինակի մը: Կը հետեւցնենք ասկէ, թէ Վրաց Պատմութիւնը*

պէտք է թարգմանուած ըլլայ 1200էն վերջը եւ 1250էն յառաջ։

Թարգմանիչը կարդացած է Արիստակէս Լաստիվերտացւոյ Պատմութիւնը եւ անկէ առած է յաւելուածս, որ կը պակսի վրական Տարեգրքին մէջ.

«Եւ գնաց Վասիլն ի Տրապիզոն. եւ կոչեցեալ առ ինքն զմեծ կաթուղիկոսն Հայոց զՊետրոս ի տօնի յայտնութեանն, եւ օրհնեաց զջուրն առաջի նորա. եւ ետես կայսրն մեծ սքանչելիս ի վերայ ջրոյն, եւ գովեաց զհաւատս Հայոց. եւ գնաց ի Կոստանդնուպոլիս» (էջ 111)։ Լաստ. «...Հրամայէ Թագաւորն Հայրապետին Պետրոսի օրհնել զջուրն ...եւ ի հեղուլ Հայրապետին զտէրունական իւղն ի ջուրսն՝ ցնցուղս լուսոյ ճառագայթից յանկարծակի ծագեաց ի ջուրցն... եւ փառաւորեցին զԱստուած. եւ բարձրացաւ եղջիւր հաւատոյս մերոյ ... եւ ինքն Թագաւորն... երթեալ մտանէ ի քաղաքն իւր ի Կոստանդնուպոլիս» (էջ 19 եւ 21)։

Թարգմանիչը Հաղբատի շրջանէն է. լսած է աւանդութենէ Դաւիթ Բ.ի († 1125) մտերիմ վերաբերմունքը հանդէպ Յովհաննէս Սարկաւագ Վարդապետի, որ կը ծաղկէր Հաղբատ († 1140)։ Իրմէ են հետեւեալ տողերը.

«Այլ ինքն (Դաւիթ Թագաւոր) սիրէր զազգն Հայոց եւ զեկեղեցիսն եւ զոմն հռետոր վարդապետ ի Հաղբատ՝ Սարկաւագ անուն, խոստովանէր նմա զյանցանս իւր. եւ

կորացուցեալ զպատուական գլուխն՝ օրհնէր ի նմանէ. եւ նստէր ընդ նմա եւ փարէր զպարանոցաւ նորա. եւ նա (Սարկաւագ) ասէր. յուծեալ եմ եւ հոտեալ ի ծերութեան եւ. ի բաց գնա յինէն՝ զի մի աշխատ լիցիս: Եւ Թագաւորն համբուրէր եւ ասէր. Անպակաս լիցի հոտս այս յինէն, հայր պատուական: Եւ պարգեւեաց նմա գիւղ առընթեր վանացն՝ ի ծառայութիւն նմա: Եւ ի յօրհնելն զԹագաւորն՝ զայս ասէր՝ եդեալ զձեռս ի վերայ գլխոյն. «Գտի զԴաւիթ ծառայ իմ եւ իւղով սրբով օծի զնա»՝ մինչեւ ցտասներորդ տուն[13]: Եւ զուարճանայր արքայն եւ գովէր զգեղեցկակերպ Թարգմանութիւնն Հայոց: Եւ տեսաք արդեամբ կատարեալ զբան Սաղմոսին ի վերայ Թագաւորին. եւ յոլովք ի բանից վայելէին նմա»: Շարունակութիւնը լայնաբար կը գտնենք Տարեգրոց մէջ (Hist. 379): Ի. Աբուլաձէ եւ այլք այս տողերու մէջ կը նկատեն ժամանակակիցի մը արտայայտութիւնները. ուրիշ խօսքով՝ կը համարին թէ Թարգմանիչը ժամանակակից մ'է Դաւիթ Թագաւորին:

Եթէ Բրոսէի Թարգմանած իմաստով առնենք վերոյիշեալ տողերը եւ ընդունինք թէ Սարկաւագ վարդապետ օրհնած է զԴաւիթ մինչեւ տասներորդ ազգ, զրուցեանս ժա-

[13] Այսինքն Սաղմոս ՁԸ. 21—30 տուները. Brosset թարգմանած է. «J'ai trouvé ... et l'ai oint de mon huile sainte, jusqu'à la 10e génération» (Additions, p. 60). այս իմաստով իմացած է նաեւ Հայ հրատարակիչը:

մանակը հարկ պիտի ըլլար ենթադրել իբր 1290։ Բայց տեղիք չկայ այս իմաստին վրայ պնդել։ Թարգմանիչը նկատի ունի ՁԸ Սաղմասին 21—30 տուներու մաղթանքները։

Նախադասութիւնս «Այլ ինքն սիրէր… գումն հռետոր վարդապետ ի Հաղբատ՝ Սարկաւագ անուն», ցոյց կու տայ, թէ տողերուս գրողը ժամանակակից մը չէ, նաեւ ոչ քաջ ծանօթ մը Սարկաւագ վարդապետի անձին, որ կ՚անուանէ «գումն», չի գիտեր անոր անունը՝ Յովհաննէս, ծանօթ է իրեն այդ «ումն հռետոր Սարկաւագ վարդապետը» իբրեւ մէկը որ ապրած է ի Հաղբատ։ Զայն իբր 1088—1125ի շրջանին կը ներկայացնէ «լուծեալ եւ հատեալ ի ծերութեան»։ Յովհ. Սարկաւագ վարդապետ Վարդան Պատմիչի համաձայն վախճանած է 1140ին, ինչ որ կը հաստատուի նաեւ այլուստ։ Եւ եթէ ան ի խոր ծերութեան որ եւ է Թագաւորի խոստովանահայրն եղած է, այդ կարող է միայն Դեմետրէ Ա. (1125—1154) եղած ըլլալ։ Յայտնապէս կը տեսնուի նախադասութենէն, որ Թագաւորը վարդապետէն տարիքով շատ կրտսեր եղած է։ Յամենայն դէպս հին աւանդութիւն մը նիւթ մատակարարած է հեղինակին, ուր Թագաւորի անունը արդէն ընդ աղօտ կը լուէր։

Այս աւանդութիւնը կը կրկնէ նաեւ Կիրակոս Գանձակեցի, ինչպէս ինձ կը թուի առնելով Վրաց Պատմութենէն։ Եթէ Սարկաւագ վարդապետի անձը իբրեւ «ումն» ծա-

նօթ էր թարգմանչին, նոյնը իր բովանդակ հատակով ծանօթ է Կիրակոսի, որ եւ փոփոխութեամբ յառաջ կը բերէ հատուածը այսպէս. «Եւ կարի յոյժ սիրէր զսա Թագաւորն Վրաց Դաւիթ, հայրն Դեմետրեայ, պապն Գէորգայ եւ Դաւթի. այնքան զի մինչ լսէր զգալուստ նորա՝ յոտն յառնէր եւ ելանէր ընդ առաջ նորա եւ խոնարհեցուցեալ զգլուխն՝ խնդրէր ի նմանէ օրհնութիւն. եւ նա եդեալ զձեռն ի վերայ գլխոյ նորա զայս Սաղմոս ասէր. ‘Գտի զԴաւիթ ծառայ իմ, իւղով սրբով օծի զնա. Ձեռն իմ ընկալցի զնա եւ բազուկ իմ զօրացուսցէ (զնա). Մի մեղիցէ զնա (նմա) թշնամի եւ որդի անօրէնութեան մի չարչարեսցէ զնա,: Եւ ի պատճառս սորա սիրէր թագաւորն զազգս Հայոց» (Կիր. էջ 64—65): Կիրակոս ՁԸ. Սաղմոսի 21—24 տուները միայն յառաջ բերած է: Ինքնին հասկանալի է, թէ ինչո՞ւ դուրս ձգած է Կիրակոս «խոստովանէր նմա զյանցանս իւր»: Զարմանալի է իր կարգին, որ թարգմանիչը, որ ծաթ հայ էր, թոյլ տուած է իրեն Սարկաւագ Վարդապետը Վրաց արքային խոստովանահայրը ներկայացնել:

Թարգմանիչը, որ ըստ Ջավախիշվիլիի ԺԳ. դարուն պէտք է ապրած ըլլայ, ո՞վ կարող է եղած ըլլալ: Մելիքսեթ-Բէկ կը գրէ. «Առ այժմ ոչ մի դրական պատասխան կարելի չէ տալ (էջ 132): Ք. Պատկանեան կը համարէր թարգմանութիւնը «անգրագէտ հայ վանականի մը գործ»: Եթէ թարգմանիչը

Հաղբատի մերձաւորութեան կ'ապրէր, եւ թարգմանութիւնը կատարած է «ի Վրաց լեզուէ», ակամայ աչքիս առջեւ կը ցցուի դէմք մը, որ 1248էն յառաջ կամ ետքը կատարած է այլեւայլ թարգմանութիւններ նոյն «ի Վրաց լեզուէ», ինչպէս Պրոկղի Շաղկապքը, Յովհ. Դամասկացւոյ եւ Յովհ. Սինայեցւոյ գրութիւնք են: Անոր անունն է Սիմէոն քահանայ Պղնձահանքի վանքէն, ոչ շատ հեռու Հաղբատէն: Սիմէոն նախանձախնդիր էր թարգմանել Վրաց գրականութենէն գործեր, որոնք կը պակսէին հայ գանձարանին մէջ. անոնց թուէն էր նաեւ «Վրաց Պատմութիւնը»: Թէպէտ Վրաց Եկեղեցւոյ պատկանած վանքի միաբան էր, դաւանութեամբ ալ օրթոդոքս, բայց սրտով հայ էր, հետամուտ հարստացնել հայ մատենագրութիւնը թարգմանական գրականութեամբ: Եւ որովհետեւ հայ ընթերցողները նկատի ունէր, պիտի զգուշանար բնականաբար Վրաց Պատմութեան թարգմանութեան մէջ խոյս տալ այնպիսի տեղիքներէ, որոնք անհաճոյ կրնային ըլլալ հայ ընթերցողներուն: Այս խոհեմութեան վերագրելու է անշուշտ վրացերէն բնագրի Հայոց հայող թշնամական արտայայտութիւններու մեղմացումը: Նա ոչ միայն նման տեղիքներ բարելաւած է, այլ եւ յաւելուածներ մուծած է Վրաց Պատմութեան մէջ, որոնք հայ ընթերցողներէն սիրով պիտի ողջունուէին: Ուստի ուղիղ չեմ գտներ Ի. Աբուլաձէի որակումը, թէ թարգմանիչը

*«գաւանութեամբ միաբնեայ» ըլլայ: Անգգալի ընելու համար յաւելուածները՝ մինչեւ իսկ զգուշացած է Դաւիթ Բ.ի պատմութեան մէջ գրել «զազգս Հայոց», ինչ որ բնական պիտի ըլլար իրեն համար, այլ գրած է «սիրէր զազգն Հայոց», ցոյց տալու համար թէ վրացերէն բնագրին մէջ այնպէս էր, մինչ նոյն տեղիքը Կիրակոս վերածած է «զազգս Հայոց»:*

*«Քարթլիս Ցխովրեբայ», որ պատմական գրուածքներու հաւաքածոյ մը կը ներկայացնէր, նման «Աղուանից Պատմութեան», հայ թարգմանիչը վերածած է «Պատմութիւն Վրաց», այն է «Պատմութիւն Քարթլայ». ուստի «*Համառօտ *Պատմութիւն Վրաց,* ընծայեալ Ջուանշէրի պատմչի» *յաւելուածական բառերը, զորոնք դրած է Հ. Թիրոյեան իր հրատարակութեան ճակատին, հարազատ չեն: Նա աչքի առաջ ունեցած է ԺԶ. գլխուն տեղիքը. «Եւ գտաւ պատմութիւնս համառօտ... եւ եդաւ ի գիրքս որ կոչի Քարթլիս Ցխօրեպա, որ է Պատմութիւն Քարթլայ. եւ եգիտ զսա Ջուանբեր (կարդա՝ Ջուանշեր), գրեալ մինչեւ ցՎախթանգ թագաւոր, եւ մինչեւ ցայս վայր ինքն յաւել Ջուանբեր»* (էջ 104): *Առ այս կը գրէ Ի. Աբուլաձէ* (էջ 34). *«Այս յիշատակարանից չի երեւում, որ ամբողջ Քարթլիս Ցխովրեբայի հեղինակը Ջուանշերն է եղել. ընդհակառակը, նրան միայն մի մասն է վերագրվում: Յիշատակարանի մէջ մատնանշած «Պատմութիւն հա–*

մատօտ»ը ոչ թէ Քարթլիս Ցխովրեբային, այս ինքն Վրաց Պատմութեան է վերաբերում, այլ Արչիլի Վկայաբանութեան գրքին եւ այդ պատճառով էլ չի կարելի արդարացընել հրատարակիչ Աթ. Թիրոյեանին այն բանի համար, որ նա հրատարակած գրքին տուել է վերոյիշեալ վերնագիրը»:

Վրական բնագիրը, որմէ կատարուած է թարգմանութիւնս, եղած է խուցուրի (հայ. բոլորգիր) գրով. ասոր հետեւութեամբ է, որ թարգմանիչը յատուկ անուններու տառադարձութեան ժամանակ յաճախ շփոթած է վր. ⴕ եւ ⴘ իրարու շատ նման գրերը. ասկէ ծագած են Արքակ (Արշակ), Արտաքիր (Արտաշիր), Ջուանքեր (Ջուանշեր) եւ այլ սխալները, անուններ, որոնք իրեն պէտք է ծանօթ ըլլային Հայոց Պատմութենէն:

Շատ տեղեր վրական յատուկ անուններ փոխանակ տառադարձութեամբ տալու, հայացուցած է բառական թարգմանութեամբ. այսպէս վրաց. Տկէ–Տբա անունը թարգմանած է «Լիճ Մայրոյ» (9). Դեղա–ցիխէ «Մայրաբերդ» (20) եւն. այլուր «Ուփլիսցիխէ որ ասի Տեառնբերդ» (20), «Ցիխէգիղ, որ է Բերդ մեծ» (20): Վրացերէն ⴙⴐⴃⴈⴊⴍⴄⴇⴈ, որ կը համապատասխանէ «հիւսիս», հիւսիսային կողմանք» ասութեան, կը թարգմանուի բառական «ծմակային երկիր» (19) եւն: Տեղ տեղ կը հանդիպինք նաեւ վրացերէնէ փոխ առնուած բառերու, զորոնք հաւաքած եւ մեկնած է Հ. Աճառեան:

Վրական սկզբնագիրը, զոր «Համառօտ» որակած է տեղ մը, կ'երեւայ թէ թարգմանիչն իր կարգին համառօտած է տեղ տեղ, աւելի ուշադիր պատմական բովանդակութեան քան ճոռոմաբան աւելախօսութեան, որով հարուստ են գէթ այժմեան վրական օրինակները: Կարեւոր տեսած է այս համառօտութիւնը մանաւորապէս այնպիսի տեղեր, ուր սկզբնագրի բառական թարգմանութիւնը անհաճոյ կարող էր ըլլալ հայ ընթերցողներուն: Մանր յաւելուածները հայ աւանդութենէն եւ մատենագրութենէն, արդիւնք համարելու է իր հայրենասիրութեան:

Հայ թարգմանութեան կարեւորութիւնը շեշտած է Մ. Բրոսէ (Hist. XXVII) եւ նոյնը կը հաստատեն վրացի բանասէրները. Վրաց Պատմութիւնը կը ներկայացնէ Քարթլիս Ցխովրէբայի մէկ հին ձեռագիրը. այս պատճառաւ ալ արժանի համարեցաւ Բրոսէ ամբողջութեամբ թարգմանելու գաղղիերէնի. «Այս թարգմանութիւնը ինձի շատ օգնեց, կ'ըսէ Բրոսէ, վրացերէն բնագրի ճշգրիտ իմացման համար»: Սկիզբի մասը Պատկանեան թարգմանեց ռուսերէնի, իսկ Յ. Աբուլաձէ (1901) եւ Մ. Կակաբաձէ (1908) կարեւոր տեսած են ամբողջը գրաբար վրացերէնի թարգմանել (Մելքիսեթ-Բեկ, էջ 132): Իր կարգին Լ. Մելիքսեթ-Բեկ հայ թարգմանութիւնը բաղդատութեան դնելով վրացերէն բնագրի հետ, տուած է տարբերութիւնները հայերէն թարգմանութեամբ (անդ,

*էջ 140—224) ճոխացնելով յառաջաբանական տեղեկութիւններով եւ բացատրական ծանօթութիւններով:*

*Այս տեղ կը ներկայացնեմ այն բոլոր գրուածքները, որոնք շօշափած են «Վրաց Պատմութեան» հայերէն ձեռագիրներն եւ առ հասարակ հայերէն թարգմանութիւնը եւ յարակից խնդիրները:*

ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

1. M. Brosset, Des sources originales de l'histoire de Géorgie. Chronique de Waktang. Ancienne traduction abrégée, en arménien: Journal de S. Pétersbourg, 1847, Nr. 249—250.

2. M. Brosset, Rapports sur un voyage archéologique dans la Géorgie et dans l'Arménie, exécuté en 1847—1848. 1re livraison (troisième rapport). S. Pétersbourg 1849, p. 62—63.

3. M. Brosset, Chronique Arménienne: Additions et Eclaircissements à l'Histoire de la Géorgie. S. Pétersbourg (Hist. de la Géorgie) 1851, pp. XVII—XXVII, 1—61.

4. К. Паткановъ, Ванскіе надписи и значение ихъ для исторіи Передней Азіи. О древней грузинской кронике: Журналъ Мин. Нар. Просв. 1883, декабрь, стр. 199—274. *Ք. Պատկանեան, Վանի արձանագրութիւնները եւ նոցա նշանակութիւնը առաջաւոր Ասիայի պատմութեան համար. թարգմ. Խ. Յովհաննիսեան, Արձագանք* 1885, *Թ*. 25, 26. 1886, *Թ*. 1, 2, 5—7, 9—10:

5. Н. Марръ, Сборники притчъ Вардана. Часть III, Приложенія. *Պետերբուրգ* 1894, *էջ* 55—57։

6. Н. Марръ, Изъ лѣтней поѣздки въ Арменію. VII: Зап. Вост. Отд. Имп. Рус. Археолог. Общ. V (1890) 211—241. = *Ն. Մառ, Ամառնային ուղեւորութիւնից դէպի Հայս. Թարգմ. Ո. Անոփեան, Վիեննա* 1892, *էջ* 21—22 (*Հանդ. Ամս.*, 1891, *էջ* 266)։

7. F. C. Conybeare, The Armenian version of Djouansher: Life of St. Nino, p. 67—89 (*անգլիերէն թարգմանութիւն Ս. Նունէի Վարքին*)։

8. *Յուստին Աբուլաձէ, Վրաց Մատեանի հին հայերէն թարգմանութիւնը. Մոգզաուրի ամսաթերթ* 1901, *Թ.* 4 (*վրացերէն*)։

9. *Իւ. Ջաւախիշվիլի, Հին վրացերէն պատմական գրականութիւն, Ա. հատոր* 1916 (*վրացերէն*)։

10. *Եղիա Մ. Քասունի, Վրաց ժամանակագրութիւնը։ Հանդ. Ամս.* 35 (1921), 493—501, 584—598. 36 (1922), 121—131։

11. *Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբիւրները Հայաստանի եւ Հայերի մասին, Ա., Երեւան* 1934, *էջ* 129—224։

12. *Ի. Աբուլաձէ, Քարթլիս Ցխովրեբայի կամ Վրաց Պատմութեան հին հայերէն թարգմանութիւնը։ Հրտ. ի գիրս՝ Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից Պետական Ձեռագրատուն* (*Մատենադարան*)։ *Գիտական նիւթերի ժողովածու, Թ.* 1, *Երեւան* 1941, *էջ* 31—40։

13. *Հ. Աճառեան, Հայերէն նոր բառեր Ջուանշէրի Վրաց Պատմութեան մէջ. Բազմավէպ*, 1921, *էջ* 353—354։

14. J. Marquart, Der Ursprung der iberischen Bagratiden: Osteuropäische und ostasiatische Streifzüge. Leipzig 1903, S. 391—436. *Նոյնը հայերէն թարգմանութեամբ Հ. Մ. Հապոզեանի՝*

*Յ. Մարկուարտ, Բագրատունեաց ծագումը. Վիեննա* 1915 (*Վրական Բագրատունեաց ծագումը, էջ* 74—150)։

15. *Հ. Ն. Ակինեան, Կիւրիոն կաթողիկոս Վրաց. Վիեննա* 1910։

16. *Նոյն, Մատենագրական հետազօտութիւններ, Գ., Վիեննա* 1930, *էջ* 34—40։

17. *Նոյն, Քրիստոնէութեան մուտքը Հայաստան եւ Վրաստան եւ Ս. Նունէ։ Հանդ. Ամս.* 1947—1948։

---

## Զ. ՅՈՒՆԱԿԱՆ ՇԱՐԱԿՆՈՑ

*Որթոդոքս Եկեղեցւոյ հետեւող այն ժողովուրդները, Վրացիք, Ալաններ, Խապտիք, որոնք ունէին ինքնուրոյն լեզու եւ գրականութիւն, իւրացուցին Յոյն Եկեղեցւոյ պաշտամանց գրքերը թարգմանութեամբ: Այս օրինակին հետեւեցան նաեւ այն Հայերը, որոնք ենթարկուած էին որթոդոքս Եկեղեցւոյ, կամաւ կամ բռնութեամբ, Բիւզանդական պետութեան մէջ եւ Վրաստան: Ասոնք կը կոչուէին Հայ–հոռոմներ, նաեւ Ծա(յ)թեր. եւ կազմեցին այդ երկիրներու մէջ համայնքներ: Անոնց ծագումը հին է, հաւանօրէն Է. դարէն եաքը. բայց կազմակերպութիւնը, ինչպէս կ'երեւայ, ԺԲ. դարէն ոչ յառաջ: Մինչ այն, թէ Հոռոմոց աշխարհին եւ թէ Վրաստանի մէջ, անոնց ծիսակատարութիւնը յունարէն եւ վրացերէն լեզուով էր: Գոնէ ծանօթ չեն հայերէն լեզուով ծիսարաններ:*

*Յունական պաշտամանց գրքերը հայերէնի թարգմանելու առաջին փորձը կ'ընէ Սիմէոն Պղնձահանեցի Պղնձահանքի որթոդոքս վանքին մէջ, որ կը գտնուէր որթոդոքս*

*Եկեղեցւոյ հետեւող Իւանէ զօրավարին պաշտպանութեան տակ: Այս մասին ակնարկութիւն մ'ունինք 1584ին պապա Իւաննի (Յովհաննէս արեղայ) գրիչին կողմէ, որ օրինակած է Աթմա վանքին մէջ Վենետիկի Մխիթարեան Մատենադարանի Թ. 630 ձեռագիրը, Հայհոոմ Տարակնոցը. կը գրէ, թէ այն թարգմանուած է «ի վրաց լեզուէ ի մեր (հայերէն) լեզու» պապա Մինասի եւ պապա Սիմոնի ձեռքով: Այս անունները ծանօթ են մեզի. պապա Մինաս կը նստէր Տրապիզոն եւ պապա Սիմոն Պղնձահանքի վանքին մէջ, ԺԳ. դարու առաջին կէսին. անոնք գրաղած էին Յովհ. Կլիմաքոսի Սանդուխք գործի վրացերէնէ հայերէն թարգմանութեամբ: Թէեւ անծանօթ կը մնայ մեզի, թէ ե՞րբ եւ որո՞ւն յանձնարարութեամբ թարգմանած են անոնք յունական Տարակնոցս, բայց նկատի առնելով, որ Պղնձահանքի վանքը վերանորոգած եւ կազմակերպած էր Իւանէ, կրնանք ենթադրել թէ նոյն իշխանի փափագով ձեռնարկուած ըլլայ Տարակնոցիս թարգմանութիւնը ԺԳ. դարու առաջին կամ երկրորդ տասնեակին:*

*Թ. 630 ձեռագրիս մասին կը հաղորդէ ինձ Մեծ. Հ. Ներսէս Տէր-Ներսէսեան տեղեկութիւններս, որոնց համար կը յայտնեմ սրտագին շնորհակալութիւնս Մեծ. Հօր:*

Թուղթ՝ 311. Մեծութիւն՝ 18,3 × 27,4 *հմ.* Գրութիւն՝ *միասին* 12 × 20 *հմ.*, *տողք*

23. Նիւթ՝ *թուղթ*. Կազմ՝ *կաշեպատ փայտակազմ*. Հանգամանք՝ *լաւ*. Գիր՝ *բոլորգիր*. Ժամանակ՝ 1584. Գրիչ՝ *պապա Իաննի*. Տեղի՝ *Աթմա*:

*Մատեանս է՝ Յունական Շարակնոց. մասնաւոր խորագիր չի կրեր: Համառօտ ցուցակ մը, զոր ունիմ աչքի առաջ, կ՚անուանէ «Ժամագիրք Յունաց ի հայ փոխեալ»: Բովանդակութիւնը Հ. Ներսէս կը ներկայացնէ այսպէս.*

*Ա. Թղ.* 1*ա*—148*ա*. *Շարականներ, բաժնուած շաբաթներու եւ օրերու վրայ. «Շաբաթ երեկոյ եւ Կիրակի՝ Յարութեան. Բշ. Հրեշտակաց. Գշ. Կարապետին. Դշ. Խաչի եւ Աստուածածնի. Եշ. Առաքելոց. Ուրբ. Խաչի եւ Աստուածածնի. Շբ. Մարտիրոսաց:*

*Բ. Թղ.* 148*ա*—156*ա*. *Պաղատանք Երաշտութեան, Անձրեւի, Կարկուտի, Երկրաշարժի:*

*Գ.* 1. *Թղ.* 156*ա*—175*բ*. *Ամիս սեպտեմվրի. Հրեշտակապետաց. Ծնունդ Աստուածածնի. Բարձրութիւն պատուական Խաչին (Խաչվերաց):*

2. *Թղ.* 175*բ*—182*ա*. *Ամիս Նոէմվրի. Ժողով անմարմնոցն. Աւետարանչին Մատթէոսի. Գալուստ ի տաճարն Աստուածածնի:*

3. *Թղ.* 182*ա*—220*ա*. *Ամիս Դեկեմվրիոս. Նիկօլաոս, Նախատօնակներ Ծննդեան Քրիստոսի. Ծնունդ Յիսուսի Քրիստոսի:*

4. *Թղ.* 221*ա*—244*բ*. *Ամիս Յունուա-*

*բեռ․ Թլփատութիւն եւ յիշատակ Վասի-լեոսի․ Աստուածայայտնութիւն։*

5․ *Թղ*․ 244*բ*—257*ա*․ *Ամիս Փեւրուարի․ Հանդիպումն Տեառն մերոյ Յիսուսի Քրիս-տոսի (Տեառնընդառաջ)․ Գտումն գլխոյն Յովհ․ Մկրտչի։*

6․ *Թղ*․ 257*ա*—268*ա*․ *Ամիս Մարտի․ Սուրբ Քառասնիցն․ Աւետումն Ս․ Աստուա-ծածնի։*

7․ *Թղ*․ 268*ա*—273*ա*․ *Ամիս Ապրիլ․․․ Ժեօրժու։*

8․ *Թղ*․ 273*ա*—284*բ*․ *Ամիս Մա(յ)իս եւ Իունիս․ Ծնունդ Յովհ․ Մկրտչի, Գլխաւոր Առաքելոցն։*

9․ *Թղ*․ 284*բ*—312*ա*․ *Ամիս Յուլիս, Աւգոստոս․ Փոխակերպութիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի․ Ննջումն ամենասրբուհ-ւոյ Աստուածածնի․ Հատումն գլխոյն Յովհ․ Մկրտչին։*

Դ․ *Յարութեան շարականներ (թղ․ 312աէն յառաջ)։*

Յիշատակարան․ *Թղ*․ 312*ա*—*բ*․ *Դժբախ-տաբար մաս մը պատռած ըլլալով ամբող-ջական չէ․ սակայն կարեւոր մասը կայ։ Հ․ Ներսէս տրամադրած է ինձ վերջին տո-ղերը․ իսկ առաջին տողերը առնուած է Հ․ Բ․ Սարգիսեան*[1]*։ Կը միացնեմ առաջին եւ վերջին մասերը այսպէս․*

---

[1] *Բազմավէպ*, 1894, *էջ* 328 *ծան*․։

«Գրեցաւ սա ձեռամբ եղկելի սուտանուն կրօնաւորի պապա Իաննի ի վանս որ կոչի Նորվան, ընդ հովանեաւ ամենասրբուհի Աստուածածնի եւ մեծ եւ ահաւոր հրեշտակապետացն Միխայելի եւ Գաւրիէլի, վանքն որ կոչի Աթմա, ի սուրբ Ժէործիու եւ սուրբ Աստուածածնի։ Գրեցաւ ի թուիս Հայոց ՌԼԱ (1582)․ տարին կուսն էր․ վերադիրն Զ․ իմ հայրապետն Ղնատիոս մետրապօլիտն։ Ադամայ թուականն ԷՌՂ[2] (7090 = 1582/3)․ Քրիստոսի թիւ ՌՇՁԳ (1583)։ Սուրբ հայրն մեր պապա Մինասի[3] եւ պապա Սիմոնի թարգմանեալ էր ի Վրաց լեզուէ ի մեր լեզու[4]։ Կարգեցի զդա ի վանքնս (ա՛յսպէս) Ադմա, յամենասրբուհի Աստուածածնին․ եւ ի մեծ վկայն Քրիստոսի ի սուրբն Գէորգիէ․ որ գիրքս այս եւ ես եղկելիս պապա Իյանին սատ վճարեմք զկենցաղս մեր։ Եւ աւարտեցի զսա ի մեծ Թվականիս Է․Ռ․Խ․ ընդ (Ձեռ․ ը) Գ[5]․ Հա(յ)ոց Թուվից ՌԼԳ[6]․ տանուտէր Կարիճն․ վերադիրք ԻԸ․ Քրիստոսի ՌՇՁԵ[7]»։

---

[2] Տպ․ ԷՌՇ։

[3] Տպ․ Մինաս է։

[4] Յաջորդ տողերը մինչեւ «աւարտեցի» դուրս ձգած է Հ․ Բ․ Սարգիսեան բազմակէտով։

[5] Հ․ Բ․ Սարգիսեան կարդացած է ԷՌՇԳ․ Հ․ Ներսէս կը կարդայ ԵՌՂ ը Գ․ կ՚ակնարկուի 7093 ամն աշխարհի, ուստի 7093 — 5508 = 1584/6 փրչական տարին։

[6] Պէտք է կարդալ ՌԼԴ (1585)։

[7] ՌՇՁԵ (1585) ունի Հ․ Բ․ Սարգիսեան․ Հ․ Ն․ Տէր-Ներսէսեան կը կարդայ ՌՇՁԷ։

Աթմա գիւղը ըստ Էփրիկեանի (Բնաշխարհիկ Բառարան, Ա., Վենետիկ 1903, էջ 28) կը գտնուի Ակն գաւառին մէջ, այժմ թրքաբնակ. Յ. Ճանիկեան կը յիշէ Թուրք աղանդաւորներ «Աթմացիք. 100—150 տուն. գիւղերնին Արաբկերի հողն է» (Հնութիւնք Ակնայ, Թիֆլիս 1895, էջ 66)։ Նոր Վան հաւանօրէն Ակնայ Վանք գիւղն է Հայ-Հոռոմներու Ս. Գէորգ եկեղեցիով (անդ, էջ 57—58)։

Ձեռագիրս «օրը կամ տօնը նշանակելէ վերջը շատ անգամներ կը դնէ ժամասացութեան հակիրճ նօթեր (rubrica)։ Շարականներու ընթացքին, ընդհանրապէս կարմիր գրով, լուսանցքի վրայ կամ ներսը, համառօտ նշաններ կը գործածէ, շատ նման մեր Աւագ օրհնութիւններու իւրաքանչիւր պատկերի առջեւ գրուածներուն»։ Ձեռագրիս նկարագիրը «մեր ներկայ իմաստով Ժամագիրք չէ, այլ Շարակնոց կամ Տաղարան է»։

Ձեռագրիս Գ. 1—9 ուրիշ խմբագրութեամբ կը գտնենք Վենետիկի Թ. 886 ձեռագրին մէջ։ Հետաքրքրական է այս ձեռագիրն ալ, որուն նկարագրութիւնը Հ. Ն. Տէր-Ներսէսեան այսպէս կու տայ.

Թուղթ՝ 364. Մեծութիւն՝ 12 × 16 հմ. Գրութիւն՝ միասին. Նիւթ՝ թուղթ. Հանգամանք՝ յաւ. սկիզբէն 30 թուղթ կիսով պատռած, նոյնպէս վերջին երկու թղթերը. մերթ նաեւ վերի լուսանցքին հետ տողեր

պակաս․ Գիր՝ մանր բոլորգիր․ Ժամանակ՝ յառաջ քան 1351․ Գրիչ՝ Կարապե՞տ․ Տեղի՝ Կ․Պոլի՞ս։

Մատեանս է Յունական Շարակնոց երկու մասով․ Ա․ մասին սկիզբէն ինկած են 30 թուղթ․ կը սկսի այժմ այսպէս․

Ա․ 1․ Թղ․ 1—14ա․ (Ամիս Սեպտեմվրի) || այլ Սիմէոնի, Մ(ա)մայ, Անթի(մոսի), Բաբելայ, Զաքարիա, Ծնունդ սրբուհոյ Աստուածածնին, սրբուն Եփրոսինա, Յոհաննու Աստուածաբանի, ԺԲ․ Առաքելոց, Խարիտոնի, Ստեփանոսի նոր վկային։

2․ Թղ․ 14բ—44ա․ Ամիս Ոքտեմբրի (Նոյեմբ․ Դեկտ․)․ Սուրբ առաքելոյն Անանիայի, Կիպրիանու, Նիկաւլայոյ, Պելաժիա․․ Նախատաւն Ծննդեան Քրիստոսի (երկար շարականներ խազերով), Ստեփանոսի նախավկային, Սուրբ Մանգանցն, Դաւթայ եւ Յակոբայ։

3․ Թղ․ 44բ—62բ․ Ամիս Յունուարի․ Թլփատութիւն Տեառն Յիսուսի Քրիստոսի․ եւ սուրբ հաւրն Վասիլիոյ, Նախատաւն Աստուածայայտնութեան․ Աստուածայայտնութիւն (երկար շարականներ, առիչիրա)․․․։

4․ Այսպէս նաեւ Թղ․ 63ա—91ա Ամիսք Փեւրուարի—Յուլիսի։

5․ Թղ․ 91ա—171 Ամիս Աւգոստոս․ Սրբոց Մակաբէացւոց, Նախավկ․ Ստեֆանու․ փոխակերպութիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի․ Ննջման սուրբ Աստուածածնի

(երկար շարականներով)․ զանազան կանոններ․ վկ․ Աղաւթանի, վկ․ Ադրիանու եւ Նատալիա, Հատումն պատուական գլխոյն Յովհաննու Մկրտչին․ Պատուական Գաւտուն Աստուածածնի։ Թղ․ 172ա—176ա Ջրօրհնեաց կարգ (երկար), Քրիստոսի Ծննդեան եւ Յայտնութեան կանոններ։ Թղ․ 145բ—147բ զետեղուած է յունարէն կանոն մը։

Բ․ Մաս․ Թղ․ 176ա—364բ․ «Սկիզբն Աստուծով․ Սեփտեմվրի ամսոյ...»․ կը սկսի միւսանգամ, Սեպտ․—Աւգոստոս ամիսներու գլխաւոր տօներու շարականներ․ վերջինն է․ Թղ․ 336—364․ «Աւգոստոս․ Սբ․ Ստեփանոսի գտումն նշխարաց․ Ծնունդ Աստուածածնի․ Աւետարանք եւ ընթերցուածք տօներու։

Այս Ա․ մասին վերջը Թղ․ 171ա կը կարդանք Յիշատակարանս․ «Թարգմանեցաւ սա ի հռոմերէնէն ի հայս ի ձ եւն (կարդա՛ «ի ձեռն) Կարապետին ՚ւ չլուն, ի Կոստանդինուպոլիս»։ Հ․ Տէր-Ներսէսեան ուշադիր կ՚ընէ, որ «Հ․ Աւգերեան Մկրտիչ այդ շլունի մասին կ՚ըսէ թէ (տարակոյսով) չըլլա՞յ որ Շլ հայ թիւն ըլլայ, թէպէտ գրչագիրը այդքան հին չ՚երեւիր»։ Ինձ ծանօթ է Հ․ Ղ․ Ինճիճեանի նկատողութիւնը[8], որ կը գրէ․ «Ունիմք առ մեզ մատեան ինչ Եկեղեցական

[8] Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի․ Մասն Ա․ Ասիա․ հատոր Ա․ (Նոր Հայաստան)․ Վենետիկ 1806, էջ 305։

*երգոց Յունաց, զոր այժմ ի գործ ածեն Հայհռոմք, թարգմանեալ 'ի հռոմէրէնէն ի Հայս, ի ձեռն Կարապետին իշլուն ի Կոստանդինուպօլիս,, որոյ գիր եւ թուղթ ցուցանէ գրեալ զէթ ի ԺԳ. կամ ի ԺԴ. դարու, մանաւանդ թէ աւելի եւս. որոյ նպաստէ եւս, եթէ գրառս* իշլուն *ազգուք փոխանակ թուականի. իբր թէ ի ՇԼուն թուականին. որպէս ի բազում ձեռագիրս գտանի գրեալ ըստ այսմ օրինակի. եւ յայտնի երեւի լինել թարգմանութիւն հին Հայհռոմոց, որք էին ի ԺԱ. կամ ի ԺԲ. դարու»: Հայոց ՇԼ թուականը կը համապատասխանէ փրկչական* 1081 *տարւոյն. որ շատ կանուխ է: Կարապետ ըլլալով հայ հռոմ, եւ գտնուելով Կ. Պոլիս, պէտք է գործածէր բիւզանդական թուականը. եթէ կարդանք* ւշլ՝ ցշլ *կը ստանանք* 6730, *որ կը համապատասխանէ փրկչական* 1222 *տարւոյ: Այս տարին ոչ շատ հին է եւ ոչ ալ շատ նոր. եւ կը զուգադիպի մօտաւորապէս Սիմէոն Պղնձահանեցւոյ թարգմանութեան:*

*Ձեռագիրն ունի նաեւ յիշատակագրութիւններս.*

*Թղ.* 184*ա ձեռագիրը քերթուած ու վրան տարբեր գրչէ գրութիւն մը, որ մելանին տկարութեան պատճառաւ այժմ գրեթէ աննշմարելի է. ահա որչափ որ կը կարդացուի. «Ի թվականի Հռոմի մեծի ՑՊԾԹ* (6859—5508 = 1351) *հաստիպեցաւ աստուածաշունչ գիրկս որ է պապա Աւքսենտի. մանակից*

եղաւ ու գնեց պապա Թորոս... ի պարուն Թորոս... որ հողոյ... առնէ զինքն եւ առ Քրիստոս Աստուած եւ տա. պապա Թորոսու... եւ կատարեցաւ... այն մկա: ու... մեղապարտ պատր... այս է գիրք»:

Թղ. 171ա. «Տիրացու Գէորգին Տէր Յոհաննիսեան յիշատակ ուխտիս սրբոյն Ղազարու ի Վենետիկ. ՌՄԼԸ» (1789):

Զենք կրնար հաստատել թէ ձեռագիրս Կարապետ Թարգմանչի սկզբնագիրն ըլլայ: Յամենայն դէպս Ձեռագրին Բ. Մասը կցուած ըլլալու է Ա. Մասին յետ ժամանակաց ընդօրինակողէն, 1351էն յառաջ:

Այս Բ. մասը յէականս ընդօրինակութիւն է Սիմէոն Պղնձահանեցւոյ վրացերէնէ թարգմանած Շարակնոցին, ինչպէս Հ. Ն. Տէր-Ներսէսեան դիտած է, որ 18 կէտերու մէջ նոյնութիւն նկատած է. «Ահա այս կէտերուն մէջ երկար ու նման (նոյն) շարականներ կան: Բայց Թ. 630 ձեռագրի Ա. մասը (Թղ. 1—148ա) չկայ Թ. 886 ձեռագրին մէջ. փոխադարձաբար Թ. 630 ձեռագրին մէջ չկան Թ. 886 ձեռագրի պարունակած սուրբերու շարականները»:

Այս նոյնութիւնը շարականներու բացայայտ կը տեսնուի հետեւեալ օրինակէն, ուր Թ. 630 ընդարձակ խրատագիր մ'ունի, զոր Թ. 886 (Թղ. 202ա) զանց առած է, պահելով միայն վերջին տողը այսպէս. «ԻԱ. Մուտ ամենասրբուհոյ Աստուածած. ի տա-

*ճարն. ի տէր կրդ. շար. ՁԱ. Ո՛ զարմանալ».* *շարականը նոյն է: Թ. 630, Թղ. 186բ. ունի.*

«Գալուստն ի տաճարին սրբուհու Աստուածածնին:

Աղնեմք[9] ագրիպնիա[10] զսովորականն: Երեկոյին պաշտեմք զԵրանելն զ. ա. փխկ. *Ի Տէր կարդացին* կալնումք փոխս Ը. *Ի խորոց կարդացի.* եւ պաշտեմք շար. ՁԱ. *Առ ո՞ զարմանալի սքանչ.* եւ կրկնեմք. զ. ա. եւ այլ շար. ՁԴ. *Որպէս քաջ ի մարտիրոսս.* եւ կրկնեմք զ. ա. *Փառք եւ այժմ. ԿԴ. Յետ ծննդեանդ քո աստուածահարսն:* Լիցի խսօմօն առանց աւետարանի. Մեսեդի զաւուրն: Եւ ընթերցումն խնդրէ ի Ծնունդն Աստուածածնին: Իլիտինն[11] ստիչերա[12] զՁԱ. եւ զՁԴ. *Փառք եւ այժմ* զԿԱ.:

Ի համբարձին շար. ԿԱ. *Առ ուրախացիր:* *Փառք եւ այժմ* ԿԲ: *Այսաւր ժողովք:* Տրոպար[13] ՁԴ. Շարկ. ի Տրկ. ՁԱ. *Ով զարմա.:*

Այսաւր հաւատաց(ա)լք[14] պարեսցուք, սաղմոսիւք եւ աւրհնութեամբ Տեառն երգելով. պատուելով զնորապատուե(ա)լ[15] խորանն, զանձնաւոր տապանակն, որ զանտանելի Բանն տարաւ, քանզի մատուցանի Աստուծոյ, ի վեր քան զբնութիւնս. մարմնով

---

[9] *Այսպէս Զ. իմացիր «առնեմք»:*

[10] *Յն.* ἀγρυπνία. *հսկումն, յետ ընթրեաց:*

[11] *Յն.* ἡλιτὴ *մաղթանք. լիտանիա:*

[12] *Յն.* στιχηρὰ *կցուրդ:*

[13] *Յն.* τροπαρίον:

[14] *Թ.* 886 *հաւատացեալքս:*

[15] *Թ.* 886 *զնորաարբե(ա)լ:*

տղայանալով, եւ քահանայապետն մեծն Զախարիաս[16] ընդունի ուրախանալով զնա· իբրեւ Աստուծոյ բնակարան։

Այսաւր տաճարն անճնաւոր···։»

*Թ. 630 կը ներկայացնէ Յունական Շարականոցի* οκτώηχος *(ութ ձայն) մասը, որ կը պարունակէ ութը ձայներու կանոնները բաժնուած ութը շաբաթներու եւ մէն մի շաբաթի եօթը օրերու. այս ութ ձայներու կանոններուն կը կցուին ապա 12 ամիսներու գլխաւոր տօներու կանոնները, իւրաքանչիւրին առաջ զետեղելով օրուան խրատները* (τυπικόν):

*Թ. 886 կը բաղկանայ երկու մասէ. Ա. մասը, ինչպէս տեսանք, թարգմանած է Կարապետ յունարէնէ. հոս յունական Ամսաւուրքի* (μηναῖα) *սուրբերու յատուկ շարականները ներկայացուած են։ Բ. Մասը ըստ մեծի մասին քաղուածք մըն է Թ. 630ի Բ. Բաժնէն, որով կը լրանան Ա. Մասի մէջ պակսած տէրունական տօներու կանոնները։ Թէ մէկ եւ թէ միւս ձեռագիրներուն կը պակսին Բարեկենդանէն Զատիկ* (τριώδιον) *եւ Զատկէն Պենտակոստէ* (πεντηκοστάριον) *շրջաններու կանոնները, որոնք առանձին հատորներ կը կազմէին։*

*Ինձի ծանօթ է երրորդ ձեռագիր մ՚ալ, Բրիտանական Թանգարանի* (British Museum) *Թ.* 58 (Or. 2611), *որուն նկարագրութիւնը*

---

[16] *Թ.* 886 *զաքարիաս։*

տուած է Ֆ. Կոնիբիր[17]: Ձեռագիրս հասած է մեզի թերակատար. դուրս ինկած են սկիզբէն առաջին 15 թերթերը. ԺԶ. թերթին կը պատկանին թղ. 1—7: ԺԷ.—ԻԵ. թերթերը պահուած են գրեթէ ամբողջութեամբ. կը պակսի շարունակութիւնը: Թղթերու անկում կը նկատուի նաեւ հոս. թղ. 10 հաւանօրէն ԺԵ. թերթին կը պատկանի, այնպէս որ թղ. 9 իր շարունակութին ունի թղ. 11: Թուղթեր ինկած են 24, 31, 35, 39, 51 եւ 72 թուղթերէն ետքը. կ'աւարտի 77 թղթով: Որեւէ յիշատակարան չկայ գրչէն. բայց մաքուր բոլորգիրը ցոյց կու տայ, թէ ԺԴ. դարու գրչութիւն է, ըստ երեւութին Վենետիկի Թ. 630ի ժամանակակից: Ձեռագիրս լուսանկարել տուած էր ինքնաբերաբար Ֆ. Կոնիբիր եւ տրամադրած ինձ (1932ին) ուսումնասիրելու համար: Բովանդակութեամբ կ'ընծայէ յունական 'Οκτώηχος շարականոցը. Կոնիբիր իր ցուցակին մէջ խորագրած է Canons and Troparia.

Ինծի կ'երեւայ թէ ձեռագիրս ըստ բովանդակութեան նոյն է Վենետիկի Թ. 630 ձեռագրին Ա. Բաժնին հետ: Համեմատութեան համար օրինակներ չունիմ:

Կարեւոր կը տեսնեմ Ձեռագրիս բովանդակութիւնը ներկայացնել հոս մանրամա-

[17] Frederick C. Conybeare, A catalogue of the Armenian Manuscripts in the British Museum, London 1913, p. 142—149.

*նորէն, նշանակելով մէն մի կանոնի առաջին տուները:*

*Սկիզբէն կը պակսին Առաջին ձայնի, այսինքն առաջին չաբաթի Շաբաթերեկոյ մինչեւ Եշ. օրերու կանոնները. այժմ ունինք Ուրբաթ օրուան կանոնին մէկ մասը. որ կը սկսի այսպէս.*

1. *Թղ.* 1*ա.* ||| եւ աւգնական. առ որ ծ(նաւ) ի քէն Աստուած. զի քաղցր է ի վերա ծառա(յ)ից իւրոց. որ (աւ)րնհել ծրցն:

Որ զմարդկա(յ)ին բնութիւնս յոչէից ի գոյութիւն էած կանխաւ աստուածապէս. դարձեալ մինչ յախտս անգաւ. ի քէն ծնանելովն յարոյց եւ զարդարեաց. որ ամենայնի կարող եւ հզաւր է, Ամենամբիծ:

Գործք: Աքանչելի:

Որ զհիւանդս բժշկե[ա]լ եկիր. եւ զպատուական արիւն քո ետուր փրկանս երկրի, Քրիստոս Աստուած ամենազաւր...:

2. *Թղ.* 1*բ.* Շաբաթ. կանոն Մարտիրոսաց եւ ննջեցելոց: Աւրհն. ՁԱ. Քո աջ որ է պատերազմաց:

Որ զդրունս մահոյ եւ զնիզս՝ քո մահուամբդ խորտակեցեր, ով անմահ, զդրունս բաց զանմահութեան, Տէր ննջեցելոցն, բարեխաւսութեամբ ճգնաւորացն քո ||| (*Հոս թուղթ մ'ինկած է*):

*Թղ.* 3*ա.* Կաւնդակ Ձկդ: — Հանդերձ սրբաւքն հանգոյ, Քրիստոս, զհոգի ծառաից

քոց, ուր ոչ ցաւք եւ ոչ տրտմութիւնք եւ ոչ հառաչանք, այլ կեանք անվաղջան:

3. *Թղ*. 4*բ*. Այլ կանոն. շաբաթ. Ամենայն սրբոց: Աւրհն. ՁԱ: Քո աջ որ է պատե:

Ի ձեռն մարգարէիցն նմանեցար, որ ձեռաւք ըմբռնես զերկինս. նոցա բարեխաւսութեամբն զձեռագիրն պատառեա զմեղաց մեռոց, Բանդ Աստուծոյ, եւ ի ձեռաց բանսարկուին փրկեա զմեզ...:

4. *Թղ*. 8*ա* (*կիսախորան*). Շաբաթ երեկոյ. Կանոն յետ ընթրեացն. Երրորդութեան եւ Աստուածածնի: ՁԲ. Յանդունդս կ.:

Զսուրբ Երրորդութիւնն եւ զմի աստուածութիւնն զովութեամբ աւրհնեսցուք եւ աասցուք. Ով ոդորմութեան խորք անհասանելի. որ ունիս բնութեամբ պարզեւաց մեծութիւն անթիւ. զերգաբանողքս քո կեցոյ...:

5. *Թղ*. 10*բ*. Կանոն Մարտիրոսաց եւ Ննջ(եցելոց). Աւրհնութիւն:

Գերեզմանաւդ քո զմահն մահացուցեր, եւ քակեցեր զդժոխոցն բռնութիւնն. եւ յերկինս յ||| (*Թուղթ ինկած*):

*Թղ*. 13*բ*. Անաւաթմի Յարութեան. Որդին առաջին. ՁԲ:

Յերկինս զաչս համբարձից զարտի իմոյ, առ քեզ, Փրկիչ, կեցոյ զիս ծագմամբդ քո..:

6. *Թղ*. 14*ա*. Կիրակէ առաւաւտ. Կանոն Յարութեան: Աւրհնութիւն. ՁԲ. Յանդունդս կործանեց. կ.:

Որ է աշխարհի իշխան, զոր ընդունել էաք, ո՜վ բարերար Աստուած. քո պատուիրանացդ ոչ հաւատացաք, խաչիւդ քո դատապարտեալ է. քանզի մարտե(ա)ւ ընդ քեզ իբրեւ ընդ մահկանացոյ. եւ անգաւ քո իշխանական զաւրութեամբդ եւ տկարացաւ յոյժ...:

*Թղ.* 15*ա*. Կոնդակ ՁԲ: — Յարեար Փրկիչ ի գերեզմանէն, ամենազաւր. եւ դժոխքն տեսեալ զքաունչելիսն՝ զարհուրեցաւ. եւ մեռեալք ընդ քեզ յարեան...:

7. *Թղ.* 16*ա*. Այլ Կանոն Յարութեան: Աւրհնութիւն. ՁԲ. Խորոց յայտնեցոյց հ.:

Յորժամ ի փայտին կամաւ կախեցար, Բանդ Աստուծոյ, զփայտին անէծսն լուծեր. եւ զանզեալսն ննենզութեամբ թշնամ(ւ)ոյն յարուցեր իբրեւ Աստուած. որք եւ զոհութեամբ երգէին. Աւրհնեսցուք զՏէր Աստուածն մեր, զի փառաւորեալ է...:

8. *Թղ.* 18*ա*. Այլ Կանոն. Կիրակի Աստուածածնին. Աւրհն. ՁԲ. Ճանապար.:

Աննիւթն կանխաւ սանդուխքն, նոր եւ անկոխ ճանապարհ ծովուն, զծնունդտ քո ուսուցանէր Կոյսն Աստուածածին, զոր փառաւորեմք զի փառաւորե(ալ է)...:

9. *Թղ.* 19*բ*. Կիրակէ. Երանութիւն. ՁԲ:

Զձայն աւազակին մատուցանեմք եւ աղաչեմք զքեզ. յիշեա զմեզ Տէր յորժամ գաս արքայութեամբ քով...:

10. *Թղ*. 20*ա*. Կիրակի Երեկոյ. Կանոն յետ ընթրե(ա)ցն: Աւրհն. ՁԲ: Յանդուգնդս կործ.:

Որ նախս քան զյաւիտեանս ծնաւ ի լուսոյ հաւրէ. ծագեցաւ այժմ ի քէն պայծառ արեգակնն, Աստուածածին կոյս, եւ աստուածապաշտութեան պայծառութեամբն լուսաւորե(ա)ց զմարդիկ. մարդկային բնութեամբ պարագրեալ...:

11. *Թղ*. 22*բ*. Երկուշաբաթի. Կանոն Հրշտակացն. Աւրհն. ՁԲ: Ճանապարհ:

Զաւրութիւն անապականութեան եւ փառք ունելով անմահութեան, հրշտակք Քրիստոսի, զոր եւ պարգեւեաց իսկ ձեզ եւ մերձ կենալով առ Քրիստոս լուսաւորիք...:

12. *Թղ*. 24*բ*. Այլ Կանոն նոյն աւուրդ Ապաշխարութեան: Աւրհն. ՁԲ. Ճանապարհ անկոխ:

Որ ծնար ի կուսէն, եւ որպէս ասացեր ոչ զարդարսն եկիր կոչե[ա]լ Քրիստոս, այլ զի զմեղաւորսն կեցուցես ապաշխարութեամբ. եւ զիս զմեղաւորս դարձոյ եւ կեցոյ...:

13. *Թղ*. 26*ա*. Բ. շաբաթի երեկոյ. Կանոն Աստուածածնի. զկնի ընթրեաց. Աւրհն. ՁԲ. խորոց յայտնեցոյց:

Ով ամենայն վշտացելոց աւգնական եւ հովանի քրիստոնէից, եւ տրտմեցելոց մխիթարութիւն, Աստուածածին, շնորհք քո հո–

վանի լիցի մեզ, որք կարաւտիւ աւրհնեմք զքեզ...:

14. *Թղ. 28բ.* Երեքշաբաթի առաւաւտ. կանոն Կարապետին. Աւրհնութիւն ԶԲ. Եկայք ժողովուրդք:

Զիմանալի շաւիղս իմ ուղեղ արա իմաստուն Կարապետ առ շաւիղս պատուիրանացն Քրիստոսի. եւ սրբեա զգայթակղութիւն անձին իմոյ, աղաչանաւքդ քո, Մկրտիչ Քրիստոսի...:

15. *Թղ. 31ա.* Այլ կանոն նոյն աւուրդ. Ապաշխ(արութեան). Աւրհն(ութիւն) ԶԲ. ԶՄովսէսի զ.:

Զինքեանս, ով եղբարք, կանխազգոյն ողբացաք դառնապէս. զի արտասուաւք չերմութեամբ ի բաց կացցուք յարտասուաց տանջանացն, որք յայնժամ ոչինչ աւկտեն մեզ...:

16. *Թղ. 33բ.* Չորեքշաբաթի առաւաւտ: կանոն խաչի եւ Մարտ(իրոսաց): Աւրհն(ութիւն) ԶԲ: Դիզացե(ա)լ ծովն:

Յորժամ անց զպատուիրանաւ Փրկչին նախաստեղծն, ի փայտէն գիտութեան կթեաց դառն բաժակ մահու. իսկ դու, Քրիստոս, յորժամ մահացար ի խաչին, անմահութիւն պարգեւեցեր ազգի մարդկան, բազումողորմ...:

17. *Թղ. 36ա* (*Թուղթ ինկած*). Այլ կանոն... *այժմ կը սկսի.* «Զաւրութիւնք երկնից փառաբանեն զքեզ...» *տունով*:

18· *Թղ*· 37*ա*: Հինգշաբաթի առաւօտ: Կանոն Սուրբ Առաքելոցն: Աւրհն(ութիւն) ՁԲ· Յանդունդս կործ·:

Լուսոյ աստուածային փայլատակմունք հաւատով երեւեցայք· աստուածային լուսանմանն առաքեալք, բոլորից զիս լուսաւորեցէք, զմիգապատեալս յախտից մեղաց, որ չարաւք բոլորովիմբ զկեանս իմ ծախեցի···:

19· *Թղ*· 39*բ*· Այլ Կանոն Աստուածածնի· նոյն աւուրդ· Աւրհն(ութիւն) ՁԲ· Յանդունդս կործան·:

ԶԱստուած զարարիչն ամենեցուն, որ մարդացաւ յարգանդէ քումմէ, աղաչէ Աստուածածին, զի սփռեսցէ ինձ զշնորհս իւր առատապէս, զի փառաւորեցից զքեզ, որ փառաւորեալ ես···:

20· *Թղ*· 41*բ*· Ուրբաթ· առաւաւտ· Կանոն խաչի· Աւրհն· ՁԲ· Եկայք ժողով·:

Խաչելութիւն ընդունեցար եւ քեւեռեցար անարգանաւք, Բանդ Աստուած, զամէնիս պատուել կամելով զհողեղէնքս, որք զքո կամաւոր չարչարանսդ փառաւորեմք···:

21· *Թղ*· 44*ա*· Այլ Կանոն Աստուածածնին, նոյն աւուրդ· Աւրհն· ՁԲ· Դիզացեալ ծովն···:

Որպէս պայծառ եւ ամենեւիմբ գեղեցիկ ընտրեաց զքեզ ի կանայս Աստուած, եւ բնակեցաւ ի քեզ, Ամբիծ, առ որ բարեխաւսե[ա]լ մի դադարեր, որպէս զի փրկեսցէ ի յանցանաց զաւրհնաբանողքս քո···:

22․ *Թղ*․ 46*ա*․ Շաբաթ առաւաւտ․ Կանոն Աստուածածնի եւ Մարտիրոսաց․ Աւրհնութիւն ՁԲ․ Ճանապարհ արդ․։

Կոյս ամենամաքիծ, որ անհնազանդութեամբ Աստուծոյ ընդ անիծիւք անգեալ էր բնութիւն մարդկան, Քրիստոսի Աստուծոյ ծննդեամբն աւրհնութեամբ պսակեցեր․ եւ փրկեցեր յապականութենէ, վասն այսորիկ ամէնազգ երանեմք զքեզ․․․։

23․ *Թղ*․ 48*բ*․ Այլ Կանոն Շաբաթ աւուր․ Մարտ(իրոս)աց եւ Ննջ(եցելոց)․ Աւրհն․ ՁԲ․ Ճանապարհ ար․։

Մահուամբ զմահ կոխելով, բարերար Տէր, զանսպառ կեանս շնորհեցեր մեզ․ զոր եւ այժմ պարզեւեա հոգեաց ննջեցելոցն, մարտիրոսացն քո աղաչանաւքն թողութիւն մեղաց նոցա շնորհելով․․․։

*Թղ*․ 49*բ*․ Կոնդակ Ձկդ։

Հանդերձ սրբաւքն հանգոյ Քրիստոս զհոգի ծառայիցն քո։ Կամէի գիտե[ա]լ զխորհուրդս զայս․․․։

24․ *Թղ*․ 51*ա*․ Այլ Կանոն սրբոց եւ ննջեց(ե)լոց նոյն աւուրդ։ Աւրհն․ ՁԲ․ Եկայք ժողովուրդք։

Նուագարանք աստուածայինք բովանդակողք սուրբ Հոգւոյն, երեւեցայք իմաստուն մարգարէք, եւ այժմ ջերմապէս աղաչեցէք զԱստուած, որպէս զի ողորմեսցի մեզ, որք փառաւորեմք զձեզ։

25. *Թղ. 54ր.* Շաբաթ զկնի ընթրեացն. կանոն Երրորդութեան եւ Աստուածածնին. ՁԳ. Որ զջուրն կանխաւ:

Միայն բարերար Տէր ամենայնի, մի եւ երրորդութիւն աստուածպետութիւն. երրորդափայլ ծագմամբդ քո լուսաւորեա զիս, զի անդադար երգեցից քեզ. զոր փառաւորեն հրեշտակքն երեքսրբե(ա)ն աւրհնութեամբ..:

26. *Թղ. 55ա.* Այլ կանոն Աստուածածնին. ՁԳ. Որ զջուրն կանխաւ:

Մեծափայլ լուսաւոր հարսն, սուրբ մեծանուն Մարիամ Աստուածածին, դուստր Դաւթի, եւ քան զՍերովբէսն բարձրագոյն, զեղեցկութիւն Յակովբա, լայնագոյն քան զերկինս. մեծ են փառք քո ամենիքե(ա)ն երանեմք զքեզ...:

*Թղ. 59ր.* Անաւարմի. փխճ առաջին. ՁԳ:

Զգերութիւնն Սիովնի դու հաներ ի Բաբիլովնէ...:

27. *Թղ. 60ա.* Կանոն Յարութեան. Աւրհն. ՁԳ. Որ զջուրն կանխաւ:

Որ զերկիր դատապարտե(ա)ց զպատուիրանազանցելոց, քումամբ պտուղ բերելով զփուշսն, նա ինքն ի փշոց պսակի ի ձեռաց աւրհնազանցելոցն. սա է Աստուած մեր, որ մարմնով ընդունեցաւ զչարչարանս, եւ զանէծս էլոյծ, զի փառաւորե(ալ է)...:

Թղ. 61ա. Կոնդակ. ՁԳ: — Յարե(ա)ր ի գերեզմանէն զթացող. եւ զմեզ յարուցեր ի դրաց մահուն...:

28. Թղ. 62ա. Այլ կանոն Յարութեան. Աւրհն. ՁԳ. Ի կորդ եւ յանդ(նդածին):

Պարզեցեր կամաւ զձեռս քո ի վերայ խաչին Քրիստոս Աստուած մեր, եւ յառաջին խաբէութենէ մեղացն ազատեցեր զադամային ազգս. եւ ուրախութեամբ երգեն. աւրհնեսցուք զտէր Աստուածն մեր զի փառաւորեալ է...:

29. Թղ. 64ա. Այլ կանոն Աստուածածնի Կիւրակէ. ՁԳ. Երգ նոր երգէ:

Ծնունդ կրկնի ամենայն երկնաւորացն եւ երկրաւորացս, եւ սանդարամետականաց. եւ երկիր պագանեն որդւոյն քում, կոյս. զի փառաւորեալ է...:

30. Թղ. 65բ. Կիւրակի երեկոյ. Կանոն Աստուածածնին. յետ ընթրեացն. Աւրհն. ՁԳ. Զջուրն կ.:

Իմանալի ամբն, որ զերկնային պայծառութեան նառագայթսն, զապաշխարութիւն ծագեաց, եւ զմութն մեղաց հալածեաց. Աստուածածին ամէնամբիծն, որ պահապան է անձանց մերոց, լուսաւորեաց զծագս երկրի...:

31. Թղ. 68ա. Երկուշաբաթի. Կանոն հրեշտակացն. ՁԳ. Երգ նոր.:

Անսկիզբն լոյս եւ տուող[իչ] լուսոյ դու զոյով Քրիստոս Աստուած, զխորհուրդս իմ

յուսարեա արհնե[ա]լ զՔեզ, ուժգնու-թեամբ վերին զուարթնոցն...:

32. *Թղ.* 70*բ.* Այլ Կանոն. Ա(պաշխա-րո)ւթեան. Բ. շաբթի. Աւրհն. ՁԳ. Սքան-չելի:

Ի քիւրոց չարեաց մեղաց իմոց փրկեա զիս, միայն անմեղ. զոր գործեցի անմտու-թեամբ. եւ որպէս պոռնկին տուր ինձ ար-տասուս ապաշխարութեան...:

33. *Թղ.* 74*բ.* Երեքշաբաթի. Կանոն Կա-րապետին. Աւրհն. ՁԳ.: Որ զջուրն կան-խա:

Յամուլ արգանդէ բուսե(ա)լ աստուա-ծային ծաղիկ տեառն Կարապետ, պաղատեա առ Աստուած պտուղ առաքինութեան բե-րե[ա]լ ինձ. եւ զանպտղութեան իմոյ լու-ծանել զախրութիւնն. եւ փարատել յինէն զամբս ծուլութեան իմոյ...:

34. *Թղ.* 77*ա.* Այլ Կանոն Գ. շաբաթի ապաշ(խարութեան). Աւրհն. ՁԳ. Որ զջուր կ.:

Զանձինս նախ քան զվաղջանն, ով հա-ւատացեալք, ողբասցուք յամենայն սրտէ. մերձ է ահա փեսայն, վառեսցուք զգործս մեր որպէս պայծառ լապտերս. զի յաս-տուածային առագաստն մտցուք...:

*Կ՚աւարտի Թղ.* 77*բ.* «Յաւդեա յիս մշտնկաւ ապաշխարութեան, եւ սրբեա զիս | | |»:

*Յառաջ կը բերեմ ամբողջական կանոն մը ճաշակի համար (Թղ. 26ա—28բ)։*

ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ ԵՐԵԿՈՅ· ԿԱՆՈՆ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՁԿՆԻ ԸՆԹՐԵԱՑ·

ԱՒՐՀՆՈՒԹԻՒՆ· ՁԲ։ Խորոց յայտնեցոյց։

*Ով ամենայն վշտացելոց աւգնական եւ հովանի քրիստոնէից եւ տրտմեցելոց մխիթարութիւն, Աստուածածին. շնորհք քո հովանի լիցի մեզ, որք կարաւտիւ աւրհնեմք զքեզ։*

*Ի թշնամեաց երեւելեաց եւ աներեւութից փրկեա զմեզ աղաչանաւքդ քո. որք ընթանամք առ քեզ, Աստուածածին, եւ լոյծ զխորհուրդս պատերազմողաց մերոց, հոգւոց եւ մարմնոց։*

*Ունայնացո զընդունայն խորհուրդ թշնամեաց մերոց, որք խնդրեմք ի քէն աղաչանաւք, Աստուածածին ամէնամբիծ, որպէս զի աւրհնելով փառաւորեմք զքեզ։*

*Ապրեցո զիս ի վշտաց հասելոց, եւ որք մերձ են, Մայր Աստուծոյ, որ ընթանամ ի հովանիդ քո եւ յուսով կոչեմ առ քեզ. անցո ի մէնջ զմրրիկ փորձանաց, Աստուածաբերկրեալ։*

ՀՍ̆Տ· Զաւրութիւն որ տ·։

*Զչար թշնամեաց խորհուրդս եւ զխստութիւն դիւաց, որ յարեան ի վերա(յ) մեր, ցրուեա, Սրբուհի Կոյս, եւ մի դադարեր ծածկել զմեզ, որ սիրով փառաւորեմք զքեզ. զի դու ես յոյս քրիստոնէից։*

Ողորմած աչաւք նա(յ)եաց ի մեզ, Մայր Աստուծոյ, և փրկեա յամենայն փորձութենէ և ի վշտաց, Տիրուհի, և յերևելի և յաներևոյթ թշնամեացն, և լոյծ զպաշումն նոցա, որ ես յոյս մեր։

Զրպարտութիւն թշնամեաց մերոց և զպապանանման խաւսութիւն, որպէս հուր շիջոյ ցուցալ բարեխաւսութեամբ, որք խնդրեն կատարել զմեզ. և ապրեցո զապաւինեալքս ի քեզ։

Հրով աստուածա(յ)ի(ն) պայծառացեալ բացաներ, և յոյս աշխարհի, Աստուածածին Կոյս, զի որ մթով ապականութեան ըմբռնե(ա)լ եմ, լուսաւորեա. և շնորհեա ինձ զողորմութիւնդ քո։

ՏՐԼ․ ։ Լուա ակր գձայն ։

Որ ես պատճառ կենաց և ծածկոյթ և բարեխաւս որոց կարաւտին զանէն զքեզ, Կոյս, վերակացու և աւգնական և ձեռնատու լեր մեզ, ի հոգ[ւ]ոյ և ի մարմնութենէ, ի փորձանաց և ի վշտաց փրկելով զմեզ։

Ոչ եմք յուսահատե(ա)լ յողորմութեանց քոց, ի պատերազմունս և ի վիշտս, Կոյս. ի փորձանս և ի նեղութիւնս փութապէս հասցէ մեզ ողորմութիւն քո, և յարե(ա)ց չարաց ապրեցո, զորս ապաւինեն զքեզ, Ամենասրբուհի։

Խորտակեա խոնարհեցոյ զհպարտութիւն թշնամեաց մերոց, և զխորհուրդ անա-

*տուած հակառակորդայն. եւ յաղթութիւն շնորհեա, աղաչեմք. եւ ուրախացո զնեղե(ա)լ ծառայքս քո, Տիրուհի, որ ես մայր Քրիստոսի փրկչին մերոյ:*

*Որք յաւգնականութիւն քո ոչ յուսան, Կոյս, հակառակութեամբ եւ նախանձով լի են անաստուածքն, որք որեցին զեկեղս խրեանց ի վերա(յ) քո. հեղուլ զարիւն արդար պատրաստ են. այլ լոյծ զխորհուրդս եւ փշրեա զպարանոցս նոցա:*

ԳԻՇ.: Յիսուս որ առաջի:

*Երկնային զաւրաց ժողովքն զքեզ փառաւորեն, ամբիծ Կոյս, հարսն Աստուծոյ բարձրելոյն. զի ի քէն ծագեցաւ Փրկիչն ազգի մարդկան, որ լապան զբնութիւն մահու, եւ հաւատացելոց եցոյց յաղթութիւն խաչին իւրով:*

*Զհզաւր եւ զփոյթ աւգնականութիւն քո, Մայր Աստուծոյ, ակարացեալ ծառա(յ)ից քոց պարգեւեա, եւ սրով բարեխաւսութեանց քո զհակառակորդն մեր ցրուեա. եւ լոյծ զհպարտութիւն նոցա. եւ խաղաղութիւն պարգեւեա մեզ:*

*Զպարտս յանցանաց նախամաւրն Եւայի ծննդեամբն Քրիստոսի լուծեր, Կոյս, եւ զապականե(ա)լ բնութիւն մարդկան նորոգեցեր. վասն այսորիկ խնդրեմ ի քէն, զվիշտս եւ զտրտմութիւն մեր յուրախութիւն դարձոյ, եւ խաղաղութիւն շնորհեա:*

*Յանդընդոց խորոց հան զիս, Կոյս, որ ընկղմե(ա)լ եմ յանցանօք, եւ ի փառս երկնաւորս արժանացո անդրէն երթալ, յորմէ անկա(յ) անհնազանդութեամբ. վասն որոյ աղաչեմ զքեզ, յամենայն վշտաց եւ ի փորձանաց փրկեա զծառայս քո:*

ՆԵՂ.: Այն որ է ձայն բ.:

*Ազգի մարդկան անխափան կենացն պարգեւիչ եղեր, Կոյս, եւ զանբժշկելի ցաւոց տրտմութիւն փարատեցեր, եւ զմեր տրտմութիւնս յուրախութիւն դարձո, եւ փրկեա զմեզ յամենայն հնարից թշնամւոյն:*

*Զթշնամեաց խորամանկութիւն ցրուեա եւ զհակառակութիւն եւ զնախանձս նոցա մերժեա, Մայր Աստուծոյ, եւ կեցո զամենայն յուսացեալքս ի քեզ, ի նեղութենէ նոցա որ հասին ի վերա մեր, որ ես յոյս եւ փրկութիւն անյուսացելոց:*

*Ի մեղաց չարեաց պաշարեալ եմ. եւ ի փորձութեանց նեղեալ, եւ աղաչեմ զքեզ, զձեռն տարածեա ինձ հզաւր բարեխաւսութեանց քո, Աստուածածին Տիրուհի, եւ հան զիս յընկղմութենէ ապականութեամբդ քո:*

*Անապականաբար ծնար զԱստուած. եւ յետ ծննդեանն, Կոյս, մնացեր անհարսնացեալ. եւ փառաւոր սքանչելիք ի քեզ կատարեցաւ. ի վեր քան զբնութիւնս ծնունդ եւ կուսութիւն անբիծ. ի փրկութիւն հաւատացելոց:*

ՀԱՐՑ: Մանգունք ի հն․:

*Զմեղաց իմոց կապանս խզեա, Աստուածածին․ եւ ուղղեա զիս ի շաւիղս ապաշխարութեան․ եւ զղջացոյ զքարացեալ սիրտ իմ, որպէս զի զոհութեամբ Որդւոյն քո աղաղակեցից․ աւրհնեալ ես Տէր հարցն իմոց:*

*Բանդ Աստուծոյ որ զամէնամբրիծ Մայրն քո ապաւէն հաստատուն եւ միջնորդ պարգեւեցեր մեզ․ եւ փրկող ի վշտաց եւ ի հոգւոց չարեաց․ եւ այժմ կեցոյ զմեզ բարէխաւսութեամբ նորա․ զի աղաղակեսցուք աւրհն․:*

*Ի զինամարտ թշնամեացն փրկեա զմեզ, Քրիստոս, բարէխաւսութեամբ ամբիծ մաւրն քո․ եւ զհակառակորդս մեր մերժեա․ որպէս զի աւրհնութիւն աստուածային մատուցուք աղաղակելով աւրհնեալ ես:*

*Տաճար զարդարեալ, եւ զանձարան աստուածային փառացն․ եւ հարսնութիւն հոգեւոր ճանաչեմք զքեզ, հարսն Աստուծոյ․ եւ քեւ փրկեալքս փառաւորեմք զՔրիստոս Աստուած․ եւ զոհութեամբ աղաղակեմք․ Աւրհնեալ ես Տէր Աստուած հարցն մերոց:*

ԳՈՐԾՔ: Խորհուրդ ահ․:

*Որ ես լոյս եւ զաւրութիւն եւ պարծանք ամենայն ապաւինելոցս ի քեզ․ եւ միխիթարութիւն արտմեցելոց, Աստուածածին տիրուհի․ խնդրեա յՈրդւոյն քումմէ, զի դարձուսցէ զալիս փորձութեանց ի ծառայից քոց:*

*Որ ես լոյս անյուսացելոց, եւ խաղաղ նաւահանգիստ ալէկոծելոց․ քաղցր ակամբդ*

քո պարգևութեամբ նորեաց ի մեզ. և սփռեա ի վերա(յ) մեր զշնորհս քո. և զհովանի Քրիստոսի Թագաւորին, որում գոչեմք. աւրհնեցէ:

Որք արտասուօք և զղջութեամբ կոչեմք միշտ, Սրբուհի Կոյս Աստուածածին, զանուն քո. յամենայն վշտաց և ի ցաւոց և ի պատերազմաց ապրեա բարեխաւսութեամբդ քո առ Որդին քո. որում գոչեմք. աւրհն.:

Յամենայն ազգս երանելի ես դու, Կոյս. զի ի քէն ծագեաց փրկիչն աշխարհի, Որդին Աստուծոյ անսկիզբն. և կեցոյց գթութեամբ զադամայինս. և աստուածացոյց զմարդկութիւնս, որում աղաղակեմք. աւրհն.:

ՄԵԾ: Կարճ է ամէ:

Կարկեա զբերան չարախաւսս. և բեկեա զշրթունս նենգաւորս. և զլեզու անաւրէն կարկեա զչար թշնամեացն. որք խաւսին վասն քո զհայհոյութիւն. իսկ զմեզ զհաւատացեալքս կեցո Աստուածածին. և ծածկեա յամենայն վշտաց և ի փորձութենէ:

Աւգնական զքեզ կոչեմք, Տիրուհի, որք ի փորձութեան և ի վշտաս անկեալ եմք. լեր մեզ և ձեռնտու լեր. և յամենայն հոգւոց փրկեա զմեզ. և ի թշնամեաց երևելեաց և աներևութից. զի յետ Աստուծոյ այլ փրկութիւն ոչ ունիմք բայց ի քէն, Մայր Աստուծոյ:

Ով անապականից լոյս եւ անեղից ծնեալդ. մի դարձուցաներ զմեզ ամաչեցեալս. զոր սա քեզ ընծայեմք. այլ ողորմութեամբդ քո հովանաւորեա. եւ փրկեա ի փորձութեանց. որպէս զի գոհութեամբ մեծանուցանեմք զքեզ, Աստուածածին Կոյս:

Անանցական Կոյս, զքեզ աղաչեմք եւ անկանիմք առաջի քո ծառայքս քո. եւ արտասուաւք մատուցանեմք զնուաստ բանս մեր. ընկալ զաղաչանս մեր եւ փրկեա յամենայն փորձանաց. եւ ի ժամու դատաստանին յահեղական ատանջանոյն:

*

Յունական շարակնոցի Ոկտոէքոս բաժնի հայերէն թարգմանութիւնն կատարած են Մինաս եւ Սիմէոն կրօնաւորները վրացերէն: Մինաս կը բնակէր Տրապիզոնի մէջ, իսկ Սիմէոն Պընձահանքի վանքը. ասոնք ի միասին թարգմանած էին նաեւ Յովհաննէս Կլիմաքոսի Սանդուխք կոչուած հոգեշահ մատեանը: Չենք կրնար դժբախտաբար ճանաչել այս երկուքի աշխատակցութեան հանգամանքները. ի՞նչ բաժին բերած են մին եւ միւսը: Ինձ կը թուի թէ մին, Սիմէոն թարգմանած ըլլայ վրացերէն բնագրէ եւ Մինաս այդ թարգմանութիւնը ճշդած ըլլայ յոյն սկզբնագրի հետ համեմատութեամբ: Թարգմանութեան մէջ կը տեսնուին յունաբանութիւններ, յատկապէս յոյն բարդ բառերու տարրական հայացումներ: Ասոնք կա-

բաց են նաև վրացերէն թարգմանութենէն կատարուած ըլլալ, այնու որ վրացերէնն ալ թարգմանուած էր յունարէնէ, նոյնպէս ասորական նմանութեամբ: Իմ նկատողութիւնս կը հայի Սիմէոնի թարգմանութեան, և ունի իրեն կռուան մեր երեք վրացերէնէ կատարուած թարգմանութիւնները (Գրակ, Յովհ. Դամասկացի, Յովհ. Կլիմաքոս): Ուստի դարս կը մնայ Թ. 886ի Ա. Մառը, որուն թարգմանիչն է Կարապետ, թարգմանած ուղղակի յոյն բնագրէ: Այս թարգմանութենէն նմոյշ չունիմ աչքի առաջ. և ի վիճակի չեմ դատաստան կարել մեր թարգմանութեան եղանակին և բնագրին մասին:

Հ. Մ. Աւգերեան, որ ձեռքի տակ ունեցած է Թ. 886, հետևեալ տողերը գրած է «Յունական Ժամագրքի» մասին նոր Հայկազեան լեզուի Բառգրքի (=ՆՀԲ) մէջ.

«Ժամագիրք և Երգարան Հոյհոմանց՝ ի վաղուց թարգմանեալ ի հայ, անհեթեթ ոճով, եւ նիւթական յունաբանութեամբ յեղծուածն լեզուի. Թո՛ղ զյետին թարգմանութիւնս ամաց ամաց առ մեօք և այլագրեալ: Ի այլագրութենէն ոչինչ առաք. այլ միայն ի հին գրչութեանց քանի մի բառս քաղեցաք, զի կարեն լինել պիտանացու» (Նախադուռն, էջ 12բ):

Նոյն գրքի մէջ Յովհ. Դամասկացւոյ գրութիւններու թարգմանութիւնն որակած էր Աւգերեան «անհարթ ոճով», իսկ Կլիմա-

բանին՝ «պարզ»: Եթէ Ծաղկոցի թարգմանութեան «անհեթեթ ոճով, և նոյնպէս յանպարտութեամբ» կը գանէ, մինչեւ իսկ «կեղծումն լեզուի», կը թուի ինձ թէ ոստանեցին Կարապետի թարգմանութիւնը նկատի ունի. վասն զի Սիմէոնի լեզուն կամ ոճը, մէկ քանի բառեր դուրս հանելով, նաև հոս «պարզ» է, ոչ արհամարհելի հայերէնով:
Հետեւեալ բառերը, որոնք յառաջ բերուած են ՆՀԲի մէջ, Թ. 886 ձեռագրին Բ. մասէն կ'երեւան, որոնք ունին համանման սեղիքներ Բրիտ. Թանգարանի Թ. 58ի մէջ.

Խնդումն. «Արեւն յեր ակերն խնդման այգի մարդկան» (թղ. 6բ). ՆՀԲ. Ծնունդ քո, Աստուածածին կոյս, խնդումն գուշակեաց ամենայն տիեզերաց:

Կորդ. «Ի կորդ և յանդ(նդածին դաշտ...)» (թղ. 62ա): ՆՀԲ. Ի կորդ և յանդնդածին դաշտ[18] արեգակն պշտատեսա իւր ասեաց:

Կորդանամ. «Կորդացեալ էր բնութիւն մարդկան (թղ. 44ա): ՆՀԲ. Ձիանա այլ ծախուն կորդացուցեալ կանխա... ճանապարհ եւ մեզ անցանել յերկին:

Համարձակից. «Համարձակակիցք Աստուծոյ եղեւցան երրորդերանեալք (թղ. 72ա): ՆՀԲ. Ամենայնիւ վկայք, հրեշտակաց համարձակից եղեայք:

---

[18] Յն. Արա. Χέρσον καὶ ἀβυσσοτόκον πεδόν. (178b) Անդնդածին միայն այստեղ գործածուած. ՆՀԲ չունի:

Հրեշտակապէս. *«Միաւորեալ հրեշտակա-պէս[19] հրաշալի հայորդութեամբ»* (*Թղ.* 68*ա*): *ՆՀԲ. Հրեշտակապէս՝ որ եմք յաշ-խարհի, տօնեցուք Աստուծոյ:*

Նաւապետեմ. *«Նաւապետեա զկեանս մեր*[20] (*Թղ.* 32*ա*): *ՆՀԲ. Որ խաղաղացուցա-նես եւ նաւապետես զամենայն իմաստու-թեամբ:*

Ցօղազնել. *«Որպէս զմանկունս ի հնո-ցին մինչ արկեալ եղէք, ի վերուստ ցօղա-գնեալ ոչ կիզեցայք վկայք»* (*Թղ.* 25*բ*): *ՆՀԲ. «Աստուածային ակրն զհուրն ցօղագնէր»:*

Փշանման. *«Փշանման բոյն»* (*Թղ.* 29*բ*): *ՆՀԲ. Փշանման հերձուածն հատեր յարմա-տոյ:*

Օրհուրդ. *«Շնորհք աստուածգիտութեան, ուրո՛ւրդ, ի վեր քան զբնութիւն»* (*Թղ.* 1*բ*). *«ուրուրդ Աստուածածին»* (*Թղ.* 1*բ*): *«Աս-տուածերանի ուրուրդ... կեցո՛ զիս»* (*Թղ.* 33*բ*). *«ուրուրդ կոյս»* (*Թղ.* 42*բ*): *«բազմա-նուն ուրուրդ»* (*Թղ.* 77*բ*): *ՆՀԲ. Դասք հրեշտակաց եւ հոգեղինաց, անհամրանացելոյ օրհուրդ, օրհնեն զքեզ անդադար:*

*Յունական Եկեղեցին ունեցած է յըն-թացս դարերու զանազան շարականագիրներ, որոնք փայլած են իրենց ժամանակին համ-բաւ եւ գտած են իրենց ստեղծագործութիւն-ներուն ընդունելութիւն: Հին եւ նոր շարական-*

---

[19] *Յն. Սյու.* ἀγγελοπρεπῶς γεγηθότες (147 b).
[20] *Յն. Սյու.* τὴν ζωὴν ἡμῶν κυβέρνησον (101 b).

ներ և երգեր առած են յաճախ բառ բառի, բառ կամ ի ազատութեամբ։ Բազմաթիւ են մեզի հասած ձեռագիրներ և անոնցմէ յառաջացած թարգմանութիւններն և տպագրութիւնները։ Բովանդակութեամբ ոչ մին միւսին նման։ Մինչև այժմ չէ կատարուած Ծարակնոցի քննական հրատարակութիւն մը ձեռագրաց բաղդատութեամբ։ Հրատարակութիւններէն կը յիշեմ Παρακλητικὴ ἤτοι ἡ μεγάλη Ὀκτώηχος. ἐν Βενετίᾳ 1837, որ կը գտնենք ութը ձայներու ութը կիրակիներու կանոնները միայն։ Սլաւական թարգմանութիւնը լոյս տեսած է 1494ին Չէթինիէ, որ կը պարունակէ Ա.—Դ. ձայներու կանոնները շաբաթուան մէն մի օրերու։ Բ. Մասը, Ե.—Ը. ձայներ, տպագրուած է 1537ին Վենետիկ։ Այս 1494ի հրատարակութեան համեմատական ուսումնասիրութիւն մը նուիրած է V. Jagič, Das erste Cetinjer Kirchenbuch vom Jahre 1494. Eine bibliographisch-lexicalische Studie: Denkschriften der K. Akademie der Wissenschaften. Wien, phil.-hist. Classe, 42 (1894), II: 1—80, IV, 1—71, որ նկատի առած է բացի յոյն բնագրին 1837ի տպագրութենէն, նաև Վիեննայի Ազգային Մատենադարանի Codex theologicus N. 116 (1391էն) և 146 յոյն ձեռագիրները։

Հայերէն թարգմանութիւնը ցանցառ անգամ ունի համեմատական անցքեր յոյն և

որս ընագիրներու մէջ։ Աչքի առաջ ունիմ Ա. Մալցեւի հրատարակած սլաւերէն բնագիրը հանդերձ գերմաներէն թարգմանութեամբ[21], ուր կը գտնեմ վերոյիշեալ (էջ 202—211) ցանկէն հետեւեալ կանոնները. Թ. 8 = M. 398, 9 = 428, 12 = 444, 16 = 526, 20 = 601, 27 (կոնդակ) = 706. 29 = 694 եւ այլն։

Որովհետեւ թարգմանութիւնս կատարուած է ԺԳ. դարու առաջին կէսին, անկէ հնագոյն վրական թարգմանութենէ, կը ներկայացնէ արժէք, վերականգնելու յոյն բնագրին նախնական ձեւը։ Վրական թարգմանութեան հրատարակութեան եւ անոր հայերէնին հետ համեմատութեան մասին կարող չեմ որ եւ է խօսք ընել։

---

[21] Октоихъ или Осмогласникъ Православной каѳолической Восточной церкви. Немецкій переводъ параллельнымъ по греческимъ оригиналамъ, протоіерея Алексѣя Мальцева. Берлинъ 1903

Oktoichos oder Parakletike der Orthodox-Katholischen Kirche des Morgenlandes. Deutsch und slawisch unter Berücksichtigung der griechischen Urtexte von Alexios v. Maltzew. Berlin 1903, Ա. Մաս։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՀԱՅ-ՀՌՈՄ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄՆԱՑՈՐԴՆԵՐ

### ԺԳ.—ԺԸ. ԴԱՐ

*Սիմէոն Գզնձահանեցի դրաւ մեր առջեւ հինգ թարգմանութիւններ, կատարուած վրացերէնէ։ Այս առթիւ ծանօթացանք ուրիշ հայ–հռոմ թարգմանիչներու ալ, որոնք յոյն բնագրէ կը թարգմանէին, ասոնք են Մինաս ի Տրապիզոն եւ Կարապետ ի Կ. Պոլիս։ Առանց տարակուսի ասոնց արտադրութիւնները պէտք է նկատուին հայ–հռոմ գրականութեան մասեր։*

*Շատ հին է Հայհռոմներու գոյութիւնը, այս ինքն այն Հայերու, որոնք պահելով հանդերձ իրենց հայութիւնն ու լեզուն, յարած էին — կամայ կամ ակամայ — օրթոդոքս եկեղեցւոյ, Բիւզանդական պետութեան եւ Վրաստանի մէջ։ Այն տեղերն, ուր հոծ էր հայութիւնը, եկեղեցական պաշտամունքները կը կատարէին հայերէն, բայց յունական ծէսով, ի նորոյ թարգմանելով ծիսական գրքերը։*

Այսպիսի հայաբնակ վայր էր Ակն քաղաքը Փոքր Հայոց ի սահմանակցութեան Արաբկերի. «Զգի սա յերկուց կողմանց Եփրատայ յարեւելից եւ յարեւմտից, բայց ըստ մեծի մասին յարեւմտից կողմանէ նորա, ուստի եւ ըստ մեծի մասին անկանի ի Փոքր Հայս, հանդէպ Զմշկածագ թեմին Տիարպէքիրոյ[1]»: Յայն կոյս Եփրատի կը գտնուին Վանք, Տէլիքլիւ տաշ, Ծողու, Մուշեղկայ եւ այլ գիւղեր, ուր կը բնակին Հայհոռոմք եւ Թուրքեր: ԺԶ. դարու վերջերը նեղուած ապստամբ թուրք բանակի հարստահարութիւններէն, Ակնայ եւ շրջակայ վայրերու բնակիչներէն մաս մը գաղթեց Կ. Պոլիս եւ շրջակայքը. անոնց հետ նաեւ Հայհոռոմներ[2]: Պատմութիւնը չէ աւանդած մեզի թէ Հայհոռոմք ե՞րբ եւ ուսկէ՞ գալով զետեղուեցան Ակն քաղաքը: Վստահաբար կրնանք ըսել, թէ անոնք այն տեղ էին ԺԳ. դարուն:

Հայհոռոմները, որոնք նաեւ «Ծաթ» անուանուած են, կը հանդիպին Ը—ԺԱ. դարերուն Գուգարաց եւ Տայոց աշխարհին մէջ, նաեւ Անի, Բուլղարիա, Աթոս եւ այլն: Անոնք թարգմանեցին բացի ծիսական գրքերէ նաեւ զանազան պատմական եւ այլ գործեր, ինչ–

---

[1] Հ. Ղ. Ինճիճեան, Նոր Հայաստան, Վենետիկ 1806, էջ 301:

[2] Հմմտ. Ինճիճեան, անդ, 303—308: Ritter, Erdkunde, X, 638—639: Ե. Կ. Ճանիկեան, Հնութիւնք Ակնայ, Թիֆլիս 1895, էջ 55—60: Ֆարհատ, Հայ-հոռոմները կամ յունադաւան Հայերը, Ազատամարտ, Բ. (1910/11), Թ. 246, 248, 254, 257, 261, 276:

*պէս Գրիգոր Ջորափորեցի Սեղբեստրոսի Վարքը* 678*ին եւ Փիլոն Տիրակացի Սոկրատի Եկեղեցական Պատմութիւնը* 693*ին։ Կը յիշուի Կիրակոս հռետոր մը, որ Գրիգոր Վկայասէրի յանձնարարութեամբ թարգմանած է Կ. Պոլիս Յովհ. Ոսկեբերանի Գործք Առաքելոցի Մեկնութիւնը եւ Աբրահամ Ղրամատիկոս յանուն Ոսկեբերանի հրապարակ դրուած ճառն ի Ս. Գրիգոր Լուսաւորիչ։ Յովհաննէս Աթման «հայր վանացն Հայոց որ ի Փիլիպպուպոլեաց աշխարհէն» ուղարկուած էր կայսեր կողմէ Հռոմկլայ իբրեւ թարգման, երբ Թէորիանոս կը բանակցէր Միութեան շուրջը Ներսէս Շնորհալւոյ հետ* 1170*ին։ Այս շրջանին կը յիշուի նաեւ Կոստանդին Թարգմանիչ, որ Ներսէս Լամբրոնացւոյ համար թարգմանութիւններ ըրած է։ Ասոնք եւ ուրիշ նմաններ անշուշտ հայ-հոռոմներ էին. թէպէտ չեմ մերժեր, թէ չկային յունագէտ հայեր եւ հայերէնագէտ յոյներ. այս առաջիններէն էր Թէոփիստէ։*

*Այս տեղ ես նկատի պիտի առնեմ յատկապէս այն անձուկ իմաստով եկեղեցական պաշտամանց գրքերը, որոնք թարգմանուած են Հայհոռոմներու համար ԺԳ—ԺԹ դարերուն։*

1. Բարսղի «Բիւզանդական» պատարագամատոյցը, *որ խորագիրս կը կրէ. «Աստուածային պատարագ ասացեալ սուրբ հօրն*

մերոյ Բարսղի եպիսկոպոսին Կեսարու»: Բարսղի Պատարագամատոյցը իր հարազատ ձեւին մէջ թարգմանուած էր արդէն Ե. դարուն[3]: Յոյն բնագիրը յետոյ Յունաց քով տեսաւ նոր խմբագրութիւններ. եւ անոնք ընդունելի եղան օրթոդոքս եկեղեցւոյ քով: Այս պատճառով ալ Հայհռոմք, որոնց անծանօթ մնացած էր հաւանօրէն հին թարգմանութիւնը, հարկ տեսան միւսանգամ թարգմանել համաձայն Բիւզանդական օրինակին: Հ. Յ. Տաշեան[4] այս նոր թարգմանութիւնը կը համարի թէ «Թ.—Ժ. դարէն ուշ չի կրնար ըլլալ ստուգիւ», ենթադրելով, որ այս թարգմանութիւնը կ՚ակնարկեն Գրիգոր Մագիստրոս եւ Ներսէս Լամբրոնացի, երբ խօսք կ՚ընեն Բարսղի Պատարագի մասին. ինչ որ կարելի չէ ապացուցանել: Այն պարագան, որ Գրիգոր Աբասու որդի, որ ծաղկեցաւ ԺԳ. դարու առաջին քառորդին, կ՚անգիտանայ Բարսղի Պատարագին թէ առաջին եւ թէ երկրորդ թարգմանութիւնները, թոյլ կու տայ կարծելու թէ իր օրով հրապարակ չէր ելած դեռ նորը: Յունական բառակերտութիւններէն, որոնք հոս կը տեսնուին, եւ ռամկօրէն ձեւերէն, որոնք գործածուած են, ինչ ինչ կը նկատուին

---

[3] Գաթրճեան–Տաշեան, Սրբազան Պատարագամատոյցք Հայոց, Վիեննա 1897, էջ 81—171:

[4] Անդ, 175:

*նաեւ Սիմէոն Պղնձահանեցւոյ թարգմանած Ուկտոէքոսի մէջ*[5]:

*Պատարագամատոյցս հրատարակուած է Հ. Յ. Տաշեանէ, Սրբազան Պատարագամատոյցք Հայոց, էջ* 180—216 (*հմմտ. էջ* 171—179):

2. Աստուածային Պատարագ Քառասնորդացն պրօժիազմէնիօս, արարեալ սուրբ հօրն մերոյ Վասիլիու (*ἡ θεῖα λειτουργία τῶν Προηγιασμένων, այն է «աստուածային պատարագ Նախասրբեալց»*)

*«Աստ մասին, կը գրէ Հ. Յ. Տաշեան, կրնանք թերեւս աւելի ապահովութեամբ ենթադրել, որ Հայ-հոռոմց քով գործածութիւն ունեցած ըլլայ»* (*անդ*, 412):

*Հրատարակուած՝ Սրբազան Պատարագամատոյցք Հայոց, էջ* 414—450 (*տե՛ս այս՝ էջ* 342—752):

3. Յովհաննէս Ոսկեբերանի պատարագը: — *«Պատարագամատոյց Աստուծոյ, զոր արարեալ է սրբոյ հօրն մերոյ Յովհաննու տիեզերաքարոզ Վարդապետի եւ Ոսկեբերանի*:

*Հրտ. Սրբ. Պատարագամատոյցք, էջ* 353—384 (*տե՛ս այս՝* 342—352): *Հմմտ. նաեւ* 171—195:

---

[5] *Օրինակ. Բարսեղ. «այրեաց* առաջակայ *լեր* (208, *հմմտ.* 178) = *Ուկտոէքոս*, 29*ա. իբրեւ* առաջակաց *զքեզ, Տիրուհի սատանայով հոգաբարձու լեր» յն. πρόσηθε*, վերաբերիմ, վերաբերութիւն, *Բ.*, 198, *Ա.* 23բ *յն. ἀναφορά, ἀναφέρω ևն. նաեւ* ընդունեցայ *փոխ.* ընկալայ *Բ = Ա յաճախ*:

Հ. Յ. Տաշեան կը համարի թէ «Բարսղի եւ Ոսկեբերանի բիւզանդական Պատարագաց հայերէն թարգմանութիւնը մէկ անձէ եւ մէկ գրչէ եղած է» (351): Հ. Յ. Տաշեան կը գրէ. «Արդեօք այս բիւզանդեան (Բարսղի եւ Յովհաննու) Պատարագները գործածուա՞ծ են Հայոցմէ թէ պարզապէս իբրեւ մատենագրութիւն. թարգմանուած: Անշուշտ պարզ իբրեւ մատենագրութիւն թարգմանել չէր թարգմանչին դիտաւորութիւնը. եւ այն ազդեցութիւնն, զոր ունեցած են մեր Պատարագին վրայ՝ կը ցուցընէ որ բոլորովին առանց գործածութեան ալ չէին: Հայոց մէջ՝ տարակոյս չկայ՝ տիրողն եղած է միշտ «Աթանասի» Պատարագը՝ նախ անխառն եւ Խոսրովեան ձեւով, յետոյ գոնէ մասամբ Լամբրոնեան ձեւով. մինչեւ որ զարգացաւ Սովորականը: Բայց անկարելի չէ որ՝ մանաւանդ այն տեղերն ուր Հայք Հոռոմոց ներքեւ եւ շատ բանի մէջ անոնց ծէսին համակերպիլ ստիպուած էին, գործածուած ըլլան ասոնք՝ երբ բիւզանդեան այս մատեանները գերիշխող եղան մոռցնել տալով հիները: Եթէ ուրիշ տեղ չէ, գոնէ Հայ Հոռոմոց քով կ'ենթադրենք որ գործածուած ըլլան» (էջ 351—352):

Եթէ Ոսկեբերանի եւ Բարսղի պատարագները ԺԳ. դարէ յառաջ թարգմանուած են, անոնք յոյն կամ վրացերէն բնագիրներու համեմատութեամբ պէտք է սրբագրուած

*ըլլան ԺԳ. դարուն, ներս առնելով նոր յաւելուածները յոյն բնագրին:*

4. Ժամագիրք Միանձանց: *Ինձի կ'երեւայ թէ Հայհռոմներու սեպհական ըլլալու է հետեւեալը.*

Կարգաւորութիւն արարեալ Միանձանց Հարց անապատաւորաց ըստ Երկոտասան ժամուց աւուրն:

*Յառաջին ժամն մեծ կարգ. եւ Սղմ. Է. Տէր Աստուած իմ, ի քեզ յուսացայ: Եւ երբ վճարի փոխն, ասա՛ զԵրեքսրբեանն: Եւ զՀայր մեր որ յերկինսն: Եւ ասա զԱղօթս զայս. Աստուած մեծ եւ օրհնեալ, որ կենդանարար մահուամբ Քրիստոսի քո ազատեցեր զմեզ ի բարկութենէ...:*

*Նոյն առաջին ժամ. փոքր կարգ. Սղմ. Ծ. Ողորմեա ինձ Աստուած: Եւ Երեքսրբեանն: Եւ Խ Տէր ողորմեա ծնրադրութեամբ: Եւ ասէ զԱղօթս, որ է Բարսղի. Օրհնեմք զքեզ, Տէր, համբերող եւ անոխակալ...:*

*Երկրորդ ժամուն. Սղմ. ԻԹ. Բարձր առնեմ զքեզ, Տէր, զի ըն.: Եւ զԵրեքսրբեանն: Եւ Աստուածածնի չարականն եւ Փառք: Աղօթք Սիմէօնի Սինա». Տէր Յիսուս, Որդի Աստուծոյ...:*

*Վերջն է. «Կատարեցաւ Բժան ժամուց աղօթքն»:*

=*Էջմիածին, Թ.* 42, 1*ա*—21*բ* (1677):

Ե· Օրոլոգիոն (*Ժամագիրք Յունաց*):

*Ձեռագրական Հաւաքածոյքներու մէջ կը տեսնուին Յունական Ժամագիրքի օրինակներ, որոնք սահմանուած են Հայ-հոռոմներու գործածութեան: Ինձի ծանօթ են երեք ձեռագիրներ եւ մէկ տպագիր օրինակ, որոնք «Մեծ օրոլոգիոն» կը կոչուին, ամէնն ալ իրենց նկարագրով ուշ ժամանակի խմբագրութիւններ, յամենայն դէպս ԺԷ.—ԺԸ. դարէ: Դժուարաւ կրնան ասոնք հնագոյն թարգմանութեան մը հիման վրայ զարգացած ըլլալ: Եթէ բացարձակապէս ժխտել չեմ կրնար, բայց նաեւ հաստատելու համար չունիմ ձեռքս որ եւ է կռուան: Թողլով ապագային այս հարցին լուծումը, ինձ պարտք կը համարիմ յետագայ էջերուն մէջ ներկայացնել այդ երեք ձեռագիրներու ընծայած բովանդակութիւնը, ուսկից պիտի տեսնուի ոչ միայն այդ Օրոլոգիոնին ներքին յօրինուածքը, այլ եւ Հայհոռոմ գրականութեան հայող ծանօթ եւ անծանօթ գրուածքներ:*

*Այս Օրոլոգիոնները առաւել եւ նուազ չափով կը համապատասխանեն այժմ Յունական Եկեղեցւոյ մէջ գործածական Մեծ Օրոլոգիոնին. աչքի առաջ ունիմ՝* Ὡρολόγιον τὸ μέγα περιέχον ἅπασαν τὴν ἀνηκούσαν αὐτῷ ἀκολουθίαν, κατὰ τὴν τάξιν τῆς ἀνατολικῆς τοῦ Χριστοῦ Ἐκκλησίας. *Վենետիկ* 1836: *Աննպատակ կը համարիմ մանր համեմատութեան դնել ձեռագիր օրինակները Յունական*

Սկզբնագրին հետ, որ բազմօք ընդլայնուած է թէ Աղօթքներով եւ թէ Երգերով եւ այլ ընթերցուածներով:

ՎԻԵՆՆԱՅԻ ՄԽԻԹ. ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ Թ. 942

Ձեռագիրս նոտրագիր գրչութեամբ, չունի որ եւ է յիշատակագրութիւն. գրուած է հաւանօրէն ԺԸ. դարուն:

Եթէ Սիմէոն Պղնձահանեցի եւ Կարապետ կարեւոր կը տեսնէին թարգմանել Ութ ձայներու շարականները (Oktoechos), պէտք է ենթադրել, թէ կանխաւ թարգմանուած էր Օրոլոգիոնը: Թէ ի՞նչ նկարագիր ունէր այդ ժամագիրքը, չեմ կարող ըսել. յամենայն դէպս այն չէր վերը յիշուած Համառօտը:

Ձեռագիրս կը սկսի թղ. 1բ. սկիզբէն 7 տող պարապ թողուած է, հաւանօրէն խորագրին համար, զոր զարդագիր կամ կարմրագիր գրել ուզած է գրիչը:

ա. (Կարգաւորութիւն գիշերային ժամու, μεσονύκτιον): (Աղօթք) Զարթուցեալքս ի քնոյ անկանիմք առ քեզ բարերար...: Գիրիէ ելլեիսոն ԺԲ: (Աղօթք) Արդ ի քնոյ զարթուցեալ զոհանամ զքէն, Ս. Երրորդութիւն...: Գիրիէ ելլեիսոն Գ: Փառք եւ այժմ: Հայր մեր որ յերկինս ես...: Սղմ. Գ. . Լէ. ԿԲ. Ձէ: Կը յաջորդեն՝ Դրօբարի, Աստուածածնական Բչ.—Շբ. աւուրց: Սղմ. Ծ.: Երգ Աստուածածնի. Սղմ. ՃԽԸ. ՃԽԹ. ՃԾ: Երգք. Փառք ի բարձունս: «Յետոյ

*տունս վայս. Լցեալք առաւօտու ողորմութեամբ...: Երկրորդ տուն. Եւ եղիցի պայծառութիւն Տեառն Աստուծոյ մերոյ...»: Ապա «Բաղեր խմօն՝ լման»: Ի վերջոյ Աղօթքս. Երկնաւոր Թագաւոր գՀաւատացեալ Թագաւոր մեր Հաստատեա...» (թղ. 1բ—21ա)*:

բ. *«Սկիզբն առաջին ժամուն» ὥρα πρώτη, որ է ὄρθρον, առաւօտեան): Գիրիե եղեխսօն. ԺԲ: Տոքսայկեն(ին, δόξα καὶ νῦν, փառք եւ այժմ): Սղմ. Ե. ՁԹ. Ճ: Դրօբար. Կենին. Աստուածածնան. Զի՞նչ զքեզ կոչեացուք...: Կոնդակք Կիր.—ՇԲ. աւուրց: Աղօթք: Աստուածածնական: Աղօթք Մեծին Վասիլիոյ. Աստուած յաւիտենական, անսկիզբն...: «Վերջ Առաւօտեան ժամուս» (թղ. 21ա—30ա)*:

գ. *Կարգաւորութիւն երրորդ ժամուն օրօսուն սուրբ մեծ պահուն (թղ. 30ա—35բ)*:

դ. *Կարգաւորութիւն Զ. ժամուն օրօսին (թղ. 35բ—42ա)*:

ե. *Կարգաւորութիւն Թ. ժամուն (թղ. 42ա—60ա)*:

զ. *Երեկոյին մեծ արողիրնայն (ἀπόδειπνον «յետ ընթրեաց», խաղաղական. թղ. 60ա—73ա)*:

է. *Սկսանիմք իրիկոյին փոքրն արոգիրնայն (թղ. 78ա—92բ)*:

ը. *Ի Տէր կարգացին կարգաւորութիւն սրբուհի Աստուածածնայ: Ձայն կղ. բ. Զխորհուրդն նախայաւիտենական յայտնելով քով...* (*Թղ.* 92*բ*—94*բ*):

թ. *Կարգաւորութիւն Ս. Աստուածածնայ գոհութիւն: Ալլէլուիայ. Գ. հնչումն (ἦχος, ձայն): Կղ. Դ. Զհրամայեալն ինձ...* (*Թղ.* 94*բ*—103*բ*):

ժ. *Կարգաւորութիւն աղաչանաց գանունիս փոքր բարագլիսին* (ἀκολουθία τοῦ μίκρου Παρακλήτικου κανονος. *Թղ.* 105*ա*):

ժա. *Կարգաւորութիւն մեծ Բարագլիսին* (*Թղ.* 116*ա*—133*ա*):

ժբ. *Արօգիրնայս... Զատկուն կիրակէին մինչեւ Նոր Կիրակի* (*Թղ.* 133*ա*—137*բ*):

ժգ. *Բոլոր տարուն կիրակի յարութեան* (*Թղ.* 137*բ*—139*ա*):

ժգ. *Կանոն այրուբենից Ս. Հաղորդութեան: Հնչումն Բ. Հաց կենաց յաւիտենականօղաց եղիցի ինձ մարմին քոյ...: Նուագք Գ—Թ* (*Թղ.* 139*ա*—147*բ*):

*Կը յաջորդեն Ս. Հաղորդութեան աղօթքներ* (*Թղ.* 148*ա*—170*բ*). *սոսնք են.*

ա. *Աղօթք մեծին Վասիլիոյ. Տեառօղայ, Տէր Յիսուս Քրիստոս Աստուած մեր, աղբիւր կենաց...* (*Թղ.* 148*ա*):

բ. *Աղօթք Ս. Իօաննայ Ոսկէ(բերանի). Տէր Աստուած իմ ծանեայ զի չեմ արժանի...* (150*ա*):

գ. *Աղօթք Սիմէօն Մեղափրաստայ. Որ միայն մաքուր եւ անբիծ Տէր*... (152*ա*):

դ. *Աղօթք նորին. Որպէս առաջի ահեղ եւ անաչառ ատենի քո կացեալ Քրիստոս*... (153*բ*):

ե. *Աղօթք Իօաննոյ Դամասկենոյ. Տեսբօղա, Տէր Յիսուս Քրիստոս Աստուած մեր, որ միայն ունիս իշխանութիւն*... (157*ա*):

զ. *Աղօթք Մեծին Վասիլիոյ. Ծանեայ, Տէր, զի անարժանապէս հաղորդիմ*... (157*բ*):

է. *Աղօթք եւ աստուածայնոց խնդրոց սրբոյ Հաղորդութեան, Սիմէօնի նորոյ աստուածաբանի. Ի յաղտեղի շրթանց, ի զարշելի սրտէ*... (158*բ*—161*բ*):

ը. *Աղօթք Ոսկեբերանի. Աստուած ի բաց արա, թող, ներեայ ինձ զյանցանս իմ*.. (161*բ*):

թ. *Աղօթք Իօաննու Դամասկացւոյն. Առ դրունս տաճարի քո կայի*... (164*բ*):

ժ. *Աղօթք Ոսկեբերանին. Հաւատամ, Տէր, եւ խոստովանիմ*... (164*բ*):

ժա. *Ի բաց կալով ի հաղորդելոյն ասա զներկայ տո(ւ)փս. Մեղափրաստեայ. Ահա գնամ առ աստուածային հաղորդութիւնդ, արարչագործ*... (165*ա*):

ժբ. *Մեծին Վասիլոյ. Տեսբօղայ, Քրիստոս Աստուած թագաւոր յաւիտենից*... (167*բ*).

ժգ. *Մեղափրաստոյ տուփս. Որ ետուր կերակուր ինձ զմարմին...* (168*ա*).

ժդ. *Աղօթք գերաօրհնոյ Աստուածածնոյ. Ամենասուրբ տիրուհի Աստուածածին, լոյս խաւարելոյ հոգւոյս իմոյ...* (169*բ*).

ժե. *Աղօթք զղջական առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս՝ սրբոյ հօրն մերոյ Յոհաննոյ Դամասկացուն... Բարեգութ եւ բազում ողորմ Տէր Յիսուս Քրիստոս Աստուած իմ, որ երկիր ի յաշխարհս կեցուցանել զմեղաւորս...* (171*ա*—181*ա*):

ժզ. *Այլ աղօթք նոյնոյն եւ գերաօրհնոյ Աստուածածնոյ. Ընկալ ուրեմն, ով բարեգութ Տիրուհի...* (181*ա*):

ժէ. *Այլ աղօթք նոյն. Տէր ամենակալ բան նախասկզբնականի Հօր...* (185*ա*):

ժը. *Մեծին Վասիլիոյ. Տէր ամենակարող Աստուած զօրութեանց...* (194*բ*):

ժթ. *Աղօթք խոստովանութեան. Խոստովանիմ քեզ Աստուած եւ Թագաւոր...* (4 *կտոր*, 198*ա*—199*բ*:

ի. *Այլ աղօթք առաւօտեան. բացեալ զաչս մարմնոյ իմոյ...* (199*բ*—201*ա*):

6. Մեծ Օրոլոգիոն Ապաւի Մարգարի-տեանի խմբագրութեամբ:

*Ապաւի Մարգարիտեան ծագած է ժէ. դարուն. ծանօթ յունարէն լեզուի, թարգմանած է յունարէն Օրոլոգիոնէն, Իրմոլոգիոնէն եւ Եւխոլոգիոնէն եւ այլ գրուածք-*

*ներքէ մասեր եւ կազմած է Մեծ Օրոլոգիոնն եւ Ժողովածոյք մը: Առաջինն ունինք Անթիլիասի Կաթողիկոսարանի ձեռագիրներու մէջ, որ նախնաբար կը գտնուէր Տ. Յովհաննէս Մկրեանի Հաւաքման մէջ, իսկ Ժողովածոյքը պահուած է Զմմառի վանքի Մատենադարանին մէջ: Ապաւի Մարգարիտեան աչքի առաջ ունեցած է W[6]. Օրոլոգիոնը, զոր ճոխացուցած է նոր յաւելուածներով: Կը ներկայացնեմ Անթիլիասի ձեռագրին (A) բովանդակութիւնը, նշանակելով տարբեր այն մասերը, որոնք նոյն են Wի հետ:*

Մեծ Օրօլօկիօն Աստուծով սրբով պարունակող ոմանց կարգաւորութեանց, ըստ կարգին սրբոյ Երուսաղէմի եւ ուղղաշաւիղ բարեկարգ վանօրէից:

ա. (*Վերին լուսանցքի վրայ. Աղօթք զարթուցման. Միջագիշերային*). *Զարթուցեալ ի քնոյ մեկուսացիր անկողնոյ եւ ասա. Աղօթիւք սրբոց հարցն մերոց, Տէր Յիսուս Քրիստոս Աստուած մեր, ողորմեայ մեզ. ամէն: Սուրբ Աստուած, սուրբ եւ հզօր, սուրբ եւ անմահ ողորմեայ մեզ. Գ. անգամ: Փառք Հօր եւ Որդւոյ. ամէն: Ամենասուրբ Երրորդութիւն, ողորմեա մեզ. Տէր քաւեա զմեղս մեր. Տեսբօթայ, ներեայ անօրէնութեանց մերոց*... (էջ 1—6):

---

[6] W = *Վիեննայի Թ.* 942 *ձեռագիրը:*

*Մեծին Վասիլիու. Տէր ամենակալ Աստուած զօրութեանց...* (էջ 7. պակաս էջ 20—21)։

բ. *Կարգաւորութիւն առաւօտեան* (էջ 22, սկիզբը պակաս)։ *Արձակման Երմոլոկիոնէ (εἱρμολόγιον), որ ընթերցի ի մէջ պատարագի սրբոյն Վասիլիոյ...* (վերին լուսանցքի վրայ. *Առաջին ժամու*) (էջ 43—50)։

գ. *Սկիզբն Երրորդ ժամուն*։ *Թագաւոր երկնաւոր*։ *Երեքսրբեանն* (էջ 50—62)։

դ. *Սկիզբն օրինականաց* (*լուսանցքին՝ Կարգաւորութիւն օրինականաց*) էջ 62—69։

ե. *Կարգաւորութիւն կերակրոյ* (*լուսանցքին՝ կարգ սեղանոյ*. էջ 69—76)։

զ. *Սկիզբն Թ. ժամու* (էջ 76—79)։

է. *Միջաժամ նոյնոյ ժամու* (էջ 79—82)։

ը. *Կարգաւորութիւն յերեկոյեանս*։ *Առնէ քահանայն զօրհնեալն եւ սկսանի կարգեալ յարեգան կամ վերակացուն ընթեռնուլ զնախավաճեալ* (*ա՛յսպէս*) *սաղմոսն ասելով այսպէս. Եկայք երկրպագցուք...* (էջ 82—90)։

թ. *Աղօթք Սեղանոյ* (էջ 90)։

ժ. *Սկիզբն մեծի ապաընթրեացն* (*ἀπόδειπνον*) (էջ 91—98)։

ժա. *Այլ Դրօպարիայք սաղմոսելիք յօր(ը)ստօրէ ի հնչումն Կզ. գ*։ *Աներեւութից թշնամեաց իմոց զարթնութիւնն գիտես, Տէր...* (էջ 98—115, *ի լուսանցս* 91—115 *էջերու «Ապայընթրեացն»*)։

ժբ. *Սկիզբն գիշերայնոյ։ Ապաընթրեացն փոքու* (*էջ* 115—118). *էջ* 118 «*Վերջ գիշերօրեայ կարգաւորութեանն*»։

ժգ. *Ամսաբանութիւնն բոլոր տարւոյ։ Ամիս Սեբտեմվրիս. որ ունի զաւուրս Լ. օրն ունի ժամս ԺԲ. եւ գիշերն ժամս ԺԲ.։ Առաջինն եւ սկիզբն Ինտիքտիոնի կամ Նոր տարոյ։ Եւ յիշատակ սրբազան հօրն մերոյ Սիմէոնի Սիւնակեցւոյն...* (*Ժամամուտք*)։ *Արձակման Ինտիքտիոնին հնչումն Բ. Որ ամենայն արարածոց ստեղծող ես...*»։ *Կը զանազանուին Դրօպարիոն, Գօնդակիոն։ Այսպէս մինչեւ Օգոստոս ամիս* (*էջ* 118—308)։ «*Վերջ բոլոր տարւոյն ամսաբանութեանն*»։

ժդ. *Արձակականք եւ Գօնտոյգիոյք. Դրիօտիքն եւ արտաքոյ պատկի սկսանելիք, ի Կիրակէին Մաքսաւորին եւ Փարիսեցւոյն մինչեւ ի յամենայն սրբոց տօնն* (*Ժամամուտք*), *էջ* 309—329։

ժե. *Արձակականս Երմօլօկիոնէն է, որ ընթեռնանիցի ի սրբոյ Զատկէն մինչեւ ի Համբարձումն ի մէջ Պատարագին, յորժամ ասէ Քահանայն. «Ասաւել ամենասրբուհւոյն. եւ երմօս. Հրեշտակն գոչէր, ո՛վ բերկրեալ...։ Այսպէս նաեւ այլ տօներու համար* (*էջ* 330—346)։

ժզ. *Դրօբարիոյ Յարութեանն սաղմոսելիք զկնի Անբծին...* (*էջ* 374—376)։

ժէ. *Արձակականք եօթներէակի* (378). «*Վերջ Դրօբարքայից, Դրիօտիէն. Բենտի–*

*գոստարիին եւ Ութնահնչմանն եւ այլոցն բոլոր տարւոյն*:

ժթ. Կարգաւորութիւն անճառելի երգոց իգոց. ի գերօրհնեալ Տիրուհւոյն մերոյ Աստուածածնի եւ միշտ կուսին Մարիամու. *ի յայս՝ «Տէր Կարգացի» կարգաւորութիւն նման*: Հնչումն Կղ. Բ. Ձայնեայն ի բաց եղեալք: *Զխորհուրդ Նախայաւիտենական յայտնելով քեզ, ով օրհնորդ... էջ* 379—81):

ի. Զտուփս կարգաշարութեանն. Հընչումն Ա. Երկնաւորաց դասուց. *Ի յերկնային կամարաց, ո՛ Ղավրիէլ, թռուցեալ եկն ի Նազարեթ առ կոյսն Մարիամ... վերջ Անճառելի երգոց* (381—417):

իա. Գանոն ըստ Գիշերայնոց առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս. *Նուագ Ա. Հնչումն Բ. Ի յատակի կացոյց երբեք...: Վերջ Գանոնիս* (*էջ* 417—428):

իբ. *Գանօն աղաչական առ վերասրբուհւոյն Աստուածածնայ, որ սաղմոսի յամենայն նեղութեան հոգւոյ շրջակայութեանն. գործք Թէօստիրիքտոյ միայնակեցոյ. ի օրհնե[ա]լն Քահանային ասեմք զայս. Սղմ. ՃԽԲ. Տէր լուր աղօթից իմոց... վերջ աղաչական գանոնի* (*էջ* 429—453):

իգ. *Արձակականք էրմօլիկիօնէ, զի ընթերցի ըստ անուան եկեղեցւոյն յորում գասանիս...:* (*էջ* 454—474):

իդ. *Արարողութիւնք Փոքր Այմագու. Ի յօրհնելն քահանային սկսանիմք յայմանէ. Տէր լուր աղօթից իմոց...* (*էջ* 474—517):

իե. *Կարգաւորութիւն առ պատկանն ի նոյն ՋԲ. Տուն Եփրաթայ: Ով հրեշտակ Աստուծոյ, որ առաջի կաս...: Վերջ հրեշտակին գանոնի* (*էջ* 517—519):

իզ. *Կարգաւորութիւն ըստ սրբոյ Հաղորդութեան* (519—532):

իէ. Աղօթքներ. 1. *Աղօթք մեծին Վասիլիու. Տեսրօղա Տէր Յիսուս Քրիստոս Աստուած՝ մեր...* (532): W:

2. *Այլ աղօթք սրբոյն հօրն մերոյ Իօաննու Ոսկէբերանին. Տէր Աստուած իմ, ծանեայ զի չեմ արժանի...* (535) (W.)

3. *Այլ աղօթք Սիմէոնի Մեղափրաստու. Որ միայն մաքուր եւ անբիծ...* (538): W:

4. *Այլ աղօթք նոյնոյ. Իբրեւ առաջի ահեղ...* (540): W:

5. *Այլ աղօթք Իօաննու Դամասկացւոյն. Տեսրօղայ Տէր Յիսուս Քրիստոս Աստուած մեր, որ միայն ունիս...* (544): W:

6. *Աղօթք մեծին Վասիլիու. Ծանեայ, Տէր, զի անարժանապէս...* (545): W:

7. *Այլ աղօթք ի յաստուածայնոց խընդրոց սրբոյ Հաղորդութեան Սիմէոնի նորոյ աստուածաբանին. Ի յաղտեղի շրթանց եւ ի գարշելի սրտէ...* (547): W.

8. *Այլ աղօթք Ոսկեբերանին. Աստուած,*

*Թող, քաւքա, ներեա ինձ*... (*Երեք աղօթք*· 550)։ W·

9· *Այլ աղօթք Իօաննու Տամասկինու· Առ դրունս տաճարի քո կացի*... (553)։ W։

10· *Այլ աղօթք Ոսկեբերանին· Հաւատամ, Տէր*... (554)։

11· *Մեծին Վասիլիու, Տեսրօղա Քրիստոսդ Աստուած*... (558)։ W·

12· *Մեղաֆրաստու ոտանաւորօք· Որ ետուր կերակուր ինձ զմարմին քո կամաւ*... (*կան ուրիշ Աղօթքներ ալ*)։ *Վերջ սրբոյ Հաղորդութեան* (*էջ* 559—562)։

իբ· *Այլ Գանօն պաղատողական ընդդէմ երկնային զօրացն եւ ամենայն սրբոց արարեալ տեառն Յօսիֆայ, որոյ ծայրակարգն ըստ այբուբենի։ Նուագ Ա· Հնչումն Կղ· Դ·։ Ձկառավարն Փառաւոնի· այսպէս ասելով ըստ տուփաց* (*էջ* 562—571)։

իթ· *Տիեզերական սինոդոսք* (*էջ* 573/5)։

լ· *Ի միասին տեսութիւն վասն պահոց եւ այլոց ենթադրութեանց օգտակարաց առ ի սրբազանից գանոնաց ի սրբոց հարց հաւաքեալ առ ի չահաւետութիւն բազմաց եւ այլոց, մանաւանդ եւս քահանայից* (*էջ* 575—600)։

լա· *Գանօն յաղագս գտանելոյ զօրինական Ցաւքան ի ձեռն շրջանի լուսնոյ եւ որով զսուրբ զատիկն մեր եւ զայնոսիկ մշտնջենաւորապէս։ Նաեւ գտանելոյ, թէ յորում աւուր շաբաթի առնեն զսկիզբն· եւ զայս ի ձեռն եօթնից մատանց, որոց քառապատ–*

կումն լրացուցանեն գարեգական շրջանն եւ ձեռին քո: Թարգմանեցաւ ի դպրէ յումեքէ Ապամի Մարգարիտեան կոչեցելոյ, ի խըն-դրոյ բարեպաշտօն եւ աստուածասէր Զօ-րակցի Լազարիոսի, որ է երկրպագող կենա-րար գերեզմանի Տեառն Յիսուսի. ի փառս Աստուծոյ եւ ի օգուտ հասարակաց (էջ 600—648): Էջ 609 կ՚ըսուի. «Որոց հանդիպի ներ-կայ գործոցս՝ Մաթէոս նուաստագոյն ի մէջ երիցանց, Ծիպալա Կիպրացին, փրկութիւն եւ յաջողութիւն ի միոյ որ յԵրրորդութեանն Աստուծոյ: Բազում ինչ կայ զոր յարապերեն ի կարգադրութիւն եւ ի բարեկարգութիւնն կաթոլիկէ եւ առաքելական եկեղեցւոյ, եղ-բարք ի Քրիստոս սիրելիք... Զայս զփոքր ներածումն կամելով ես նուաստագունս ա-մենեցուն, զի բերիցեմ յեկեղեցին Քրիս-տոսի. բազում շրջանայեցութեամբ եւ հո-գաբարձութեամբ իմոյ զնա, զի տպաւորես-ցի ի փառս Աստուծոյ...: Ողջ լերուք նու-աստագունս ի յերիցունս Մաթէոս Ծիպալայ Կիպրացին:

ԻԲ. Լուսնարնթացումն մշտնջենաւոր Իօ-նա Կիւլենա Կրետացւոյ (էջ 649). եւ Շրջան արեւու (էջ 650):

Ձեռագիրս իր սկզբնագրին մէջ յօրի-նուած կամ թարգմանուած է իրր 1679ին, վասն զի Զատկացոյցը կը սկսի 1627ին եւ Շրջանն արեւու 1679ին:

Յիշատակարանն յէջն 651, նօտարագիր,

*այլ գրչէ, «Գրեցաւ սուրբ Օրօլօխս յԱկնայ գիւղն, վանոցն որ կոչի սրբոյն Յեսօրյիոյ եկեղեցւոյն, ի սպասաւորացն ձեռամբ անարժան տխագօ Ֆիլօթեօսխս գրվեցաւ, որ հիմայ քահանայ* ՎՐՐ; (*այն է* 7224—5508 = 1716 *փրկչական տարին*:

*Այս ԼԱ եւ ԼԲ հատուածներն ունինք նաեւ Վիեննայի Թ*. 297, *թղ*. 168*ա*—198*բ* (*Ցուցակ, էջ* 726) *աւելի ուշ խմբագրութեամբ*:

7. Ժողովածոյք Ա. Մարգարիտեանի:

*Զմմառի Թ*. 307 (Հ. 80), *իբր ԺԷ—ԺԸ դարէ, որ սկիզբէն եւ մէջերէն պակասաւոր է, կը ներկայացնէ հաւաքածոյ մը, որուն խմբագիրն է Ապավլի Մարգարիտեան: Այս տեղ կը գտնենք* W. 942*ի թղ*. 127*ա*—131*բ Նուագներէն Գ—Թ*. (*թղ*. 2*ա*—10*բ*): *Ունի աւելի «ի գովեստ չարական ԴՁ. «իբրեւ գքաջ Մարտիրոս... որ կ'աւարտի այսպէս «վերջ աննատելի երգոց»* (*թղ*. 11*բ*): A 379:

ա. *թղ*. 14*ա Կանոն աղաչական առ գերասուրբ Աստուածածին, որ սաղմոսի յամենայն նեղութեան եւ ի շրջակայութեամբ հոգւոյ, ասածք Թէոստիրիտոյ միայնակեցոյ. Ի յօրհնելն քահանային ասեմք Սաղմ*. 142. *Տէր լուր աղօթից իմոց... Յետոյ Դրօբարիօն Աստուածածնի ԴՁ. Առ Աստուածածինն ուշիմաբար այժմ ընթասցուք մեղաւորք...: Յետոյ Ծ. Սաղմոս: Եւ զկնի Պենտէկոստէին սկսանիմք ի կանոնէ գերասուրբ Աստուած-*

*ածնի ընդ Իրմօնաց · Նուագ Ա · ԴԿ · Իրմոս, Ընդ խոնաւն գնացեալ · · · ։ Դրօրարիոն՝ Բազմօք փորձանօք ըմբռնեալս · · ·* (*Այսպէս Գ—Թ նուագ · Իրմոս եւ դրօրարիոններ, Գոնդակիոն մը ։ Ապա Աւետ · Ղուկ · Յաւուրսն յայնոսիկ յարուցեալ Մարիամ · · ·* (*Թղ ·* 14—30*ա*) A · 429 ։

բ · *Կանոն աղաչողական առ պահապան հրեշտակն մարդոյ կենաց · արարեալ Յօհաննու Մխայնակեցւոյ Մաւրօպուսոյ, բերելով զծայրակարգն · «Զքեզ զպահապան հրեշտակդ եղանակիմ» ։ Նուագ Ա · ԴԿ · Զարթուն պահապան անձին իմոյ · · ·* (*Ա—Թ նուագք · Թղ ·* 30*ա*—39*ա* A · 573 ։

գ · *Շարական նախանման առ սոյն · ԲՁ · Տուն Եւփրաթայ ։ Ով հրեշտակ Աստուծոյ, որ կաս · · · ։ Աղօթք առ նոյն պահապան կենաց մարդոյ · Ով սուրբ հրեշտակ · · ·* (39*ա*—40*ա*) ։

դ · *Նուագք ի Իրմօլօյիոնէ արտահանեցեալք, որք ասելիք են ըստ անուան սրբոց եւ ըստ անուան եկեղեցւոյ* (*Ս · Նիկողայոսի, Միքայէլ հրեշտակապետին, Ս · Գէորգայ, Ս · Տիմիդրիոյ, Մեծին Վասիլիոսի եւ Ս · Յովհ-Ոսկեբերանի* (41*ա*—42*ա*) ։ A · 454 ։

ե · *Ամսագիրք* (*Տօնացոյց*) *բոլոր տարւոյն գեղեցիկ ոճիւ ։* (*Թղ ·* 42*բ*—64*ա*) ։ A ։

զ · *Աղօթք առ Ս · Խորհուրդն Հաղորդութեան · «Համառօտ ասելիք ի ժամ սրբոյ Հա—*

*գործութեան. ծաղկաքաղեալ ի կարգաւո-րութեանց ի գայրէ ումեքէ Ապավի Մարգա-րիտեան կոչեցեալ (երեքը նոյն W.ի հետ)։ Հմմտ.* A. 519։

է. Ազօթք որք եւ Երդմնեցուցիչք (*Բար-սղի, Ոսկերերանի (Թղ. 67ա—80ա) ի կա-տարածին կ՚ըսուի.*

*Արդ թիկնահասութեամբ չնորհարաչխի սրբոյ Հոգւոյն Աստուծոյ եղեւ Թարգմանե-ցեալ Երդմնեցուցիչս ի յունականէն առ հայ-կականն ի չնչին գայրէ ումեքէ Ապէվի Մար-գարիտեան կոչեցելոյ... (Թղ. 80ա)։ Այս անունը կը յիչուի նաեւ Թղ. 111ա)։*

ը. *Կը յաջորդեն. Թղ.* 80*ա*—83*բ* Աստ-ղաիմայութիւն (*սկիզբէն պակաս*).

թ. 84*ա*—87*ա Աղիւսակ ԺԲ. կենդանա-կերպից բարի եւ չար ազդեցութեանց...* 87*ա վասն ածլուելու թէ յինչ օր բարի է.* 87*բ*—84*ա Գուչակութիւն. ի. մոլորական աստե-ղաց եւն։*

ժ. *Մչտնջենաւոր չրջան եւ Զատկացոյց (Թղ.* 98*ա*—114*ա* 1757—2288 *տարեչրջաննե-րու. եւ Թղ.* 113*բ*—114*ա Աղիւսակ մը յոյն ծէսի ծննդեան, մսակերութեան, Զատկի, Այխոս Եօրկիոսի պահոց եւն օրերու։* 116*բ*—121*ա այլ եւ այլ աղիւսակներ աստղագիտա-կան-հոգմաբանական։* A 600։

8. Օրոլոգիոն Մեծ *Թարգմանուած Ճամ-ճիօղլու Յակոբ գայրէ* 1749*ին*։

Յակոբ, որդի Ճամճի Եղիայի, ծնած Կ. Պոլիս, իր ուսումն առած է Պարիս. ուսած լատիներէն եւ յունարէն։ Ապա եղած է Շուէտի դեսպանին թարգման։ Սա պարապած է թարգմանութեամբ յոյն եւ լատին լեզուներէ։ Ինձի ծանօթ են իր գրչէն.

Ա. Գործք չորից տիեզերական ժողովոց, այսինքն՝ 1. Նիկիոյ եւ Սարդիկիոյ, 2. Կ. Պոլսոյ, 3. Եփեսոսի եւ 4. Քաղկեդոնի ժողովներուն.

Ձեռագիրք 1—3 ժողովներու՝ Էջմիածին, 2620 (1750), իսկ 4՝ Վիեննա, 721 (ԺԸ. դար)։

Էջմ. 1406, Նիկիոյ Ժողովի գործոց վերջը կ'ըսուի. «Թարգմանեալ ի Նուաստ Յակոբ դպրէն ի լեզուէն Յունաց եւ Լատինացւոց ի փառս Աստուծոյ եւ ի զուարճութիւն Հայկազունեաց»։

Բ. Գիրք ուսմանց վասն բարուք կենցաղավարելոյ, որ կոչի Գատոն Փիլիսոփոս. Թարգմանեալ ի լատին լեզուէ ի Հայկական բարբառ ի Յակոբայ դպրէ Ճամճի զատէ կոչեցելոյ Կոստանդնուպօլսեցւոյ մեծի, ի թուին Հայոց ՌՃՀԲ (1723) Հոկտեմբերի Ա։

Ձեռագիրք՝ Էջմիածին 873 (1792). 874 (1765). Զմմառ, 321 (ԺԹ. դար)։

Գ. Հին եւ Նոր Փիլիսոփայութիւն. Ա. Մասն Փիլիսոփայութեան. Լօճիգայ, որ է Տրամաբանութիւն։ Յիշատակարանին մէջ

կ'ըսուի. «Ի լատինական լեզուէ թարգմանեցեալ ի հայկական բարբառ (յամի Տեառն) **ՌՉԾ** (1750) ի նուաստ եւ յանարժան Յակոբայ Կոստանդնուպոլսեցւոյ եւ Ճամճի օղլու կոչեցելոյ, որ եւ այժմ նախկին թարգման է Շուէտու»:

Էջմիածին, 2054, 4ա—446ա (ինքնագրութի՞ւն):

Դ. Տրամախօսութիւն ի վերայ բնական գիտութեանց ի մէջ Եւստաքէոսի եւ Արիստոսի... թարգմանեալ ի ձեռն Յակոբայ թարգմանի տէրութեան Շուետայ, որդւոյ Եղիայի Ճամճի օղլու կոչեցելոյ, յամի 1745, ի խնդրոյ Յակոբ պատրիարքի Նալեան:

Երուսաղէմ, Թ. 55:

Ե. Օրոլոգիոն Մեծ: Այս թարգմանութենէն ձեռագիր մը տեսած է Պիմէն Զարգարեան, Կ. Պոլիս, որ յառաջ կը բերէ Յիշատակարանս[6].

«Նորապէս թարգմանեցեալ հոգաբարձութեամբ ի Ճամճի որդի ախրացւոյ Յակոբէ յամի Տեառն 1749 իաննուարիոսի 1, իսկ յետոյ մերում գրեցեալս հոգաբարձութեամբ

[6] Երջանիկ տարեգիրք. Կ. Պոլիս 1950, էջ 118—119: Երկրորդ ձեռագիր մ'ալ կը յիշէ Ճանիկեան, տեսած Ակնայ Վանք գիւղի Ս. Գէորգ եկեղեցւոյ մէջ գրուած «յամի Տեառն 1741, Իաննուարիոսի 1» (Հնութիւնք Ակնայ, էջ 100—101): Տարին սխալ ըլլալու է, վասն զի թարգմանութիւնը կատարուած է 1749—1757 տարիներու մէջ:

յամի Տեառն 1764։ Հաճի Մուրատ Լազարեա[7] թարգմանեցուցի զսա ի ձեռն Սրվրգչի Թարգման տիրացու Յակոբին յամի Փրկչին 1757։ Եւ ի յԱկնագլուղ Վանքէ ի սրբոյ սքանչելագործ մեծ մարտիրոսին Քրիստոսի Յիսուսի Օրկու եկեղեցւոյ ժողովրդոյ եւ որդի հանգուցեալ հոգի Պապա Մարկոսին (Անաստաս[8]) միայնակեաց Արսէնիոս։

Եւ ես առաւել յիշեսջիք ալ համաչխատի զիմ զԱսլանի որդի Մարկոսն այսինքն զմիայնակեաց Մարգարիտն որ բազում աշխատանս եւ ջանս կրեց որ մինչեւ ի կատարն հասուցի այսքան որ զի եթէ ուզէր նա ոչ էր հնար եթէ հասանիր ի կատարոյն, քանզի ինչ եւ պիտոյ էր, եթէ թանաք վէ եթէ պօյայ, վէ եթէ թուղթ վէ խալէմ, վէ եթէ կարն զամենայն ինչ նա հոգաց։

Էառ սկիզբն գրոյս այս յամի Ներմարմնաւորութեան Փրկչին 1762 ի սեպտեմբերին 12 եւ առ սակաւ սակաւ էառ կատարումն յամի Տեառն 1767 մայիսին 16 եւ գիտութիւն լիցի որ գրեցաւ գիրքս այս ի Սուրբ Լեռան որ կոչի Այնօրօզ ի վանս պատուականի եւ փառաւոր Նախընթացին եւ Մկրտչին Յով-

---

7 Հաճի Մուրատ Լազարեա է հաւանօրէն որդին այն Լազարիոսի, որ թարգմանել տուած էր Ապաւի Մարգարիտեանի՝ Զատկացոյցը։

8 Այս Անաստաս Ակնայ Վանք գիւղէն էր, որ 1779ին թարգմանել տուած է Գէորգ դպրին Նէօֆիտոսի Ծաղկաքաղն քրիստոնէական հաւատոյ (տե՛ս վարը)։

*հաննու որ անուանեալ կոչի Գաիր Տիօնի Սիանու Տիգրո Աթօ* 1767»:

*Այս թարգմանութիւնը տպագրուած է* 1800*ին Կ. Պոլիս այսպիսի խորագրով եւ բովանդակութեամբ:*

Գիրք Յունաց որ կոչի Օրօլօկիօն Մեծ, *որ պարունակէ զամենայն տիւագիչերային կարգաւորութիւնք. եւ զԱղաչողական զանօնս Աստուածածնի եւ զՏօնս, զԴրօբարիայս եւ Գօնդակիօնս սրբոց բոլոր տարւոյն. հանդերձ Հաղորդութեամբն եւ այլոց Հարկաւորաց եւ Զատկաց յաւիտենականաց: Նորապէս թարգմանեցեալ հոգաբարձութեամբ ի ձամճի որդի տիրացւոյ Յակոբէ, յամի Տեառն* 1749*: Իսկ ի* 1800 *ամի տեառն օրինակեցաւ՝ արդեամբ եւ գոյիւք: (Տպագրուած է առանց տարակուսի Կ. Պոլիս:)*

*էջ* 2—175. *Ժամակարգութիւնը որ կը սկսի այսպէս. «Գիրք Յունաց որ կոչի Օրօլօկիօն Աստուծով սրբով, պարունակօղ ամենից կարգաւորութեանց ըստ կարգին սրբոյ Երուսաղէմի եւ ուղղաչափից եւ բարեկարգ վանօրէից:*

*էջ* 177—303. *Տօնացոյց, կոչուած «Ամսաբանութիւն». «Սեբտեմվրիօս» ամսէն «Ավգուստօս»:*

*էջ* 304—479 *այլ եւ այլ կարգաւորութիւնք աղօթից ի ննջեցեալսն, ի սուրբ Աս-*

*տուածածինն, առ Հրեշտակս, առ Ս. Հաղորդութիւնն եւն:*

*Ի կատարածին ունի Յիշատակարանս. «Օրինակեցաւ (խմացիր՝ տպագրեցաւ) Արսենիոս մխայնակեցի ձեռագրոյն. Սաղմոսաց մատէ* (sic)*. բառն նման բառից, գիրն նման գրոց եւ կէտն նման կէտից. չի այլայլելով եւ չի փոփոխելով ի Աթոնոս. ձեռամբ երկրպագու ըՍտավրիի: Ի վայելումն արեւելից կողման ի քաղաքն Ակնայ ի գեղջեն... (քանի մը տող պարապ): Վասն յիշատակի իւր եւ ամենայն արեանառու զարմից իւրոց կենդանեաց եւ համայն ի Քրիստոս ննջեցելոց իւրոց: Որոց հոգիքն Աստուած Լուսաւորեսցէ. Ամէն»:*

*Մեծութիւն՝* 4°, *էջք* 479*: Անհարթ եւ աղաւաղ տպագրութիւն: Հմմտ. Ղազիկեան, Մատենագիտութիւն, էջ* 863:

9. Յայսմաւուրք Յունաց:

*Ծանօթ է ասկէ միակ օրինակ մը, հին բոլորգիր, պահուած Վենետիկի Մխիթարեանց Մատենադարանի մէջ. որուն մասին կը տեղեկագրէ Հ. Մ. Աւգերեան, Լիակատար Վարք եւ Վկայաբանութիւնք սրբոց, ԺԱ.* (*Վենետ.* 1814) *Յաւելուած, էջ ՀԲ—ՀԳ. Յայսմաւուրք Հայոց ըստ Յունաց ամսոյ, «որ սկսանի յեկեղեցական ի տարեգլխոյ Հռոմոց, այսինքն ի սեպտեմբեր ամսոյ՝ ի տօնէ սրբոյն Սիմէոնի Սիւնակեցի. զոր եւ մարթ է կոչել Մայր Յայսմաւուրք. ոչ գի*

մեծ է քան գաւորական օրինակս, այլ զի է սկզբնատիպ եւ ծնօղ նոցին, հին Թարգմանութիւն ի յունէ, հանդերձ սակաւ պատուաստութեամբ ի Հայոց...: Զայսպիսի յունակերպ հայերէն Յայսմաւուրս ունիմք ի ձեռին՝ մի եւեթ օրինակ՝ բոլորգիր հին, ուրեք ուրեք նորոգեալ եւ կարկատեալ նօտր գրչութեամբ, յայտ է թէ հայելով յայլ օրինակ համանման. զոր թերեւս մարթ է գտանել ցարդ առ Հայհռոմս»: Եւ էջ ԿԴ. ակնարկելով զայս կը կրէ. «Յայսմաւուրք Հայոց է Թարգմանութիւն յունական Յայսմաւուրաց իրիք, զորոյ գրնագիրն չեղեւ մեզ տեսանել»:

Այս օրինակի հիման վրայ կազմեց իբր 1250ին Տէր Իսրայէլ իր Յայսմաւուրքը· ուստի անոր Թարգմանութիւնը տեղի ունեցած է այս Թուականէն յառաջ:

Ճանիկեան (անդ, էջ 100) կը խօսի Յայսմաւուրքի մը մասին, որ կը գտնուի Ակնայ Վանք գիւղի Ս. Գէորգ եկեղեցւոյ մէջ, գրուած 1701—1702ին «ի գիւղն Ապուչեխ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին եւ սուրբ Նշանին եւ բազմաչարչար նահատակին սրբոյն Գէորգայ»: Գրիչն Իգնատիոս երէց, երեք Յայսմաւուրքներէ ժողվելով կազմած է Յայսմաւուրքս, որ 13 քիլօ ծանրութիւն ունէր: Չեմ կրնար ըսել, թէ այն, որ Հայ Հռոմէներու գործածութեան մէջ էր, որ եւ է փոփոխութիւն կամ ուղղում կամ

*ճշդում տեսած էր։ Կը յիշուի ուրիշ Յայսմաւուրք մ՚ալ Զորակի Ս. Նիկողայոս եկեղեցւոյ մէջ։*

10. Ամսաբանութիւն (μηναῖα, menologium)։ *Յունական Ժամագիրքի մասը կը կազմէ Յայսմաւուրք մը, որ մէն մի տօնին յատուկ տօնացոյցը կը նշանակէ, միանգամայն տալով աւուր պատշաճ կցուրդն եւ ընթերցուածները. ինչպէս նաեւ սուրբին պատմութիւնն կամ վկայաբանութիւնը, «տարբեր ամենեւին յոճոյ չարագրութեան Բասիլեան Յայսմաւուրաց, ընդարձակագոյն քան զայն միշտ, եւ անխտիր ժողովածու յոր եւ է գրոց եւ աւանդից. վասն որոյ ի վայր է յարգոյ քան զառաջինոյն. եւ սակայն այն իսկ է սովորական ընթերցուած առ Յոյնս յաւուր յայսմիկ, որպէս Յայսմաւուրք Հայոց առ Հայս» (Աւգերեան, անդ, էջ ԿԴ)։*

*Նման Յայսմաւուրք մ՚ալ գոյութիւն ունեցած է Հայոց քով, որ սակայն տարածութիւն չէ գտած։ Թէ այս Յայսմաւուրքը յատկապէս Հայհոռոմներու համար սահմանուած էր, չեմ կրնար հաստատել։ Ինծի ծանօթ են ասկէ հատուածներ միայն. զորոնք պիտի ներկայացնեմ այս տեղ։*

*Էջմիածնի Թ. 2671 ձեռագիրն ունի 4 թուղթ մագաղաթեայ պահպանակներ, մանր միջին մեսրոպեան գրչութեամբ եւ այսպիսի բովանդակութեամբ.*

*«Հօրն առաջին կիւրակէն Աշխար(համատրան): Եւ այս կանոն կատարի. Սաղմոս Կէ. Յեկեղեցիս օրհնեցէք...:*

*Պատմութիւն յաղագս տաճարի Մատրանն: Քանզի ի շինել երանելւոյն Կոստանդիանոսի միանգամայն զամենայն եկեղեցիս...:*

*Պատմութիւն Նունեայ եւ Մանեայ: (Կոյս)ն անուն Նունի յընկերացն Հռիփսիմեանց...:*

*Սահմի Լ. Սարգսի եւ Բաքոսի: Եւ այս կանոն կատարի. Սաղմոս ՃԺԱ. Կցուրդ. Պատուական է առաջի Տեառն մահ: Ընթ. յԵսայեայ. Սուրբ է Տէր Աստուած մեր, որ բնակեալ է ի բարձունս... (Ես. ԼԳ. 5 եւն): Վկայաբանութիւն Սարգսի եւ Բաքոսի: Ընդ ժամանակս հալածանաց Մաքսիմիանոսի թագաւորի ըմբռնեալ լինէին երանելիքն Սարգիս եւ Բաքոս... (հմմտ. Վարք եւ Վկայաբանութիւնք Սրբոց, Բ., 272—279):*

*Ուրիշ հատակոտոր մը գտած է Թորգոմ եպ. Գուշակեան Շապին Գարահիսարի Ծիպխի գիւղի ձեռագիր Աւետարանի պահպանակներու մէջ, «ընտիր միջին մեսրոպեան երկաթագրով», զոր օրինակած է 20 աւգոստ.* 1911: *Հոս Ղուկ. ԻԱ.* 16—19 *համարներէն*[9] *ետքը, որ իբր Ընթերցուած յառաջ բերուած է, անմիջապէս կը յաջորդէ. «Մարգաց ԻԳ. սրբ(ոյն Թէոդորո)սի զաւ–*

---

9 *Ղուկ. ԻԱ.* 17 *«եղիջիք ատեցեալք* յամենեցունց», *կ՚ընթեռնու «ամենեցուն»:*

*րաւարի: Եւ այս կ(անոն կատ)արի. Սաղ-մոս ԾԺԵ. Պատու ||||»: Եսայի ԿԶ. 5. ապա (Պատ)մութիւն սրբոյն Թէոդորոսի զաւրա-ւարի ծնընդեանն եւ (մն)ընդեանն: Ի ժա-մանակին յորժ(ամ Մա)կեդոնացին Աղե-քսանդր... (Հմմտ. Սոփերք Հայկականք, ԺԶ., 55—57):*

11. Ճաշոց գիրք:

*Ճանիկեան (անդ, էջ 101) կը յիշէ «Աւե-տարան» անունի տակ գրուածք մը, որ Ճա-շոց կ'երեւայ, այսինքն «Զատկէն սկսեալ այլ եւ այլ տօներու ընթերցուածներն, յատկա-պէս Աւետարանէն, որուն սկիզբը կը գըտ-նուէր Յովհ. Ա. 1. «Ի սկզբանէ էր բանն..»: Գրիչն է տէր Յովհաննէս որդի տէր Յարու-թիւն քահանայի «ի գիւղն Կամրակապէն», գրուած 1787 օգոստ. 12: Կը խնդրուի յիշել ի բարին «զվերոգրեալ հաճի պապա Յոհանն հանդերձ ծնողիւքն, որ ըստ կարի խուրում յոյժ աշխատեցաւ ի թարգմանել հօռ-մերէնն ի հայ բարբառս, քննելով զուղիղն եւ ճշմարիտն»: Կը տեսնուի ասկէ, թէ այս տէր Յովհաննէս հայ հին թարգմանութիւնը համեմատած է յոյն սկզբնագրին հետ եւ սրբագրութիւններ կատարած է 1787ին:*

12. Կանոնագիրք Յունաց: *Այս գրուածքը, որ կը պահուի Վենետիկի Մխի-թարեանց Թ. 1661 ձեռագրին մէջ, ծանօթ է ինձ հետեւեալ տողերով միայն.*

*«Կանոնագիրք Յունաց կամ Հայ Հռոմոց, հին թարգմանութիւն պահմամբ յունական հնչմանց եւ հոլովմանց, անհարթ ոճով, յորում կան կանոնագրութիւնք Հարց եւ Ժողովոց եւս:*

*Ա. Օր. Բոլորգիր հին միջակ. չիք յիշատակարան գրչի, այլ ստացողի ուրումն յետնոյ Մինաս անուն ի ՊԱ* (1352): *Զեւ գրութեան մատենիս թէպէտ եւ բոլորգիր է, այլ ոչինչ ընդհատ ի նօտր գրոյ ըստ բաղում տառից»:*

*Ձեռագրի մասին կը հաղորդէ ինծ Մեծ. Հ. Ներսէս Վ. Տէր–Ներսէսեան* 5 *փետրուար* 1951 *թուակիր պատուականով կարեւոր տեղեկութիւններ, որոնց համար կը յայտնեմ Մեծ. Հօր սրտագին շնորհակալութիւնս: Կը քաղեմ տողերս:*

*Կանոնագիրք Յունաց կամ Հայհռոմոց. Թ.* 1661:

Թուղթք՝ 270: Մեծութիւն՝ 14,5 × 22 *հմ.*: Նիւթ՝ *թուղթ.* գրութիւն *միասին*: Կազմ՝ *փայտեայ, կաշեպատ*: Հանգամանք՝ *լաւ*: Գիր՝ *բոլորգիր, որ դէպի նօտրագիր կը միտի*: Ժամանակ՝ 1352*էն շատ յառաջ*: Տեղի *եւ* Գրիչ՝ *անծանօթ*:

*Մատեանս է Կանոնագիրք Յունաց, բնագրին մէջ կը պակսի խորագիր:*

*Թղ.* 1*ա*—13*բ Ցուցակ կանոններու՝ բաժնուած Ա—ԺԳ «Թուղթերու» եւ գլուխներու այսպէս.*

«Թուղթ Բ. Յաղագս առնելոյ եկեղեցեաց: Յաղագս քահանայական անաւթից եկեղ(եց)ոյ եւ Կղերիկոսաց, որոց առանց գիտութեան եպիսկոպոսին կանկնեսցեն մատուցարան որ է սուրբ սեղան:

Գլուխ Ա. Յաղագս մաքրութեան տաճարի եւ վկայարանաց, որոց ոչ ունիցին նշխարք սրբոց մարտիրոսացն: Կարթագինեցոց ժողովոյն Կանոն Չ. գ.: Երկրորդ ժողովոյն Նիկիացոց Կանոն Է. ԺԷ:

Գլուխ Բ. Յաղագս սուրբ անաւթից եկեղեցւոյ: Առաքելական Կանոնն ՀԳ: Կոստանդնուպաւլսի ի տաճար Սրբոց Առաքելոցն. Կանոն Ա:

Թղ. 13բ—37բ Սրբոյն Վասիլիու ճառ յաղագս եկեղեցւոյ եւ պատիժք մեղուցելոցն:

Թղ. 37բ—131բ. Կանոնք Նիկիոյ, Անկիւրիոյ, Նոր Կեսարիոյ, Գանգռայ, Անտիոքի, Լաւոդիկէի, Կ.Պոլսոյ, Եփեսոսի, Քաղկեդոնի, Նիկիոյ Բ. եւ այլն:

Տեղ տեղ միջանկեալ թուղթեր կամ վկայաբանական էջեր: Գլուխներու բաժնուած:

Թղ. 132բ—214ա. Թուղթք Վասիլիու մեծի, Գրիգորի, Կիւրղի, Աթանասի, Դիոնեսիոսի:

Թղ. 214ա—256բ. Կանոնք Սարդիկէի ժողովոյն. եւ այլ Կանոնք:

Թղ. 256բ—270 Միխայելի Վուլղարաց-

ւոյ յաղագս եօթն սինհոդոսաց եւ զպատճառաց:

1. Յիշատակարան. Թղ. 220ա. կը գրէ գրիչը ստացողին կարմրադեղ բոլորգիր. «Տէր իմ Տէր, ընկալ սիրով զաշխատութիւնս իմ որպէս եւ Տէրն քո զերկու խեբեւեշն այրոյն, զի որչափ կարացի նա ուղեցի, թէպէտ եւ աւրինակն այլ սղալ էր եւ յոյժ պակաս. եւ զստանալոյն եւ գրելոյն փոխարէնն ընկալջիր ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս. ամէն»:

2. Յիշատակագրութիւն այլ գրչէ. վերջին կողի ներքնակողմը, ընթացիկ բոլորգրով. «Կանոնքս Մինասին է Աստուծով: Որ գնեցի զսա ի Թվ. ՊԱ (1352) ի վարժումն անձին իմոյ. եւ յիշատակ ծնաւղաց եւ եղբարց իմոց»:

13. Մաշտոց Յունաց (euchologion): Թէ թարգմանուա՞ծ էին Հայհոռոմք յունական Մաշտոցը, որ եւ է հետք չեմ գտներ հայ գրականութեան մէջ: Ինձ ծանօթ է Երեւանի Պետ. Թանգարանի Թ. 482 (= Սանասարեան Վարժարանի Թ. 51 (գրուած Բաղէշ 1708ին) եւ Թ. 485 (1729է, ծագած Թ. 482է) ձեռագիրներէ «Կանոն նշան դնելոյ հարսին եւ փեսային, ի յոյն լեզուէ թարգմանեալ ի հայ բարբառ. արարողութիւն, որ լինի խօսեցեալ զհարսն փեսային: Երթայ քահանայն սարկաւագօք եւ ժողովրդովք ի տուն հարսին. եւ Սրկ. ասէ. Օրհնեա, Տէր»: Եւ քա-

*համայն ասէ. Օրհնեալ թագաւորութիւն...»:* *Կը յաջորդէ. «Կանոն համդերձ հարսանեաց օրհնելոյ» եւ այլն* (*Թ.* 482, *Թղ.* 17*բ*—22*բ*): *Տեսանք վերադոյն Զմմառի Թ.* 307, *Թղ.* 80*ա.* «Աղօթք որք եւ Երդմնեցուցիչք», *զոր թարգմանած էր Ա. Մարգարիտեան:*

*Կը յիշուին Գէորգ Պալատեցւոյ ձեռագիր մնացորդներու մէջ* Միւռոն օրհնէքի *եւ* Աւագ ուրբաթու պաշտամանց *թարգմանութիւնը* (*Վենետիկի Մխիթ. Թ.* 297, *Թղ.* 178*ա*—180*բ. Սարգիսեան, Ցուցակ, Բ., էջ* 1088):

*Գրիգոր դպիր Փեշտիմալճեան կը գրէ, թէ Անաստաս վարժապետ «զառաջիկայ* Մաշտոցս *զայս,* որ ի ժամանակաց ինչ հետէ թերի, սխալ եւ աղաւաղ թարգմանութեամբ յածէր ի ձեռս, *եւ նորոգապէս թարգմանել համդերձ այլ եւս կարգաւորութեամբ եւ աղօթիւք եւ այլովք կարեւորօք»* (*Մաշտոց, Յառաջաբան*): *Կ'իմանանք ասկէ, թէ իբր ԺԸ. դարուն փորձ մ'եղած է թարգմանելու: Նոր թարգմանութիւն մը հոգացած են Անաստաս վարժապետ եւ Փեշտիմալճեան ԺԹ. դարուն, որ եւ հրատարակուած է այս խորագրի տակ.*

*Մաշթոց հարընտիր հաւաքմամբ հանեալ ի Մեծ Մաշթոցէն Յունաց, որ կոչի Էֆխօլօյիոն: Նորոգ թարգմանեալ եւ սրբագրեալ աշխատասիրութեամբ Անաստասայ մեծիմաստ վարժապետին Յունաց, եւ Պա—*

տուեալ Գրիգոր դպրի Փեշտիմալճեան․ Ջանիւք եւ արդեամբք... սառաֆ Անաստաս աղային, որ ի սուրբ Գէորգայ Վանից գիւղէ Ակնայ քաղաքին։ Օրթագիւղ (Կ. Պոլսոյ), 1831, 8°, էջ 430։

14․ Կը յիշեմ այստեղ նաեւ հետեւեալ գրութիւնը, զոր թարգմանած է Հայհռոմներու համար Գէորգ Պալատեցի 1779ին։

Ծաղկաքաղ քրիստոնէական հաւատոյ․ թարգմանեալ ի յունական լեզուէն ի հայկական բարբառ եւ գիր մեղուաջան աշխատութեամբ Եէորկի՛ոսի անարժանի, ի հայրապետութեան Տեառն Տեառն Սոփրօնիոսի տիեզերական պատրիարգի յամի Տեառն 1779 ի Կոստանդինուպօլիս․ խնդրանօք եւ ծախիւք Անաստասի ուղղափառ քրիստոնէի, որ Ակնայ գիւղէն՝ Վանք կոչեցեալ»։ Կամ «Ծաղկաքաղ քրիստոնէական հաւատոյ․ շարադրեալ առ ի յամենասրբազան եւ բանաւորագոյն միդրոբօլիտէ Նաւբա՛ղդու եւ Արդիս ի գերապատոյ եւ յառաջնորդէ ամենայն Էդոլի՛այի ի տէր Նէօֆի՛դոսէ»։ Գլ. Ա—Ի։ Ի կատարածին կ՚ըսուի․ «Գաղափարեցաւ ի թարգմանօղէ գրոցս ձեռամբ տիրացու Գրիգորի Մեծեանց կոչեցելոյ Խորձենայ, 1788, ապրիլ 28։

Վիեննա, Մխիթ. Թ. 731, 84ա—102ա։ Ա. Այվազեանի անծանօթ մնացած է Գէորգ Պալատեցւոյ այս թարգմանութիւնը․ Տար

*Հայ կենսագրութեանց. Կ. Պոլիս, Ա., 1893, էջ 47:*

15. Քարոզք Քառասնորդաց: *Ինձ ծանօթ է գրուածք մը.*

*«Քարոզք ի սուրբ եւ ի մեծ քառասնորդականն», գրուած յամի ներմարմնութեան փրկչին 1778 ի կղզին Բաթմոս» (Ճանիկեան, 102). Ձեռագիրս կը գտնուէր Զորակի Ս. Նիկողայոս եկեղեցւոյ մէջ: Ասոր նկարագիրը ի վիճակի չեմ տալու:*

*Հաւանօրէն արտագրութիւն մըն է հետեւեալ գործին. «Քարոզք Քառասնորդեայ պահոց Հօրն Պողոս Սէնիէրիին. Թարգմանեալ ի Մարիամայ Կուսաննդոյ Կոստանդինուպոլսեցւոյ Քարաքաշեան զարմէ. Վենետիկ 1742. որմէ ունինք օրինակ մը Վիեննայի Մխիթ. ձեռագրաց մէջ Թ. 767:*

*Փափագելի էր, որ Հայհռոմք հետաքրքրուէին իրենց նախնեաց գրականութեամբ եւ լրացնէին այս տեղ յառաջ բերուած գրուածքներու թիւը:*

---

## ՅԱՒԵԼՈՒԱԾԱԿԱՆ ԼՐԱՑՈՒՄՆԵՐ

Ա. էջ 159, տ. 10:

25. *Ծաղկաքաղ ի գրոց Յովհաննու Աստուածաբանի:*

*Այս է ծայրագոյն բարի. յորմէ են ամենայն բարիք. այլ մեղքն է ընդդէմ ամենայն բարեաց, ապա ուրեմն մեղքն է հակառակ Աստուծոյ...:*

*Վ. Աստուած մի եւ ամենապարզ է. ոչ երբեք կարէ հոգին գոլ յարմար միաւորութեանն ընդ նմա, եթէ ոչ բացակատարիցի մի եւ ամենապարզ:*

= *Վենետիկ, Մխիթ. Թ.* 270, 49*ա*—83*ա* (1696. *Սարգիսեան, Ցուցակ, Բ.*, 886—887):

*Ծաղկաքաղս կազմողն է Մխիթար Աբբահայր ի տիս երիտասարդութեան: Թէ ի՞նչ աղբիւրէ հաւաքած է տեղիքներս, ինձ յայտնի չէ:*

Բ. էջ 200, վարէն տ. 4:

*Թ.* 886 *ձեռագրիս Ա. Մասէն, որուն թարգմանիչն էր Կարապետ, փափագած էի ունենալ նմոյշներ, գաղափար մը կազմելու համար թարգմանչին արուեստի մասին: Շնորհակալ եմ Մեծ. Հ. Ն. Տէր–Ներսէ–*

սեանի, որ հաճեցաւ տրամադրութեանս տալ ընել հետեւեալ երկու շարականները հանդերձ սարօքն:

ԺԲ. ՍՈՒՐԲ ՀԱՐՑՆ ԱԹԱՆԱՍԻ ԿԻՐԻԼԻՈՒ

Ձգ. փառք ի համբարձ:

Դարձեալ առ մեզ ոսկեհոս[1] Նիղոս եւ անմահութեան անուանակիցն ի ձեռն միշտ յիշատակի իւրոյ գալով, բարւոք վայելչութեամբն յորդեցուցանէ զոսկէհոսանսն[1], զանմահութեան հեղմունսն. եւ կերակուր աստուածային պատարագելով ի ձեռն բարձրագոյն աստուածաբանութեանցն, Երրորդութեանն անբաժանելի կարողութեանն վարդապետէ երկիր պագել. եւ զովացուցանելով զաստուածային վարդապետութիւնն զհաւատացելոց ոռոգանէ զմիտս եւ բարեխաւսէ յաղագս անձ.:

Ձգ. փառք ի Տէր երկ:

Մեծ ճշմարտութեան վէմն, բազմաճգնողն Աթանասիոս առ յընդունելութիւն այսաւր կոչէ զտիեզերս պայծառութեամբ: Ամենայն հաւատացեալք առ հանդէսն ընթացուք բարւոք հոգւովն, աւրհնութեամբ պսակելով զքահանայական նորա ջանսն. որպէս զի բարեխաւսութեամբ նորա առցուք ի Քրիստոսէ զմեծ ող.:

---

[1] Աւկէ ՆՀԲ. ոսկեհոս. ոսկեհոսանք:

ՁԳ. ի Տէր կր. փառք:

*Զմեծ փառքն քահանայից զԱթանասիոս զանյաղթելի քաջն քահանայ վայելչապէս գովեսցուք, քանզի սա զհերձուածողացն եհատ զռազմունսն[2] զաւրութեամբ սրբոյ Հոգւոյն եւ զուգափառութեան յաղթանակին յարոյց ընդ ամենայն ախեղերս. Թուով բարեպաշտաբար զԵրրորդութեանն խորհուրդն ի ձեռն դիմաց առանձնութեանցն եւ դարձեալ միաւորելով անշփոթելի ի մի, ի ձեռն գոյութեան ինքնութեանն. եւ քերոբէաբար աստուածաբանելով բարեխաւսէ յաղագս անձանց մերոց:*

*Թ. 886, թղ. 58բ—59ա:*

## ԼԱ. ՍՈՒՐԲ ԱՆԱՐԾԱԹԱՑՆ ԿՈԶՄԱՅԻ ԵՒ ՅՈՀԱՆՆՈՒ

ՁԲ. ի Տէր կր. Դ. փառք:

*Եկայք հաւատացելոց ժողովք այսաւր աւրհնութեամբ պսակեսցուք զԿիրոս ընդ Յոհաննու, զբժիշկսն շնորհաց եւ զտուողսն հայցողաց աննախանձաբար. քանզի բազմադէմ ամենեցուն ցուցան բժիշկք ամենայնոք. ուստի եւ բարեխաւսեն յաղագս անձանց մերոց:*

ԿԴ. փառք ի Համբ:

*Զոյգք մարտիրոսացն այսաւր ծագեաց մեզ, զհոգէկան ցաւս մեր բժշկելով, Կիրոս եւ Յոհաննէս սքանչելագործքն. քանզի մինն զհամահրեշտակ ողջունելով զվարս, միանձ-*

---

[2] *Ասկէ ՆՀԲ.* ռազմ, ռազմունս:

նական վարիւք մինչեւ ցվաղջանն գնալով, իւրով արեամբն վկայելով Քրիստոսի· իսկ միւսն զինուորական յայտնելով կարգիւք, երկնային զինուորութեանցն թուակցեցաւ· այնով եւ ի յիշատակի իւրեանց բժշկութիւն բաժխեն, որոց հաւատով կատարեն եւ բարեխաւսեն յաղագս անձանց մերոց:

Թ. 886, Թղ. 62բ—63ա:

էջ 147· «Զարդասճոյ վանք» կարդալու եւ իմանալու է «Զարդարճոյ վանք», որ կը գտնուի Խարբերդի Զարդարիճ (Զարդարիչ) գիւղին մօտ, կոչուած նաեւ Սուրբ Ապտլմսեհ· Հմմտ. Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 237 եւ Թորոս Աղբար, Բ., 90:

## Resumé

In dem im Lalwargebirge gelegenen Ort Płnžahank' „Erzmine" (georgisch Splinžahan, jetzt Achtala) befand sich ein armenisches Kloster, das der armenische Feldherr Iwane nach georgischem Ritus um 1200 in eine georgische Laura verwandelte. Ein Mönchpriester dieser Laura war Simeon, Armenier von Geburt, der die armenische und georgische Landessprache beherrschte. Im Jahre 1229 schrieb er hier die in armenischer Übersetzung überlieferten Schriften des Gregor von Nyssa ab und im Jahre 1248 übersetzte er aus dem Georgischen Proklos' Traktat. In diesem Jahre war er bereits sechzig Jahre alt, körperlich krank und litt an Sehschwäche; er dürfte im Jahre 1188 geboren und um 1255 gestorben sein (S. 1—9.)

Wir haben von ihm die folgenden aus dem Georgischen übersetzten Arbeiten: 1. Proklos Diadochos' Institutio theologica. 2. Die Schriften des hl. Johannes von Damaskus. 3. Die „Leiter" von Johannes Klimakos. 4. Das griechische Hymnarium. 5. Geschichte der Georgier.

### 1. Proklos Diadochos' Institutio theologica.
(S. 11—55)

Wie Simeon in seinem Kolophon mitteilt, unternahm er es diese Schrift aus dem Georgischen zu übersetzen, weil sie in der armenischen Literatur nicht vorhanden war. Die Arbeit vollbrachte er in der Weltära 6756 (1248 n. Chr.) zu Płnžahank'. Die georgische Vorlage war mit Scholien versehen. Diese Scholien wer-

den im Armenischen einem Jamelachos (Jamblichos?) Bischof von Athen zugeschrieben. Handschriften: Etschmiadsin Nr. 1500, 1068r—1121v (1286): 1832 (1658), Vatic. cod. Borg. 77 (1648). Jerusalem, 1899 (1624). Venedig, Mechith. 1132 (s. XVIII). Im Jahre 1651 hat Simeon von Djulfa, Bischof von Garni, diese Version redigiert und mit neuen Kommentaren versehen. Diese wurde nachher als Schulbuch verwendet. Sie wurde als solches im Jahre 1757 von einem Armenier namens Philippos Aznavourean in Tiflis sogar ins Georgische rückübersetzt. Um das Verständnis des Armenischen für die Leser zu erleichtern, hat es Simeon von Erivan im Jahre 1750 für notwendig erachtet, neue Scholien hinzuzufügen (S. 38—41). Wie groß das Interesse an dieser Schrift im 17. und 18. Jahrhundert bei den Armeniern war, beweist der Umstand, daß Stephanos von Lemberg im Jahre 1661 das Werk „Liber de causis" unter dem Titel „Aus dem Buche der Ursachen Aristoteles' oder wie es von anderen bezeichnet wird, Proklos'", mit Hinweis auf die Parallelstellen bei Proklos, aus dem Lateinischen ins Armenische übersetzt hat. Dieses Werkchen wurde im Jahre 1750 in Konstantinopel herausgegeben. Dazu schrieb Mesrop von Gandzak im Jahre 1753 besondere Scholien (S. 46—55).

## 2. Johannes von Damaskus in der armenischen Literatur

(S. 57—101)

Nach einem zusammenfassenden Überblick über das Leben und die schriftstellerische Tätigkeit des hl. Johannes behandelt der Verfasser eingehend die in armenischer Übersetzung erhaltenen Schriften desselben.

1. *Κεφάλεια φιλοσοφικὰ* in ihrer kurzen Bearbeitung. Dies übersetzte aus dem Griechischen ein gewisser Bagarat Mamikonean. Der Vorname Bagarat ist in der Geschichte der Fürstenfamilie der Bagratiden eigen. Wenn der Träger desselben hier sich als Mamikonier bezeichnet, so konnte er nur der gleichnamige Sohn des Fürsten Gregorik von Taraun sein, der, nachdem er vom Kaiser Romanos I. zum Patrikios ernannt wurde und die Tochter des Magistros Theophilaktos zur Frau genommen hatte, das Erbe seines Vaters antrat (um 920, vgl. Konstantin Porphyrogenet. de administr. imp. c. 43). Die Reihenfolge der armenischen Übersetzung wird in 39 Abschnitten wiedergegeben, daneben die entsprechenden des Griechischen. Die Abschnitte 1 und 2 (von letzterem nur die Hälfte) wird als Probe veröffentlicht. Handschriften: Tübingen, Ma 74, 1r—35v (s. XIII). Etschmiadsin, Dadian, 91 (s. XVII). Jerusalem, 898 (1619), 925 (1634), 1213 (1635). Venedig, Mechith. (S. 69—81).

2. *Πήγη γνώσεως* I. und III. Teil. Der Übersetzer Simeon teilt am Ende des dritten Teiles mit, daß die Übersetzung auf Grund einer georgischen Vorlage ausgeführt ist. Der Ort und das Datum sind nicht erwähnt. Der I. Teil enthält 49 Abschnitte samt dem einleitenden Brief an Kosmas. Die Reihenfolge der Abschnitte wird beigefügt (in Klammern die entsprechenden der Baseler und Lequien-Ausgaben). Der III. Teil in 100 Abschnitten. Die georgische Version ist im Jahre 1744 zu Moskau im Druck erschienen (in 50 und 100 Abschnitten). Handschriften: Jerusalem, 1297 (1363), 768, 1035. Etschmiadsin, 63 (s. XVI), 101 (1740),

102 (s. XVIII), 103 (1729), 116 (s. XVI). Wien, Mechith. 761 (s. XVIII). Bzomar, Ant. 112 (1707). Erivan, 835 (1735). Venedig, Mechith. (1706 > 1339; vgl. Zarbanalian, Bibliothek der altarmenischen Übersetzungen [arm.], Venedig 1889, S. 81—90).

3. „Desselben Johannes von Damaskus Antwort an die Juden." Handschriften: Jerusalem, 1297 (13)3), 768, 1035. Etschmiadsin, 63, 103. Paris, Bibl. nat. cod. arm. 306, p. 319—342 (Macler, Cat. 158). Täbris, 11 (1630). Konstantinopel-Galata, 77. Erhalten nur in armenischer Übersetzung (S. 90—93).

4. *Περὶ πίστεως κατὰ Νεστοριανῶν* (ed. Diekamp, Theologische Quartalschr. 83, S. 560—583). Handschriften: Jerusalem, 1297 (1363), 768, 1035. Etschmiadsin, 63, 103. Konstantinopel-Galata, 77 (S. 92—93).

5. *Κατὰ τῶν Ἰακοβιτῶν* Handschriften: Etschmiadsin, 63, 103. Konstantinopel-Galata, 77 (S. 93).

6. *Περὶ τῶν δύο φύσεων* (MG 95, 127—186). Handschriften: Etschmiadsin, 63, 103. Konstantinopel-Galata, 77 (S. 94).

7. *Εἰς τὴν κοίμησιν* (MG 96, 701, § 3). Handschriften: Vatican. cod. Borg., 41, 57v—63r (s. XVIII, Tisserant, Codices armeni, S. 69). Bzomar, 86, 82v (s. XVIII, S. 94—95).

Unechte Schriften: 8. „Desselben Worte gegen die Römer (Lateiner), wie dieselben mit diesen vier Kirchen uneinig wurden. Dies hat Eustratios, Metropolit von Nikäa, geschrieben." Handschriften: Etschmiadsin, 63, 103, 116. Jerusalem, 768, 1035. Konstantinopel-Galata, 77 (vgl. A. Demetrakopulos,

*'Εκκλσ. Βιβλιοθήκη* [Leipzig 1866], 36—47; mir unzugänglich).

9. „Desselben Johannes von Damaskus Antworten an die Armenier in verkürzter Gestalt.“ Handschriften: Etschmiadsin, 63, 103. Konstantinopel-Galata, 77. Herausgegeben von B. Gülesserian, Wochenschrift Loys (Konstantinopel), 1905—1906.

Zweifelhafte Schriften: 1. Des Johannes von Damaskus Schrift über das Paradies. Erhalten in einer Hs. von Venedig (vgl. Zarpanalian, Bibliothek, S. 579). Wahrscheinlich cap. 24 des orthodoxen Glaubens.

2. Des Johannes von Damaskus Schrift über die Vorsehung. Etschmiadsin, Nr. 55 (Kar.). Wahrscheinlich cap. 32 des orthodoxen Glaubens.

3. Vita Barlaam et Joasaph. Ed. Mesrop Ter-Movsessian, Valaršapat, 1897.

4. Martyrium S. Artemii in zwei Redaktionen: I. Paris, Bibl. nat. cod. arm. 115, 131v (s. XIII); II. Paris, Nr. 118, 78r—87v (1307) = MG 115, 1160—1217.

5. Homilie über Verklärung Christi. P. B. Sarigissian, Bazmavep, 1889, S. 305—313, 353—361, hat nachgewiesen, daß in der dem Moses Khorenatzi zugeschriebenen Homilie über die Verklärung die Homilie des Damaskeners ausgewertet ist. Die Homilie aber ist in armenischer Übersetzung nicht vorhanden (S. 95—101).

### 3. Die Leiter des Johannes Klimakos.

(S. 103—144)

Die armenische Übersetzung der Leiter fällt in die erste Hälfte des 13. Jahrhunderts. Als

Übersetzer werden die Mönche Minas von Trapezunt und Simeon von Plindzahank' genannt. Ersterer übersetzte die Kapitel 1—20 aus dem griechischen Original und letzterer die Kapitel 21—30 aus der georgischen Vorlage. Diese Übersetzung ist uns in zwei Handschriften, Nr. 25 der Berliner Staatsbibliothek (vom Jahre 1361) und Nr. 1925 der Edschmiadsiner Bibliothek (vom Jahre 1401) überliefert. Die Übertragung war sklavisch, daher schwer verständlich. Um 1290 hat sie ein gewisser Wardan in Kilikisch-Armenien revidiert und in verständlichem Armenisch wiedergegeben. Diese Redaktion ist in zahlreichen Handschriften vorhanden, deren älteste, Nr. 70 der Dadian Kollektion (vom Jahre 1329) darstellt.

Dem Werk beigefügt sind: Die Biographie des Joh. Klimakos von Daniel aus Raïthu (vgl. S. 139—142), und Scholien, die dem Daniel zugeschrieben werden (S. 137—138 und 142—143).

### 4. Johannes der Theologe.
(S. 145—159)

In den Handschriften der revidierten Leiter finden wir auch die Schriften des sogenannten „Johannes des Theologen". Die Überschrift des ersten Kapitels lautet: Dies sind Worte der Wahrheit des hl. Johannes des Theologen, die er für die Mönche und Einsiedler gesagt hat, die ihm der hl. Geist eingeflößt hat.

Zarpanelian will ihn mit dem Joh. Klimakos identifizieren und Dashian vermutet in ihm den Joh. von Alexandrien. Lauter Voraussetzungen ohne feste Basis. Der Verfasser hat umsonst versucht ihn in der syrischen Literatur ausfindig zu machen.

Die Schrift ist in 24 Abschnitte eingeteilt, inhaltlich mystische Anschauungen und religiöse Ratschläge und Ermahnungen an die Mönche. (Handschriften Nr. 276 der Wiener Mechitaristen-Bibliothek und Nr. 70 der Dadian Kollektion).

Im Kolophon der Nr. 70 wird mitgeteilt, daß die armenische Übersetzung aus dem Syrischen gefertigt sei, und zwar, in der „neuen" Zeit, womit wahrscheinlich das 11. Jahrhundert gemeint ist.

### 5. Geschichte der Georgier.

(S. 161—188)

In Nr. 1902 der Edschmiadsiner Bibliothek ist uns eine „Geschichte der Georgier" überliefert, die im Jahre 1125 plötzlich unterbricht, da am Ende der Handschrift Blätter ausgefallen sind. Dies setzt uns in Verlegenheit in betreff der Fortsetzung der Geschichte und Verfertigung der Schrift.

Daß diese aus dem Georgischen übersetzt ist und das Leben Georgens (Kart'lis Zkhovreba) darstellt, ist unzweifelhaft. Die georgischen Gelehrten stimmen darin überein, daß die verschollenen Blätter das letzte Jahr des Königs David und die Thronbesteigung seines Sohnes Georgi (1126) behandelt haben könnten. Es dürfte anschließend das Kolophon der Übersetzer folgen.

Wann und von wem wurde diese Geschichte übersetzt? Der Verfasser will als Übersetzer den Simeon annehmen, und die Übersetzung im ersten Viertel des 13. Jahrhunderts ansetzen. Die Übersetzung war dem Mechithar

von Ani um 1200 noch unzugänglich. An der Wende des 13. Jahrhunderts kennt Mechithar von Ayriwank' die Reihenfolge der georgischen Könige von 1126 an. Dies veranlaßt den Verfasser zu vermuten, daß der Übersetzer seinem Werke zur Vervollständigung eine kurze Übersicht angehängt habe. Der Ayriwank'er hatte in seiner Chronik diese Übersetzung benützt.

### 6. Oktoechos der orthodoxen Kirche.
(S. 189—224)

F. C. Conybeare hatte vor Jahren dem Verfasser eine photographische Aufnahme des cod. arm. 58 (Or. 2611) des British Museum zur Untersuchung vorgelegt. In seinem Katalog hatte Conybeare die Handschrift als „Canones and Troparia" betitelt. Die nähere Untersuchung des Inhalts brachte heraus, daß die armenische Übersetzung den griechischen Oktoechos beinhaltet, leider mit großen Lücken. Die Nachforschung entdeckte ein vollständiges Exemplar davon in Nr. 630 der Mechitharisten-Bibliothek zu Venedig. Interessant war diese Handschrift besonders dadurch, daß im Kolophon die Übersetzung den Mönchen Papa Minas und Papa Simeon zugeschrieben wurde. Diese Übersetzer sind uns schon aus der 1. Hälfte des 13. Jahrhunderts bekannt.

Eine zweite Handschrift derselben Bibliothek enthält die Hymnen der Haupt- und Heiligenfeste der orthodoxen Kirche; der Übersetzer des ersten Teiles nennt sich Karapet in Konstantinopel, wahrscheinlich ein Zeitgenosse von Minas und Simeon. Eine kurze Beschreibung dieser Handschriften folgt S. 190—200 und 265—266.

Ein genaues Verzeichnis der in Nr. 58 des Brit. Mus. erhaltenen Kanones gibt der Verfasser S. 202—218, Nr. 1—34. Es sind nur die Töne A, B, C erhalten, und zwar mit großen Lükken. Ein Kanon wird vollständig veröffentlicht (S. 212—218). In wenigen Fällen stimmen die Kanones mit dem griechisch-slawischen Oktoechos (Nr. 8 = Malzew 398, 9 = 428, 12 = 444, 16 = 526, 20 = 601, 27 = 706, 29 = 694) überein.

## Anhang.

### Literarische Reste der Armeno-Romäer (S. 225)

Unter Armeno-Romäer (Հայ Հոռոմ) oder Tsath (Ծաթ) werden diejenigen Armenier bezeichnet, die seit dem 10. Jahrhundert freiwillig oder unter Zwang zu der griechisch- bzw. georgisch-orthodoxen Kirche übergetreten sind. Sie waren zahlenmäßig in der Minderheit, bildeten jedoch im byzantinischen Kleinasien und in Georgien eigene Gemeinden. Die kleinasiatischen Armeno-Romäer im 16. und 17. Jahrhundert übersiedelten teilweise in die Umgebung Konstantinopels.

Sowohl im Byzantinischen Reiche wie auch in Georgien waren sie von den Armeniern umgeben und mit ihnen im Verkehr. Dies bewirkte, daß sie der Muttersprache treu blieben. Die griechische wie auch die georgische Sprache blieb ihnen unzugänglich. Daher wurde im 13. Jahrhundert der Wunsch laut die Ritualbücher ins Armenische zu übersetzen und die Offizien armenisch zu verrichten. Wir haben gesehen,

daß Simeon in Plindzahank', Minas in Trapezunt und Karapet in Konstantinopel sich mit den Übersetzungen befaßten, um das Brevier samt Hymnarien ins Armenische zu übertragen. Vorher oder gleichzeitig soll die Liturgie schon übersetzt worden sein.

Im folgenden bemüht sich der Verfasser alle jene Schriften zusammenzustellen, die im 13. bis 18. Jahrhundert von den Armeno-Romäern oder von anderen für sie ins Armenische übersetzt worden waren.

1. Die byzantinische Liturgie des hl. Basilius.

2. Die Basiliusliturgie τῶν προηγιασμένων.

3. Die Liturgie des hl. Chrysostomus.

4. Breviarium für die Mönche.

5. Horologium nach Wiener Mechith. Kat. Nr. 942.

6. Horologium nach der Handschrift von Antilias.

7. Horologium nach den Nr. 307 von Bzomar.

8. Horologium magnum, übersetzt von Jakob Giamgioghlu (1749), gedruckt Konstantinopel 1800.

9. Synaxarion? (S. 250—252).

10. Menologion (S. 252—254).

11. Lectionarium (S. 254).

12. Kanonsammlung (S. 254—255).

13. Euchologion, übersetzt von Gregor Peschtimaldjian, herausgegeben in Konstantinopel 1831.

14. Neophitos' Katechismus, übersetzt im Jahre 1779 von Georg Palatetzi.

